ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 7
ՀՈՒԼԻՍ
1963 Թ.

★

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
42-ՐԴ
ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ — ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

ԱՌԱՋՆՈՐԴՈՂ — *Կոմունիզմի կառուցման հզոր գործոնը* . . . . 3

ՌՍԴԲՊ ԵՐԿՐՈՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ 60-ԱՄՅԱԿԸ

ՅԱ. ԶԱՐՈԲՅԱՆ — *Վսեմ նպատակի մեծ ուղիներով* . . . . 9
Մ. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ — *Ամենաժողովրդականը* . . . . . 19
Գ. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ — *ՌՍԴԲՊ II համագումարը և բոլշևիկյան կազմակերպությունների ձևավորումը Անդրկովկասում* . . . . . 29

ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԵՎ ԱՐՎԵՍՏԻ ՀԱՐՑԵՐ

Գր. ՍԱՐԳՍՅԱՆ—*Մեր գրականության ոգեշնչողն ու ղեկավարը* . . 38
Վ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ — *Ժամանակի ճշմարտությունը* . . . . 48

ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ

Թ. ՊԱՊՅԱՆ—*Ռևոլյուցիայի զինվորագրվածը* . . . . . 62

ՀՈԴՎԱԾՆԵՐ

Խ. ԴԱՆԻԵԼՅԱՆ — *Անշեղորեն կիրառել կառավարման լենինյան սկզբունքները* . . . . . . . . . . . . . 69
Հ. Ե. ԹՈՒՄԱՆՅԱՆ—*Ժողովրդատնտեսական պլանների կոորդինացումը պլանավորման բարձր էտապ է* . . . . . . . 76
Ա. ՄԱՐԳՈՅԱՆ — *Սովխոզները դարձնել շահութաբեր* . . . . 85

ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ

Գ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ — *Մասսաների լայն մասնակցությամբ* . . . 92

ԱՐՏԱՀԱՅՏՎՈՒՄ ԵՆ ՄԱՆԿԱՎԱՐԺՆԵՐԸ

Ս. ԽՈՒԴՈՅԱՆ — *Պատասխան մեր ընդդիմախոսներին* . . . . 98

ԸՆԹԵՐՑՈՂԻ ԱՄԲԻՈՆ

Ա. ՀԱՅՐՅԱՆ — *Բժշկի խոհերը* . . . . . . . 103

ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

Մ. ԹՈՒԹԽԱԼՅԱՆ — *Ասք մեծ մտքի ու սրտի տեր մարդու մասին* . . 108

СОДЕРЖАНИЕ

**Передовая** — Мощный фактор строительства коммунизма . . . . . . . . . . 3

**60-летие второго съезда РСДРП**

**Я. Заробян** — Славными путями к величественной цели 9
**М. Арзуманян** — Самая народная . . . . 19
**Г. Гарибджанян** — II съезд РСДРП и формирование большевистских организаций в Закавказье . . 29

**Вопросы литературы и искусства**

**Гр. Саркисян** — Вдохновитель и руководитель нашей литературы . . . . . . . 38
**В. Мнацаканян** — Истина времени . . . . 48

**Знаменательные даты**

**Т. Папян** — Революцией мобилизованный и призванный . . . . . . . . . . 62

**Статьи**

**Х. Даниелян** — Неуклонно проводить ленинские принципы правления . . . . . . . 69
**О. Е. Туманян** — Координирование народно-хозяйственных планов — высший этап планирования . 76
**А. Мардоян** — За рентабельность совхозов . . . 85

**Партийная жизнь**

**Г. Мартиросян** — При активном участии масс . . 92

**Говорят педагоги**

**С. Худоян** — Ответ нашим оппонентам . . . 98

**Трибуна читателя**

**А. Айрян** — Думы врача . . . . . . . 103

**Критика и библиография**

**М. Тутхалян** — Сказание о человеке с большой мыслью и теплым сердцем . . . . . . 109







# ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ԿԱՌՈՒՑՄԱՆ ՀԶՈՐ ԳՈՐԾՈՆԸ

Օրերս իր աշխատանքն ավարտեց ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեի պլենումը, որը հանգամանորեն քննարկեց *Պարտիայի գաղափարական աշխատանքի հերթական խնդիրները* և ընդունեց ծավալուն որոշում: Պլենումը կարևոր իրադարձություն է մեր պարտիայի, ամբողջ ժողովրդի հոգևոր կյանքում, աշխատավորների կոմունիստական դաստիարակության, պարտիայի գաղափարական զենքի մշտական կատարելագործման նկատմամբ լենինյան հոգատարության վառ դրսևորում:

Մեր պարտիան իր գործունեության բոլոր էտապներում մեծ ուշադրություն է հատկացրել ռևոլյուցիոն տեսության, սովետական մարդկանց գաղափարական-քաղաքական դաստիարակության հարցերին: Սակայն գաղափարական աշխատանքի բնագավառում պարտիայի առջև երբեք չեին ծառացել իրենց մասշտաբներով ու խորությամբ այնպիսի բարդ ու համապարփակ խնդիրներ, ինչպես արդի էտապում, կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում:

Մեր երկրում հաջողությամբ կենսագործվում է կոմունիստական հասարակության կառուցման հոյակապ ծրագիրը: Պարտիան ակտիվ հարձակում է գործում կոմունիստական շինարարության բոլոր ճակատներում, այդ թվում նաև գաղափարական ճակատում, որը եղել ու մնում է նոր հասարակարգի հաղթանակի համար մղվող պայքարի հիմնական ճակատներից մեկը:

Այն բանից հետո, երբ պարտիայի Կենտկոմի 1962 թվականի մարտյան և նոյեմբերյան պլենումներում լուծվեցին արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության զարգացման, ժողովրդական տնտեսության ղեկավարման արմատական հարցերը, գաղափարական պրոբլեմների քննարկումը միանգամայն օրինաչափ էր ու ժամանակին: Անհրաժեշտ էր բարձրացնել գաղափարական աշխատանքի մակարդակը և այն ներդաշնակել մեր հասարակության կյանքում վերջին տարիներս տեղի ունեցած սոցիալ-տնտեսական մեծագույն տեղաշարժերին:

Պլենումին տված իր զեկուցման մեջ ՍՄԿՊ Կենտկոմի քարտուղար ընկ. Լ. Ֆ. Իլյիչովը, բնութագրելով մեր երկրի կյանքի վերջին տասնամյակը, նշեց, որ անցած տարիներին սովետական ժողովուրդը խոշոր հաջողությունների է հասել նյութական արտադրության, հասարակական ու հոգևոր կյանքի բոլոր ոլորտներում: Մեր հայրենիքն աշխարհում դուրս եկավ արդի գիտական ու տեխնիկական մտքի առաջավոր բնագծերը, բաց արեց տիեզերքի նվաճման դարագլուխը, որում առավել խտացված արտահայտվեցին մեր էկոնոմիկայի, գիտության ու տեխնիկայի, կուլտուրայի մեծագույն հաջողությունները: Հենց պլենումի աշխատանքի օրերին փայլուն կերպով ավարտվեց տիեզերական նոր հոյակապ էպոպեա՝ Վալերի Բիկովսկու և Վալենտինա Տերեշկովայի ղեկավարած սովետական հինգերորդ և վեցերորդ արբանյականավերի բազմօրյա համատեղ թռիչքը: Այդ թռիչքը նշանա-

կալի է նրանով, որ սովետական ժողովրդի հերոս դուստրը աշխարհում առաջին անգամ սլացավ տիեզերքի անհունները:

Պարտիայի կողմից Ի. Վ. Ստալինի անձի պաշտամունքի համարձակ պսակազերծումը և նրա բացասական հետևանքների հաղթահարումը, պարտիական և հասարակական կյանքի լենինյան նորմերի վերականգնումը հնարավորություն տվին զարգացնելու սոցիալիստական դեմոկրատիան, սովետական բոլոր մարդկանց հասարակական-քաղաքական ակտիվությունը, մեր հասարակության կյանքում է՛լ ավելի բարձրացնելու կոմունիստական պարտիայի դերը:

Պարտիայի լենինյան ակտիվ ու ճկուն արտաքին քաղաքականության կենսագործմամբ մեծ չափով բարձրացավ մեր երկրի միջազգային հեղինակությունը, ընդլայնվեցին նրա միջազգային կապերը, համաշխարհային գլխավոր պրոբլեմների լուծման գործում Սովետական Միությունն իր ձեռքը վերցրեց նախաձեռնությունը: Անցած տասնամյակում, ինչպես ասված է պլենումի փաստաթղթերում, Վ. Ի. Լենինից հետո մեր պարտիայի տեսական գործունեությունն իր ծավալով ու արդյունքներով եղել է ամենաստեղծագործականը, ամենաբեղմնավորը. այն առավել լրիվ մարմնավորվել է XXII համագումարի փաստաթղթերում, ուր ստեղծագործաբար մշակվել են կոմունիզմի կառուցման կարևորագույն պրոբլեմները: Կոմունիստական շարժման մյուս ջոկատների համագործակցությամբ ՍՄԿՊ-ն առաջ քաշեց և մշակեց արդի համաշխարհային հասարակական զարգացման հրատապ հարցերին վերաբերող տեսական նոր դրույթներ:

Մեր հասարակության զարգացման արդի էտապում գաղափարական աշխատանքը գնալով դառնում է ավելի հզոր գործոն, տնտեսական և քաղաքական պրոբլեմների լուծման կարևորագույն միջոց: ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումը, ելնելով պարտիայի XXII համագումարի ծրագրային դրույթներից, սահմանեց արդի էտապում գաղափարական աշխատանքի հիմնական ուղղությունները և կոնկրետ խնդիրները, որոնց կենսագործման վրա այժմ պետք է կենտրոնացվեն մեր պարտիական, պետական և հասարակական բոլոր կազմակերպությունների ջանքերը:

Նոր մարդու ձևավորումն ու դաստիարակումը, որ կոմունիստական վերափոխման ամենադժվարին գործն է, իրագործվում է կոմունիստական և բուրժուական գաղափարախոսությունների միջև մղվող բացառիկ սուր պայքարի պայմաններում: Ինչ խոսք, այդ երկու իրարամերժ, հակոտնյա գաղափարախոսությունների միջև չի եղել, չկա և չի կարող լինել խաղաղ գոյակցություն, հնարավոր չէ ոչ մի համաձայնություն ու կոմպրոմիս:

Համաշխարհային ասպարեզում դասակարգային ուժերի որակապես նոր իրադրության պայմաններում, երբ իմպերիալիստները սոցիալիստական աշխարհի տնտեսական մրցության մեջ կրում են պարտություն պարտության հետևից և արդեն չեն կարող սոցիալիզմը ճզմել զենքի ուժով, չհրաժարվելով պայքարի ուրիշ ձևերից, այժմ գլխավորապես նրանք իրենց հույսը դրել են սոցիալիստական երկրների նկատմամբ գաղափարական դիվերսիաների, բացահայտ գանգստերության վրա, մոբիլիզացնելով հոգեբանական պատերազմի բոլոր միջոցները: Իմպերիալիստական գաղափարախոսները սոցիալիստական հասարակության մեջ չունենալով սոցիալ-քաղաքական ոչ մի հենարան, «ըմբռնում» են փնտրում երկատված գիտակցության տեր, բարոյազուրկ մարդկանց մեջ: Նրանք հակակոմունիզմի սև դրոշով, ստոր դավերով ու նենգությամբ ջանում են մեր հասարակության մեջ սողանցքներ գտնել իրենց քայքայիչ գործունեության համար, փորձելով գաղափարապես ու բարոյապես կազմալուծել անկայուն մարդկանց:



Իմպերիալիստները ձգտում են ապականել մեր մարդկանց մտքերը, պահպանել և աշխուժացնել նրանց գիտակցության մեջ կապիտալիզմի վերապրուկները, անցյալի բարքերն ու նախապաշարումները: Չի կարելի չտեսնել, որ նրանք «անձի ազատության» քողի տակ աշխատում են մեր մարդկանց մոտ հարուցել եսապաշտություն, մասնատիրական հոգեբանություն, շահատենչություն, կարիերիզմ, նացիոնալիզմ, կրոնական նախապաշարմունքներ, թերահավատություն սերմանել մասսաների ստեղծագործական ուժի, մարդու բանականության հզորության և հոգու վեհության նկատմամբ: Այդ էլ այժմ կազմում է սոցիալիստական երկրների դեմ ուղղված իմպերիալիզմի գաղափարական դիվերսիաների գլխավոր ուղղությունը:

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումը պարտիական կազմակերպությունների, գաղափարական ճակատի բոլոր աշխատողներից պահանջեց՝ անհաշտ ու անդադրում հարձակողական պայքար մղել բուրժուական նեխած գաղափարախոսության դեմ, մերկացնել իմպերիալիզմի մարդատյաց էությունը, զգաստ լինել թշնամու գաղափարական-քաղաքական դիվերսիաների հանդեպ, ամբողջ ճակատով զարգացնել հարձակումը կապիտալիզմի վերապրուկների դեմ, սովետական մարդկանց գիտակցությունն ազատել հին աշխարհի բոլոր խոցերից: Անցյալի մնացուկների լրիվ հաղթահարումը մարդկանց գիտակցությունից, անմիջական գործնական խնդիր է:

Մեր պարտիան իր առջև դրել է մի վեհ նպատակ՝ ձևավորել կոմունիզմի բազմակողմանի և ներդաշնակ զարգացած, կոմունիստական գաղափարայնությամբ ու բարոյականությամբ օժտված ակտիվ կառուցողին: Այդ է մեր պարտիայի գաղափարական աշխատանքի գլխավոր խնդիրը: Պարտիան իր առաջնակարգ պարտականությունն է համարում այնպես անել, որ կոմունիզմի իդեալները համակեն ու դառնան յուրաքանչյուր սովետական մարդու խոր համոզմունքը, կոմունիզմ կառուցողի բարոյական սկզբունքները՝ նրա վարքագծի նորման:

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումը գաղափարական աշխատանքի կարևորագույն խնդիրը համարեց բոլոր աշխատավորներին տոգորել սոցիալիստական հայրենիքի, կոմունիստական պարտիայի նկատմամբ սիրո զգացումով, ինչպես և դաստիարակել նրանց կոլեկտիվիզմի, ժողովուրդների բարեկամության, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, նացիոնալիզմի բոլոր տեսակի դրսևորումների դեմ անհաշտ պայքարի ոգով: Կրոնը գիտական, մարքսիստական-լենինյան աշխարհայացքի գլխավոր հակառակորդն է, անցյալի ամենակպչուն մնացուկներից մեկը, որից դեռս չեն ազատվել մեր բնակչության որոշ խավեր: Ահա թե ինչու անհրաժեշտ է աշխատավորների և, հատկապես, հավատացյալների շրջանում ծավալել մարտական, հարձակողական գիտաթեիստական պրոպագանդա:

Կոմունիզմը մասսաների գիտակցական ստեղծագործությունն է, նրա հաղթանակը կախված է մարդկանցից, նրանց կամքից, բանականությունից: Այդ բաղձալի հաղթանակին հասնելու համար անհրաժեշտ է, որ հասարակության բարօրության համար կատարվող աշխատանքը բոլորի համար դառնա գիտակցված անհրաժեշտություն: *«Աշխատանքային գործունեության համար մարդու նախապատրաստումը,*— ասել է Ն. Ս. Խրուշչովը,— *մարդկանց աշխատանքային կոփվածությունը, աշխատանքի՝ որպես առաջին կենսական պահանջմունքի նկատմամբ սեր ու հարգանք դաստիարակելը,— ահա հենց այդ էլ կազմում է կոմունիստական դաստիարակության ամբողջ աշխատանքի էությունը, միջուկը»:*

Պարտիայի գաղափարական աշխատանքի կենտրոնում գտնվում է մարդը, նրա աշխատանքը, նրա հոգևոր աշխարհը և դաստիարակչական բոլոր միջոցները

պետք է ենթարկել գլխավորին՝ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծմանը: Գաղափարայնությունը մեր մարդկանց ստեղծագործական ակտիվության աղբյուրն է: Որքան բարձր լինի մասսաների գիտակցությունը, որքան ավելի լրիվ ու ընդարձակ ծավալվի նրանց ստեղծագործական ակտիվությունը, այնքան ավելի արագ և հաջող կկենսագործվեն կոմունիստական շինարարության պլանները:

ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումը պարտիական կազմակերպությունների ուշադրությունը բևեռեց այն բանին, որ գաղափարական ամբողջ աշխատանքը ավելի սերտորեն առնչվի կյանքի հետ, խզում չլինի տեսության ու պրակտիկայի, խոսքի ու գործի միջև: Ընդգծվեց, որ պարտիայի գաղափարական ներգործման մակարդակը պետք է չափել նրանով, թե այն ինչպես է նպաստում նոր հասարակարգի նյութատեխնիկական բազայի ստեղծմանը, մասսաների կոմունիստական դաստիարակությանը:

Պլենումը առանձնակի ուշադրություն հատկացրեց երիտասարդ սերնդի կոմունիստական դաստիարակության հարցերին: Եվ այդ միանգամայն բնական է: Այդ սերունդն է, որ պետք է կառուցի կոմունիզմը, ապրի կոմունիզմի օրոք: Սովետական երիտասարդությունը հոգեպես առողջ է, կայուն, մեր ժողովուրդը հպարտանում է նրանով: Պարտիան մեր երիտասարդներին վստահում է մեծ գործեր, նրանք իրենց սխրանքներով բազմապատկում են մեր հայրենիքի հզորությունն ու փառքը:

Սակայն երիտասարդության գաղափարական դաստիարակության ասպարեզում կան էական թերություններ: Մենք ունենք առանձին երիտասարդներ, ինչպես ասված է զեկուցման մեջ, որոնք վարում են պորտաբույծ կյանք, կարծելով, թե իրենք ծնված են միմիայն զվարճությունների համար: Կյանքը երբեմն մակերես է հանում այնպիսի երիտասարդների, որոնք կյանքի, հասարակական երևույթների գնահատման իրենց թեթևամիտ վերաբերմունքով, աշխատանքի հանդեպ տածած քաղքենիական սեթևեթանքներով ու ճաշակով հակասության մեջ են մտնում մեր երկրում տիրապետող գործելակերպի և մտածելակերպի հետ: Իմպերիալիստական գաղափարախոսները ճիգ են գործադրում այդ փոքրաթիվ անկայուն երիտասարդների շրջանում սերմանել բուրժուական ապրելակերպ, ապականված բարքեր, քարոզել ապաքաղաքականությունը, ինչ-որ հաշիվներով փայփայել մեր հասարակության մեջ «հայրերի ու զավակների կոնֆլիկտի» պատրանքներ և այլն:

Մատնանշելով, որ որոշ պարտիական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպություններ հեռու են երիտասարդության դաստիարակության կարևոր գործից, պլենումը նրանցից պահանջեց բարելավել գաղափարա-դաստիարակչական աշխատանքի դրվածքը երիտասարդության շրջանում, յուրաքանչյուր երիտասարդի դաստիարակել իբրև կոմունիզմի կայուն և քաջարի մարտիկի: Այդ նպատակով անհրաժեշտ է հրաժարվել նրանց սրտերի ու մտքերի վրա ներգործելու հնացած ձևերից ու մեթոդներից, մտածել երիտասարդների առողջ կենցաղի, ֆիզիկական դաստիարակության, կուլտուրական ժամանցի ու հանգստի կազմակերպման մասին, գոհացում տալ նրանց խելացի ցանկություններին ու ձգտումներին:

Պարտիան ունի գաղափարական աշխատանքի բազմաչափ փորձված ձևեր ու միջոցներ, ստեղծել է դաստիարակչական աշխատանքի արդյունավետ սիստեմ: Սակայն մեր իրականության նոր պայմաններում, երբ ստեղծվել է հոգևոր կուլտուրայի իսկական հարստություն, անչափ աճել է սովետական մարդկանց կրթական ու կուլտուրական մակարդակը, միանգամայն նոր պահանջներ են ներկայացվում գաղափարական աշխատանքին: Այժմ հարկավոր է մարտական պատրաստության մեջ դնել գաղափարական զենքի բոլոր տեսակները, ընդլայնել գաղափարական ներգործման ոլորտը, վճռականորեն կատարելագործել աշխատանքի ձևերը, մեթոդները, ոճը:



Այդ առումով մեծ է սովետական դպրոցի դերը աճող սերնդի դաստիարակության և ուսուցման ասպարեզում: Նշելով այդ գործում ձեռք բերված դրականը, պլենումը պահանջեց պետական կարգ ու կանոն հաստատել սովորողների աշխատանքային դաստիարակության գործում, հաղթահարել արհեստական խզումը ուսուցման և դաստիարակության միջև, բարձրացնել ժողովրդական ուսուցչի՝ որպես նոր մարդու դաստիարակության գործում պարտիայի ամենամերձավոր օգնականի դերը: Պլենումը մեծ ուշադրություն հատկացրեց բարձրագույն ուսումնական հաստատությունների ուսանողների գաղափարական դաստիարակության, կոմունիզմի գործին նվիրված բարձրորակ մասնագետների պատրաստման հարցերին: Նա խնդիր դրեց ավելի մեծ ուշադրություն հատկացնել բուհերում սոցիալ-տնտեսական առարկաների դասավանդմանը, հաղթահարել սխոլաստիկայի, տիրացուականության, ֆորմալիզմի տարրերը դասավանդման գործում:

Մեծ պահանջներ են ներկայացվում գաղափարական ազդեցության մասսայական միջոցներին, մամուլին ու ռադիոյին, կինոյին ու հեռուստատեսությանը, որոնք պարտիայի գաղափարական ճակատի հարվածային ուժերն են: Ցույց տալով այն լավը, դրականը, որ կա նրանց գործունեության մեջ, պլենումը մատնանշեց այդ ասպարեզում եղած թերությունները: Դեռևս շատ թերթեր ու հանդեսներ տպագրվում են ցածր մակարդակով, նրանց էջերում խորությամբ չեն բարձրացվում էկոնոմիկայի արմատական շատ հարցեր, չեն բացահայտվում մեր օրերի մարդկանց սխրագործությունը, աշխատանքում եղած խոշոր թերությունները: Դրան մեծապես խանգարում է մամուլի կազմակերպման արդյունավետ սիստեմի բացակայությունը: Հաճախ վատնելով անհագին թուղթ, միջոցներ և մարդկային ուժ, գրքի շուկան հեղեղվում է գորշ, պրիմիտիվ, գաղափարական արատներ ունեցող գրքերով: Գրքի հրատարակության գործը բարելավելու նպատակով, պլենումը նպատակահարմար գտավ վերակազմել կենտրոնական և տեղական հրատարակչությունների ցանցը, վերացնել զերատեսչությունն ու տեղայնությունը գրքի հրատարակման գործում: Պլենումը կինոաշխատողներից պահանջեց վերջ դնել խոտան, գաղափարապես արատավոր ֆիլմերի արտադրությանը, ստեղծել, հասարակական մեծ հնչեղության նկարներ, ինչպես և մասսաների իսկական ամբիոն դարձնել ռադիոհաղորդումները:

Պարտիայի գաղափարական զենքի կորեղ միջոցներ են սովետական գրականությունն ու արվեստը, որոնց հիմքում ընկած են պարտիականության և ժողովրդայնության լենինյան սկզբունքները:

Մեր երկրում ստեղծվել են հոգևոր կուլտուրայի խոշոր արժեքներ, սոցիալիստական ռեալիզմի գրականությունն ու արվեստը հասել են մեծ նվաճումների: Բարձր գաղափարայնությունը և գեղարվեստական վարպետությունը մշտապես եղել ու մնում են մեր արվեստի ուժը: Սակայն վերջին շրջանում առանձին գրողներ ու արվեստագետներ ենթարկվելով խորթ գաղափարների ազդեցության, նահանջելով պարտիականության և ժողովրդայնության դիրքերից, ունեցան ստեղծագործական ձախողումներ, նրանց մոտ երևան եկան որոշ սխալ տենդենցներ, գաղափարական առանձին երերումներ, փորձեր կատարվեցին սովետական մարդկանց պարտադրել աբստրակցիոնիստական, ֆորմալիստական արվեստը: Այդ ամենը ժամանակին բացահայտեց ու քննադատեց պարտիան: Այդ առումով խոշոր իրադարձություն էին պարտիայի ու կառավարության ղեկավարների հանդիպումները արվեստի ու գրականության գործիչների հետ, որոնց ժամանակ սուր կերպով դրվեցին և պարտիա-

կան, մարքսիստական-լենինյան դիրքերից քննարկվեցին գեղարվեստական ստեղծագործության հետագա վարգացման հրատապ հարցերը:

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումն ընդգծելով նոր մարդու դաստիարակության, կոմունիստական կուլտուրայի ձևավորման գործում գրականության ու արվեստի հետագա վարգացման հսկայական նշանակությունը, արվեստագետների, գրողների վսեմ պարտքը համարեց մեր ժողովրդին տալ մարտական ռևոլյուցիոն պաթոս ունեցող նշանավոր ստեղծագործություններ, վճռականորեն հանդես գալ գորշության ու արհեստավորության դեմ՝ գեղարվեստական ստեղծագործության մեջ:

Մեծ խնդիրներ են առաջադրվում մասսաների քաղաքական լուսավորությանը, դասախոսական պրոպագանդային, ագիտացիոն-մասսայական, կուլտուր-լուսավորական աշխատանքին: Այդ բնագավառում հաջողության հասնելու համար անհրաժեշտ է վճռականորեն հաղթահարել գաղափարական-դաստիարակչական ու կուլտուրական աշխատանքի կտրվածությունը կյանքից, խորտակել ֆորմալիզմի բոլոր պատնեշները: Պլենումն անհրաժեշտ համարեց վճռականորեն բարելավել գաղափարական աշխատանքը գյուղում, ինչպես և բնակչության տարբեր խավերի շրջանում կազմակերպել շերտավորված աշխատանք:

«ՍՄԿՊ Կենտկոմի պլենումը հաստատ համոզմունք է հայտնում, որ բոլոր պարտիական կազմակերպությունները, գաղափարական ճակատի բոլոր աշխատողները, կատարելով ՍՄԿՊ ծրագիրը, XXII համագումարի և այս պլենումի որոշումները, կհասնեն գաղափարական աշխատանքի արմատական բարելավման, է՛լ ավելի կբարձրացնեն ժողովրդի ստեղծագործական ակտիվությունը՝ հանուն մեր երկրում կոմունիզմի կառուցման խնդիրների իրագործման, մարքս-լենինյան մեծ ուսմունքի հետագա հաղթանակների»:

Պլենումում ելույթ ունեցան ՍՄԿՊ Կենտկոմի քարտուղարներ ընկ. ընկ. Մ. Ա. Սուսլովը, Բ. Ն. Պոնոմարևը, Յու. Վ. Անդրոպովը և շարադրեցին, մի կողմից՝ Չինաստանի կոմպարտիայի Կենտկոմի և մյուս կողմից՝ ՍՄԿՊ և մյուս եղբայրական պարտիաների միջև եղած տարաձայնությունների բուն էությունը: *Չինաստանի կոմպարտիայի Կենտկոմի ներկայացուցիչների հետ ՍՄԿՊ Կենտկոմի ներկայացուցիչների առաջիկա հանդիպման մասին* ընդունած որոշման մեջ պլենումը լիովին և միահամուռ հավանություն տվեց ՍՄԿՊ Կենտկոմի նախագահության, ՍՄԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար, ՍՍՌՄ Մինիստրների սովետի նախագահ ընկեր Ն. Ս. Խրուշչովի քաղաքական գործունեությանը համաշխարհային կոմունիստական շարժման ուժերի հետագա համախմբման ասպարեզում, ինչպես նաև այն բոլոր կոնկրետ գործողություններին ու միջոցառումներին, որ ՍՄԿՊ Կենտկոմի նախագահությունը ձեռնարկել է Չինաստանի կոմպարտիայի Կենտկոմի հետ պահպանվող փոխհարաբերություններում: Պլենումը հաստատեց այն գլխավոր սկզբունքները, որով պետք է ղեկավարվի ՍՄԿՊ Կենտկոմի նախագահությունը Չինաստանի կոմպարտիայի Կենտկոմի ներկայացուցիչների հետ տեղի ունենալիք հանդիպման ժամանակ:

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումում մեծ ու փայլուն ճառով հանդես եկավ ընկեր Ն. Ս. Խրուշչովը, որը վերլուծելով ու ըստ արժանվույն գնահատելով կոմունիզմի շինարարության մեծագույն հաղթանակները, հանգամանորեն արծարծեց պարտիայի գաղափարական ճակատի հանգուցային հարցերը: Մեր ռեսպուբլիկայի աշխատավորության ուշադրության կենտրոնում են պլենումի նյութերը, Ն. Ս. Խրուշչովի ճառը:

---




# ՎՍԵՄ ՆՊԱՏԱԿԻ ՄԵԾ ՈՒՂԻՆԵՐՈՎ

ՅԱ. ԶԱՐՈԲՅԱՆ

ՀԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար

*ՈՒՍԱՍՏԱՆԻ Սոցիալ-Դեմոկրատական բանվորական պարտիայի երկրորդ համագումարը, որի 60-ամյակը նշում ենք այս ամսին, առանձնահատուկ տեղ է գրավում միջազգային կոմունիստական և բանվորական շարժման պատմության մեջ։ Այդ պատմական համագումարում է ստեղծվել բանվոր դասակարգի ռևոլյուցիոն մարքսիստական պարտիան, բոլշևիկների պարտիան։ Բոլշևիզմը, ինչպես գրում էր Վ. Ի. Լենինը, որպես քաղաքական մտքի հոսանք և որպես քաղաքական պարտիա, գոյություն ունի 1903 թվականից։*

*Կոմունիստական պարտիան առաջնորդեց մեր ժողովրդին Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի համար մղվող պայքարում, կազմակերպեց պրոլետարիատի դիկտատուրան, ապահովեց սոցիալիստական հասարակարգի կառուցումը և հաստատակամորեն ղեկավարում է սովետական ժողովրդի առաջընթացը դեպի կոմունիզմ։*

*Կապիտալի լծից աշխատավորությանը ազատագրելու և նոր հասարակարգ կառուցելու համար իր հերոսական, անձնուրաց պայքարով Սովետական Միության կոմունիստական պարտիան նվաճեց ոչ միայն սովետական ժողովրդի, այլև ամբողջ աշխարհի բոլոր առաջավոր մարդկանց ջերմ սերն ու անսահման վստահությունը։ Պատմական փորձը ցույց տվեց, որ բոլոր քաղաքական պարտիաներից միայն կոմունիստական պարտիան է աշխատավորության նվիրական իղձերի ու ակնկալությունների իսկական արտահայտիչը, որ միայն գիտական կոմունիզմն է այն հուսալի կողմնացույցը, որը մարդկությանը ցույց է տալիս լուսավոր, երջանիկ ապագայի՝ կոմունիզմի ուղին։*

***

*ԵԾ Լենինի ծավալած անխոնջ գործունեության շնորհիվ ՌՍԴԲՊ երկրորդ համագումարը հրավիրվեց նոր տիպի պարտիա ստեղծելու նպատակով։ Ֆ. Էնգելսի մահից հետո երկրորդ ինտերնացիոնալի ղեկավարությունը գնալով ավելի էր հեռանում դասակարգային դիրքերից, մինչև որ գլորվեց օպորտունիզմի ճահիճը։*

*XIX դարի վերջին տասնամյակում բանվորական շարժումը միայն առաջին*

քայլերն էր անում Ռուսաստանում։ Դա, ինչպես մատնանշում էր Վ. Ի. Լենինը, բանվորական շարժման «մանկության ու պատանեկության ժամանակաշրջանն էր»։ Այն ժամանակ Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատների առջև ծառացած էր ռևոլյուցիոներների անջատ ուժերը միավորելու, այնպիսի մի մարքսիստական պարտիա ստեղծելու խնդիրը, որն ընդունակ լիներ գլխավորելու ժողովրդի պայքարը ինքնակալության ու բուրժուազիայի դեմ։

1898 թվականին Մինսկում կայացած ՌՍԴԲՊ առաջին համագումարը դեռևս բանվորական պարտիա չստեղծեց Ռուսաստանում։ Համագումարը լոկ ազդարարեց Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական պարտիայի ստեղծումը, ընտրեց Կենտրոնական կոմիտե և հիմնեց կենտրոնական օրգան։ Համագումարի հրապարակած Մանիֆեստի հիմնական դրույթների հետ համերաշխվեց այդ ժամանակ աքսորավայրում գտնվող Վ. Ի. Լենինը։ Սակայն համագումարից կարճ ժամանակ անց ոստիկանությունը ջախջախեց պարտիայի կենտրոնական հիմնարկները։

Բանվոր դասակարգի մարքսիստական պարտիա ստեղծելու համար պահանջվեց բազմամյա լարված աշխատանք, որն անձնվիրաբար կատարեցին ռուսական ռևոլյուցիոներները Վ. Ի. Լենինի ղեկավարությամբ։ ՌՍԴԲՊ երկրորդ համագումարի նախապատրաստման գործում վճռական դեր խաղաց լենինյան Իսկրան։ Հենց «Իսկրան,— մատնանշում է Վ. Ի. Լենինը,— մարքսիզմի և ռևոլյուցիոն ս.-դ. սկզբունքներով վերականգնեց ս.-դ. պարտիան (որ հիմնվել էր 1898 թվականին, բայց հետո քայքայվել ձերբակալություններից»)։

ՌՍԴԲՊ II համագումարում Վ. Ի. Լենինը և նրա համախոհները հետևողական պայքար էին մղում օպորտունիստների դեմ, հանուն իսկրայական սկզբունքների հաղթանակի։ Միջազգային բանվորական շարժման պատմության այդ շրջադարձային մոմենտին լուծվում էր ժամանակի ամենակարևոր քաղաքական հարցը, թե ինչ ուղիով կընթանա ռուսական սոցիալ-դեմոկրատական շարժումը, արդյո՞ք նա ոտք կդնի ցարիզմի ու կապիտալիզմի դեմ ռևոլյուցիոն պայքարի ուղին, թե կընթանա ռեֆորմիզմի հունով։

Հայտնի է, որ միջազգային ռևոլյուցիոն շարժման կենտրոնը դեռ դարասկզբին տեղափոխվել էր Ռուսաստան, որը իմպերիալիզմի բոլոր հակասությունների հանգուցակետն էր։ Ռուսաստանի բանվոր դասակարգին վիճակվեց պատմական մեծ միսիա՝ լինել միջազգային ռևոլյուցիոն պրոլետարիատի ավանգարդը։ Ուստի Ռուսաստանում ռևոլյուցիոն մարքսիստական պարտիայի ստեղծումը կարևորագույն նշանակություն ուներ ոչ միայն երկրի, այլև ամբողջ միջազգային բանվորական շարժման ճակատագրի համար։

Պարտիայի երկրորդ համագումարում օպորտունիստների և ռեֆորմիստների դեմ մղած համառ պայքարում Վ. Ի. Լենինը պաշտպանեց հիմնական մարքսիստական դրույթները՝ գաղափարական ու կազմակերպական հարցերում։ Համագումարի որոշումները վկայում էին, որ Ռուսաստանի բանվորական շարժման մեջ հաղթանակել էր իսկրայական, ռևոլյուցիոն ուղղությունը։

Առանձնապես նշանակալի հաղթանակ տարավ Վ. Ի. Լենինը պրոլետարիատի դիկտատուրայի հարցում։ Պարտիայի ծրագրի մեջ այդ արմատական մարքսիստական դրույթը մտցնելու դեմ հանդես էին գալիս բունդականները և էկոնոմիստները։ Նրանք պնդում էին, թե քանի որ արևմտաեվրոպական սոցիալիստական պարտիաների ծրագրերում գրված չէ քաղաքական իշխանությունը պրոլետարիատի կողմից նվաճելու խնդիրը, ապա հարկ չկա այդ



դրույթը մտցնել Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական պարտիայի ծրագրի մեջ։ Սակայն համագումարը ձայների մեծամասնությամբ մերժեց օպորտունիստների այդ պահանջը և ընդունեց Լենինի առաջարկությունը։ Մարքսի և Էնգելսի մահից հետո առաջին անգամ էր ընդունվում մի ծրագիր, որը բանվոր դասակարգի պարտիայի խնդիրն էր համարում պրոլետարիատի դիկտատուրայի հաստատումը։

Երկրորդ համագումարում ընդունված ռևոլյուցիոն մարքսիստական ծրագիրը գործողությունների մարտական ուղեցույց էր ընդհուպ մինչև պարտիայի VIII համագումարը՝ 1919 թվականին։

Պարտիայի երկրորդ համագումարում սուր կերպով դրվեց նաև ազգային հարցը։ Բունդականները և լեհական սոցիալ-դեմոկրատները առարկում էին ազգերի ինքնորոշման իրավունքի դեմ։ Մինչդեռ Ռուսաստանի պայմաններում ինքնորոշման լոզունգը կարևորագույն նշանակություն ուներ, քանի որ դա պրոլետարիատի կողմն էր գրավում ճնշված ժողովուրդներին։ Պարտիայի երկրորդ համագումարը ազգային հարցում վճռական հարված հասցրեց նացիոնալիստական հայացքներին։

Երկրորդ համագումարում կատաղի պայքար ծավալվեց պարտիայի կառուցման կազմակերպական սկզբունքների շուրջը։ Եթե Վ. Ի. Լենինը պարտիան համարում էր պրոլետարիատի առաջավոր, գիտակից, կազմակերպված ու համախմբված ջոկատը, որն ընդունակ է ժողովրդին առաջնորդել դեպի հաղթանակ, ապա օպորտունիստները ցանկանում էին ունենալ հեղհեղուկ, ռեֆորմիստական, երկրորդ ինտերնացիոնալի պարտիաների նման մանրբուրժուական մի կազմակերպություն։

Պարտիայի կանոնադրության առաջին պարագրաֆի ձևակերպման շուրջը համագումարում ծավալված պայքարը արտացոլում էր այդ երկու հակադիր տենդենցները։ Վ. Ի. Լենինը և նրա կողմնակիցները գտնում էին, որ պարտիայի անդամությունը որոշելու հարցում անհրաժեշտ է նկատի ունենալ անձնական մասնակցությունը պարտիական կազմակերպություններից մեկում, իսկ Մարտովը առաջարկում էր սահմանափակվել «անձնական կանոնավոր աջակցությամբ»։ Հասկանալի է, որ Մարտովի ձևակերպումը պարտիայի դռները լայնորեն բացում էր ամեն տեսակ անկայուն տարրերի առջև, որոնք կարող էին լոկ ձևականորեն իրենց պարտիայի անդամ համարել, իսկ իրականում չմասնակցել նրա ռևոլյուցիոն պայքարին։ Այսպիսով պարտիան կկորցներ իր կազմակերպական հիմքերը և կվերածվեր չձևավորված մի ինչ-որ բանի։

Վ. Ի. Լենինի մեծագույն ծառայությունը նաև այն է, որ նա մշակեց պարտիայի վերաբերյալ ուսմունքը։ Պարտիան, ուսուցանում էր Լենինը, պետք է ունենա երկաթյա պրոլետարական կարգապահություն, պարտիական կյանքի հաստատուն նորմեր։ Միայն իր կազմակերպվածությամբ, իր կարգապահությամբ ուժեղ պարտիան է ի վիճակի կատարելու բանվոր դասակարգի առաջնորդի պատմական միսիան, նրան վարելու դեպի հաղթանակ։

Պարտիայի երկրորդ համագումարում ծրագրային ու կազմակերպական հարցերի շուրջ մղած պայքարում սահմանազատվեցին ՌՍԴԲՊ ռևոլյուցիոն և օպորտունիստական մասերը՝ բոլշևիկներն ու մենշևիկները։

ՌՍԴԲՊ երկրորդ համագումարի պատմական նշանակությունն այն էր, որ այնտեղ ավարտվեց Վ. Ի. Լենինի և նրա կողմնակիցների բազմամյա տիտանական պայքարը հանուն մարքսիստական պարտիայի ստեղծման։

Ռուսաստանում ռևոլյուցիոն մարքսիստական պարտիայի ստեղծումը հսկայական նշանակություն ունեցավ ռևոլյուցիոն շարժման ծավալման համար բոլոր երկրներում։ Բոլշևիզմը դարձավ միջազգային ռևոլյուցիոն պրոլետարիատի անմար փարոսը, մի փայլուն օրինակ բանվոր դասակարգի բոլոր, հիրավի մարքսիստական պարտիաների համար։ ՌՍԴԲՊ երկրորդ համագումարն ըստ էության հիմնադիր համագումար էր մեր պարտիայի համար։ Այն կարևոր շրջադարձային կետ հանդիսացավ ամբողջ միջազգային ռևոլյուցիոն և բանվորական շարժման պատմության մեջ։

Պարտիայի երկրորդ համագումարից հետո ինչպես ամբողջ Ռուսաստանի, այնպես էլ Անդրկովկասի բոլշևիկները եռանդուն պայքար ծավալեցին բազմազգ պրոլետարիատի ու աշխատավոր գյուղացիության շրջանում լենինյան իսկրայական ուղղության ամրապնդման ու նրա վերջնական հաղթանակի համար։ Անդրկովկասի լենինյան իսկրայականները՝ Ա. Ծուլուկիձեն, Մ. Ցխակայան, Ստ. Շահումյանը, Բ. Կնունյանցը, Ա. Ջափարիձեն, Մ. Ազիզբեկովը, Ս. Սպանդարյանը, Ֆ. Մախարաձեն, Ա. Խումարյանը, Վ. Կուռնատովսկին և շատ ուրիշներ դարձան լենինյան գաղափարների անխոնջ տարածողները, ռուս, հայ, վրացի, ադրբեջանցի աշխատավորների ինտերնացիոնալ կապերի ու եղբայրության ջահակիրները։ Երկրամասի փառապանծ բոլշևիկների ինտերնացիոնալ ջոկատը կենաց ու մահու կռիվ մղեց բանվոր դասակարգի ռևոլյուցիոն շարժման ամեն գույնի ու երանգի թշնամիների դեմ։ Ցարիզմի դեմ մղված կատաղի մարտերի բովում աճեցին ու առնացան Անդրկովկասի լենինյանները։

Պայքարի առաջավոր դիրքերում հանդես եկան ռուս, վրացի, հայ, ադրբեջանցի այնպիսի ականավոր բոլշևիկներ, որպիսիք էին՝ Ս. Օրջոնիկիձեն, Ի. Ֆիոլետովը, Ա. Միկոյանը, Մ. Օրախելաշվիլին, Ս. Կիրովը, Ն. Նարիմանովը, Ս. Կասյանը, Ս. Էֆենդիևը, Մ. Մամեդյարովը, Դ. Շահվերդյանը և ուրիշներ։ Աներեր ընթանալով մեծ Լենինի դրոշի ներքո, բոլշևիկների այդ բոցաշունչ պլեադան իր անձնուրաց պայքարով բազմաթիվ փառավոր էջեր գրեց լենինյան կոհորտայի անսահման հարուստ պատմության մեջ։

Բոլշևիկների գլխավորությամբ Անդրկովկասի եղբայրական ժողովուրդների երկարամյա պայքարը, նրանց հերոս զավակների՝ կոմունիստների թափած արյունը զուր չկորան։ Անդրկովկասի դարավոր ժողովուրդներն իրենց մեծ եղբոր օգնությամբ թոթափեցին մենշևիկների, դաշնակցականների ու մուսավաթականների և նրանց օտարերկրյա տերերի նողկալի լուծը ու երկրամասում հաստատեցին սովետական իշխանություն։ Այսպիսով, Անդրկովկասի բոլշևիկները պատվով կենսագործեցին պարտիայի երկրորդ համագումարում Լենինի առաջ քաշած ծրագրային ու տակտիկական բոլոր դրույթները։

***

ԼԵՆԻՆԻ ստեղծած մեծ պարտիան, որն իր ակունքներն առնում է Մարքսի և Էնգելսի Կոմունիստական մանիֆեստից և որը մարմնավորում է այն ամենալավագույնը, ինչ տվել է ռևոլյուցիոն պրոլետարական շարժումն Արևմուտքում և Ռուսաստանում, ոչ միայն վճռական դեր խաղաց մեր հայրենիքի պատմական բախտը որոշելու ասպարեզում, այլև հսկայական ազդեցություն ունեցավ համաշխարհային կոմունիստական և բանվորական շարժման զարգացման վրա։



Կոմունիստական պարտիան Ռուսաստանի ժողովուրդներին առաջնորդեց երեք ռևոլյուցիաների՝ 1905—1907 թվականների, 1917 թվականի Փետրվարյան բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիաների և Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի միջով։

Քաղաքացիական պատերազմի տարիներին ներքին ու արտաքին կոնտրռևոլյուցիայի միացյալ ուժերի դեմ տարած հաղթանակը, ժողովրդական տնտեսության վերականգնումը, ծանր ինդուստրիայի ստեղծումը և գյուղատնտեսության կոլեկտիվացումը, սոցիալիզմի կառուցումը, Հայրենական մեծ պատերազմի տարիներին գերմանական ֆաշիզմի ու ճապոնական միլիտարիզմի դեմ տարած հաղթանակը, սոցիալիզմի կառուցման ավարտումը և անցումը դեպի կոմունիզմ — ահա լենինյան մեծ պարտիայի ղեկավարությամբ սովետական ժողովրդի անցած հերոսական ուղին։

Մեր երկրում տեղի ունեցած բոլոր սոցիալ-տնտեսական փոփոխությունները, ինչպես նաև միջազգային ասպարեզում դասակարգային ուժերի հարաբերակցության արմատական փոփոխությունները հանդիսացել են Սովետական Միության կոմունիստական պարտիայի վերափոխիչ գործունեության արդյունքը։ Իր գործունեությունն սկսելով պրոֆեսիոնալ ռևոլյուցիոներների մի սակավաթիվ ջոկատից, ՍՄԿՊ-ն աճել և ներկայումս դարձել է կոմունիստների մի հզոր, ավելի քան տասը միլիոնանոց բանակ։

Կոմունիստական պարտիայի կուտակած հսկայական փորձը հաջողությամբ օգտագործում են ինչպես սոցիալիզմի ուղին թևակոխած, այնպես էլ իմպերիալիզմի լուծը թոթափող ժողովուրդները, հաշվի առնելով յուրաքանչյուր երկրի ազգային առանձնահատկությունները։

Միայն կոմունիստական պարտիայի շնորհիվ մեր ժողովուրդը թոթափեց սոցիալական ու ազգային ստրկության կապանքները և ամբողջ աշխարհի համար հարթեց սոցիալիզմի մայրուղին։

Միշտ հավատարիմ մնալով պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներին, Սովետական Միության կոմունիստական պարտիան ամեն ինչ արել և անում է սոցիալիզմի գաղափարների հաղթանակի համար։ Համաշխարհային պատմական հաղթանակ տանելով Հայրենական մեծ պատերազմում, սովետական ժողովուրդը կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ օգնեց Եվրոպայի և Ասիայի մի շարք երկրների ժողովուրդներին ժողովրդադեմոկրատական իրավակարգ ստեղծելու ու ամրապնդելու գործում։

Շահագործող դասակարգերի դեմ բանվոր դասակարգի տարած հաղթանակի և սոցիալիզմի ուղին ոտք դրած ժողովուրդների եղբայրական համագործակցության շնորհիվ ստեղծվեց համաշխարհային սոցիալիստական սիստեմը, որն ընդգրկում է մարդկության մեկ երրորդը։ Համաշխարհային սոցիալիստական սիստեմը վստահորեն առաջ է ընթանում դեպի վճռական հաղթանակ կապիտալիզմի հետ ունեցած տնտեսական մրցության մեջ։

Այժմ սովետական ժողովուրդը վստահորեն կառուցում է կոմունիստական հասարակարգ։ Նրա պատմական սխրանքները կազմակերպում ու ոգեշնչում են կոմունիստական պարտիան ու նրա Կենտրոնական կոմիտեն, որին գլխավորում է հավատարիմ լենինյան ընկեր Ն. Ս. Խրուշչովը։

Պարտիայի և ամբողջ սովետական ժողովրդի կյանքում կարևոր տեղ է գրավում ՍՄԿՊ XXII համագումարը։ Հանդիսանալով մեր երկրի կոմունիստների մեծագույն համաժողովը, այն համաշխարհային կոմունիստական շարժ-

ման պատմության մեջ մտավ որպես կոմունիզմ կառուցողների համագումար։

Պարտիայի XXII համագումարը գոհունակությամբ նշեց ու հավանություն տվեց այն գործունեությանը, որ պարտիան վարեց Ստալինի անձի պաշտամունքի ծանր հետևանքները վերացնելու ուղղությամբ և հաստատ վճռականություն հայտնեց հետևողականորեն կենսագործելու լենինյան գիծը։

Պարտիայի XXII համագումարի պատմական վիթխարի նշանակությունն այն է, որ միջազգային կոմունիստական շարժման պատմության մեջ առաջին անգամ ընդունվեց կոմունիզմի կառուցման խիստ գիտական և միանգամայն կոնկրետ ծրագիրը։ Պարտիան իր նոր ծրագրում ավելի զարգացրեց կոմունիզմի ուսմունքը, այն հարստացնելով մի ամբողջ շարք նոր դրույթներով ու հետևություններով։ Պարտիան հանդիսավոր կերպով ազդարարեց, որ սովետական մարդկանց ներկայիս սերունդը կապրի կոմունիզմի օրոք։

Պարտիայի XXII համագումարի ընդունած ծրագրի միջազգային նշանակությունն այն է, որ համաշխարհային կշիռ ունեցող այդ պատմական փաստաթուղթը հսկայական ազդեցություն է գործել աշխարհի քաղաքական ամբողջ մթնոլորտի վրա։ Ամբողջ աշխարհում տնտեսական, քաղաքական ու գաղափարական պայքարն ընթանում է մեր պարտիայի ծրագրի գաղափարների ազդեցության ներքո։ Կարելի է վստահորեն ասել, որ Մարքսի և Էնգելսի Կոմունիստական պարտիայի մանիֆեստից հետո, միջազգային կոմունիստական շարժումը չի ունեցել այնպիսի մի փաստաթուղթ, որն այդպիսի ընդհանուր ճանաչում գտներ և այնքան ազդեր միջազգային իրադարձությունների ընթացքի վրա, ինչպես ՍՄԿՊ ծրագիրը։ Զուր չէ, որ պարտիայի նոր ծրագիրը անվանում են մեր դարաշրջանի կոմունիստական մանիֆեստը։

***

ԱՅՍՕՐ մեր բազմազգ հայրենիքի ժողովուրդները կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ լուծում են կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման խնդիրը։ Ամբողջ սովետական ժողովրդի հետ միասին խոշոր նվաճումներ են ձեռք բերել նաև Սովետական Հայաստանի աշխատավորները։

Ռեսպուբլիկայում ամբողջ համախառն արտադրանքի թողարկումը յոթնամյակի առաջին չորս տարում, այսինքն՝ 1959-ից մինչև 1962 թվականը, աճեց ավելի քան մեկուկես անգամ։ Այդ ժամանակամիջոցում կառուցվեցին և գործարկվեցին մոտ 170 արդյունաբերական ձեռնարկություններ ու խոշոր ցեխեր։ Վերջերս շարք մտան Երևանի ջերմաէլեկտրակայանի մեկ ագրեգատ և Ագարակի պղնձամոլիբդենային կոմբինատի առաջին հերթը։

Ընթանալով կոմունիստական պարտիայի լենինյան կուրսով, ռեսպուբլիկայում արագ տեմպերով զարգացել է ծանր արդյունաբերությունը։ Այսպես, մեքենաշինությունն ու մետաղամշակումը ռեսպուբլիկայում ավելացավ ավելի քան 2 անգամ, քիմիական արդյունաբերությունը՝ 55 տոկոսով, շինանյութերի արդյունաբերությունը՝ գրեթե 2 անգամ։ Արագ թափով են զարգանում նաև արդյունաբերության էլեկտրատեխնիկական, ռադիոտեխնիկական, սարքաշինական ճյուղերը, թեթև և սննդի արդյունաբերությունը։

Յոթնամյակի չորս տարվա ընթացքում ռեսպուբլիկայի արդյունաբերությունը յուրացրեց արտադրանքի ավելի քան 400 նոր տեսակների թողարկումը։



Այդ նույն ժամանակամիջոցում աշխատանքի արտադրողականությունն աճեց 20,1 տոկոսով։

Արդյունաբերության աճին զուգընթաց աճում են նաև ռեսպուբլիկայի բանվոր դասակարգի շարքերը։ Սովետական Հայաստանի բանվոր դասակարգը չորս տարվա ընթացքում աճեց 40 հազար մարդով, իսկ գիտական և ինժեներա-տեխնիկական կադրերը՝ 6 հազար մարդով։ Լայնորեն ծավալվել է կոմունիստական աշխատանքի շարժումը, որը ներկայումս ընդգրկել է ավելի քան 105 հազար մարդ։

Լայն թափով է ծավալվել կապիտալ շինարարությունը։ Համեմատության համար նշենք, որ 1959—1962 թվականներին ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության մեջ այնքան կապիտալ ներդրումներ են կատարվել, որքան արվել էր մոտավորապես 36 տարվա ընթացքում, այսինքն՝ 1921-ից մինչև 1956 թվականը։ Պետական կապիտալ ներդրումների ծավալը այս տարվա անցած հինգ ամիսներին, անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ աճել է 3,2 տոկոսով։ Նույն ժամանակամիջոցում շահագործման է հանձնվել 34829 քմ բնակելի տարածություն։

Որոշ հաջողություններ է ձեռք բերել նաև ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը. ավելացել ու ընդարձակվել են խաղողի և պտղատու այգիները, հացահատիկի, շաքարի ճակնդեղի, ծխախոտի, բանջարեղենի և այլ կուլտուրաների ցանքատարածությունները։

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության հետագա զարգացման համար կարևորագույն նշանակություն ունեն ոռոգումը և մելիորացիան։ 1962 թվականին սկսվեց Ապարանի ջրամբարի շինարարությունը, որը կարևոր դեր կխաղա ոչ միայն ոռոգման ասպարեզում, այլև կկրճատի Սևանա լճից հոսող ջուրը։ Գյուղատնտեսական արտադրության հետագա վերելքի հարցում կարևոր դեր է խաղում նաև Ախուրյանի ջրամբարի նախապատրաստվող շինարարությունը։

***

ՀԱՋՈՂՈՒԹՅԱՄԲ լուծելով ժողովրդական տնտեսության կարևորագույն բնագավառների զարգացման խնդիրները, կոմունիստական պարտիան այժմ մեծ ուշադրություն է հատկացնում գաղափարական աշխատանքին, նոր մարդու ձևավորման հարցին։ ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեի հունիսյան պլենումը սպառիչ կերպով նշեց գաղափարական ճակատի մեր կարևորագույն խնդիրները։ Այժմ ամեն ինչ պետք է անել կենսագործելու այդ կարևորագույն պլենումի որոշումները։

Անցած տարիներին կուլտուրայի ասպարեզում մեծ հաջողություններ է ձեռք բերել Սովետական Հայաստանի աշխատավորությունը։ Ռեսպուբլիկայի ստեղծագործական ինտելիգենցիան՝ գրողները՝ կոմպոզիտորները, նկարիչները և արվեստի մյուս աշխատողները ստեղծել են բարձրարժեք գործեր, որոնք նպաստում են ժողովրդի կոմունիստական դաստիարակությանը։

Առանձնապես մեծ հաջողություններ են ձեռք բերված ժողովրդական կրթության ասպարեզում։ Ներկայումս ռեսպուբլիկայի զանազան ուսումնական հաստատություններում սովորում են ավելի քան 450 հազար մարդ, կամ ռեսպուբլիկայի ամբողջ բնակչության 23 տոկոսը։

Մեր ռեսպուբլիկայի աշխատավորությունը նշանակալի հաջողություններ է ձեռք բերել նաև ընթացիկ 1963 թվականին:

Այս տարվա անցած հինգ ամիսներին ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքի պլանն արդեն կատարված է 103,7 տոկոսով, անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ համախառն արտադրանքն աճել է 11 տոկոսով: Ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության արտադրանքն այս տարվա հինգ ամիսներին, անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, աճել է 22 տոկոսով:

Կյանքը մի անգամ ևս հաստատեց կոմունիստական պարտիայի իմաստուն և հեռատես քաղաքականությունը, հատկապես ժողովրդական տնտեսության պարտիական ղեկավարությունը կատարելագործելու ուղղությամբ իրականացված միջոցառումների տեղին լինելը: Արտադրական սկզբունքով պարտիական կոմիտեների ստեղծումը նրանց հնարավորություն տվեց ավելի խոր ու կոնկրետ կերպով զբաղվելու էկոնոմիկայով:

ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան պլենումից հետո իրականացված կարևորագույն ձեռնարկումների կոմպլեքսում առանձնահատուկ կարևորություն ունի լենինյան սկզբունքների հիման վրա պարտիական-պետական վերահսկողության կազմակերպումը մեզանում: Մեր ռեսպուբլիկայում ստեղծված են պարտիական-պետական վերահսկողության 35 կոմիտեներ: Դրանք գործում են մեր բոլոր քաղաքներում, արդյունաբերական քաղաքային շրջաններում և կոլտնտեսային-սովխոզային արտադրական վարչությունների տերիտորիաներում:

Պարտիական-պետական վերահսկողության օրգաններն են ուղարկվել ռեսպուբլիկայի էկոնոմիկայի քաջատեղյակ պարտիական ու սովետական փորձված աշխատողներ: Այդ կոմիտեների մեջ մտնում են հասարակական կազմակերպությունների ներկայացուցիչներ, արդյունաբերության և գյուղատնտեսության առաջավորներ, գիտության, կուլտուրայի, արվեստի ու առողջապահության գործիչներ, և նրանց օժանդակող մոտ 25 հազար աշխատավորներ:

Պարտիական-պետական վերահսկողության օրգանների առաջին իսկ քայլերը խիստ արդյունավետ եղան: Նրանց կատարած ստուգումները բացահայտեցին ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառներում տեղ գտած էական մի շարք թերություններ: Դա հնարավորություն ընձեռեց առաջիկայում կանխել նման պակասությունները:

Պարտիական-պետական վերահսկողության նոր օրգանների ստեղծումը ավելի է բարձրացնում բոլոր պարտիական կոմիտեների, սկզբնական պարտիական կազմակերպությունների, սովետական և տնտեսական օրգանների պատասխանատվությունը պարտիայի ու կառավարության որոշումների կատարման ստուգման գործում:

Ընթացիկ տարում ռեսպուբլիկայի աշխատավորների առջև ծառացած են խոշոր խնդիրներ: Արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկումը անցյալ տարվա համեմատությամբ ավելանալու է 10,5 տոկոսով, այդ թվում գունավոր մետալուրգիայինը՝ 22 տոկոսով, քիմիական արդյունաբերությանը՝ 39 տոկոսով: Այս տարի կգործարկվեն բնական գազից ացետիլեն արտադրող ագրեգատը՝ Կիրովի անվան գործարանում, Սևանի ապակեթելի գործարանի առաջին հերթը, Իջևանի գորգի կոմբինատը և այլ ձեռնարկություններ:

Բարդ խնդիրներ են կանգնած նաև մեր աշխատավորների առջև տեխնիկական պրոգրեսի և արտադրանքի նոր տեսակների յուրացման գծով: Պլանի համաձայն, ռեսպուբլիկայի ծանր արդյունաբերությունը պետք է յուրացնի արտադրանքի 60 նոր տեսակներ, իսկ թեթև արդյունաբերությունը՝ ժողովրդական սպառման ավելի քան 700 նոր տեսակի ապրանքներ: Առանձնահատուկ ուշադրություն է հատկացվելու արդյունաբերության, գիտության ու տեխնիկայի բոլորովին նոր ճյուղերի զարգացմանը:



Հայաստանի արդյունաբերության աշխատողների պատվի խնդիրն է՝ աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 4 տոկոսով, իսկ արտադրանքի մեկ ռուբլու ծախսումները նվազեցնել 1,3 տոկոսով: Կատարելով արդյունաբերության այս տարվա կարևորագույն խնդիրը, մենք կկարողանանք պլանը գերակատարել առնվազն 3,5 տոկոսով և տարվա վերջին գերազանցել ռեսպուբլիկայի համար յոթնամյա պլանով նախատեսված մակարդակը:

Շինարարության արագացմամբ մոտակա ժամանակներս կգործարկվեն բազմաթիվ նոր օբյեկտներ: Միայն արդյունաբերության գծով նախատեսված է շահագործման հանձնել 75 ձեռնարկություններ և խոշոր ցեխեր: Այս տարի շահագործման կհանձնվի 371 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, ինչպես նաև 18 հազար 312 աշակերտական տեղ ունեցող դպրոցներ, գիշերօթիկ դպրոցներ, 3255 տեղ ունեցող նախադպրոցական հիմնարկներ, ինչպես նաև հիվանդանոցներ և կուլտուր-կենցաղային այլ օբյեկտներ:

Վերին աստիճանի լուրջ խնդիրներ են ծառացած նաև ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողների առջև: Չնայած կլիմայական անբարենպաստ պայմաններին ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողներն ընթացիկ տարվա հինգ ամիսներին որոշ հաջողություններ ձեռք բերին անասունների գլխաքանակի ավելացման, անասնաբուծության արտադրանքի աճման և պետությանը գյուղատնտեսական մթերքներ վաճառելու գործում: Առ 1-ը հունիսի, անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, ռեսպուբլիկայի խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն աճել է 5, այդ թվում կովերինը՝ 3, ոչխարներինը՝ 7, մսի արտադրությունը՝ 11, կաթինը՝ 9 և ձվինը՝ 6 տոկոսով:



Պարտիական կազմակերպությունների հրամայական խնդիրն է՝ մասսաների գերազանց կազմակերպվածության միջոցով ապահովել գյուղատնտեսության զարգացման պլանների կատարումը:

***

ՊԱՐՏԻԱՅԻ պատմական երկրորդ համագումարի 60-ամյակը ՍՍՌՄ ժողովուրդները նշում են ջերմ խանդավառությամբ և այն խոր ինքնագիտակցությամբ, որ համաշխարհային պատմության երթում վեց տասնամյակ առաջ ձևավորված բոլշևիկյան-լենինյան հոսանքը վաղուց դարձել է առաջավոր մարդկության մեծ առաջընթացի գլխավոր ուժը:

Կանգնելով ռուսաստանյան ժողովուրդների ռևոլյուցիոն շարժման գլուխ, Լենինի կոփած կոմունիստների պարտիան միշտ բարձր է պահել մարքսիզմ-լենինիզմի անաղարտ դրոշը, հետևողական պայքար մղելով բոլոր այն ուժերի և հոսանքների դեմ, որոնք երբևէ ծառացել են սոցիալիզմի հաղթարշավի ճանապարհին: Այդ իսկ պայքարում մեր պարտիան հավատարիմ մեծ Լենինի

ավանդներին, հետևողականորեն կռել և կատարելագործել է հաղթության իր անփոխարինելի զենքը՝ մարքսիզմ-լենինիզմը:

Հիրավի, որպիսի՜ ստեղծագործական եռանդ ծավալեցին ՍՄԿՊ-ն և նրա լենինյան Կենտկոմը անցած տասը տարիների ընթացքում։ XX և XXII համագումարների, Կենտկոմի պլենումների որոշումներում և Ն. Ս. Խրուշչովի աշխատություններում հանգամանորեն արծարծվել և տեսական խոր լուծում են գտել համաշխարհային նշանակություն ունեցող սոցիալ-քաղաքական, տնտեսական և թեորիական բազմաթիվ պրոբլեմներ։ Ամբողջ աշխարհի առաջավոր մարդկությունը լարված ուշադրությամբ և անհատնում հետաքրքրությամբ հետևում է մեր երկրում կառուցվող կոմունիզմի յուրաքանչյուր քայլին։ Հարյուր-միլիոնավոր աշխատավորներ երկրագնդի տարբեր մասերում լավ գիտակցում են, որ սովետական երկրի յուրաքանչյուր օրը կրկին ու կրկին հաստատում է այն տակտիկայի ու ծրագրի ճշմարտացիությունը, որի համար անձնազոհ պայքարում էին Լենինի հետևորդները դեռևս 60 տարի առաջ։

Այժմ, հանդիսավոր այս օրերին, լենինյան անհաղթ պարտիայի հայ մարտիկներն առանձին հպարտությամբ են հիշում այն պատմական իրողությունը, երբ մեծ Լենինի դրոշի ներքո պրոլետարիատի ազատագրական մարտերի առաջին խրամատներում, Անդրկովկասի անվեհեր բոլշևիկների հետ ուս-ուսի, մարտնչում էին՝ Ս. Շահումյանը, Ի. Լալայանցը, Բ. Կնունյանցը, Ս. Սպանդարյանը և ուրիշ շատ երևելի բոլշևիկներ։ Ընթանալով ՍՍՌՄ ժողովուրդների համերաշխ ընտանիքում դեպի կոմունիզմ, Հայաստանի աշխատավորներն այս նշանավոր օրը կդարձնեն մի հզոր խթան, ավելի արագ առաջ մղելու յոթնամյակի պլանների կատարման գործը, առավել մեծ վարպետությամբ օգտագործելու ժողովրդի ընդերքում եղած ներթաքույն ստեղծագործ մեծ ուժերը, էլ ավելի սերտ դարձնելու հայ ժողովրդի ինտերնացիոնալ կապերը եղբայրական մյուս ժողովուրդների հետ։

ՌՍԴԲՊ երկրորդ համագումարից մինչև կոմունիզմի վսեմ պալատի կառուցման այս հրճվալի օրերն անցել է ընդամենը 60 տարի։ Եվ այդ կարճ ժամանակաընթացքում մեր երկիրը կտրել է հսկայական ճանապարհ՝ խավարից դեպի լույսը, հետամնացությունից դեպի ամենակատարյալ հասարակական ֆորմացիան, կանգնելով լիակատար կոմունիզմի և անսահման կոսմոսի նվաճման շեմին, դառնալով ողջ մարդկության ազատագրական պայքարի անմար փարոսը։

# ԱՄԵՆԱԺՈՂՈՎՐԴԱԿԱՆԸ

## Մ. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ

ՍՈՎԵՏԱԿԱՆ ժողովուրդը կոմունիստական պարտիան համարում է իր սիրելի ու հարազատ պարտիան, իր ուսուցիչն ու առաջնորդը, որովհետև հենց նրա ղեկավարությամբ է ինքը հասել համաշխարհային-պատմական նշանակություն ունեցող մեծագույն հաղթանակների՝ ցարիզմի ու կապիտալիզմի տապալման, սոցիալիզմի կառուցման և կոմունիզմի ծավալուն շինարարության։

Իր գործունեության հենց սկզբից Վ. Ի. Լենինի հիմնած ու ղեկավարած կոմունիստական պարտիան արտահայտել է աշխատավոր մասսաների արմատական շահերը և անդուլ պայքար ծավալել նրանց ազատ ու երջանիկ կյանքի ստեղծման համար։ Դուրս գալով ժողովրդի ծոցից՝ կոմունիստական պարտիան միշտ գնացել է ժողովրդի հետ և պայքարել նրա ազատության ու բարեկեցության համար։ Ինչպես ընդգծված է ՍՄԿՊ Ծրագրում, պարտիայի գործունեության նշանաբանն է. «Ամեն ինչ հանուն մարդու, մարդու բարօրության համար»: Հավատարիմ այդ մեծ սկզբունքին կոմունիստական պարտիան անցել է պայքարի ու հաղթանակների փառապանծ ուղի և ակնառու կերպով ցույց տվել, որ նա ամենահումանիստական և ամենաժողովրդական պարտիան է:

Սովետական ժողովուրդը՝ կոմունիստական պարտիայի իմաստուն ղեկավարությամբ, ներկայումս կառուցում է ամենաիդեալական հասարակարգը՝ կոմունիզմը, որի պատմական միսիան է աշխարհի բոլոր ժողովուրդներին տալ Խաղաղություն, Աշխատանք, Ազատություն, Հավասարություն, Եղբայրություն և Երջանկություն:

Կոմունիստական պարտիան ժողովրդի ուժի և իմաստության մարմնացումն է, նրա ղեկավարությունը սովետական հասարակության առաջխաղացման գլխավոր նախապայմանն է։ Պարտիայի ու ժողովրդի անխախտ միասնությունը կոմունիզմի կառուցման երաշխիքն է։ Պարտիան գոյություն ունի ժողովրդի համար և նրան ծառայելու մեջ է տեսնում իր գործունեության իմաստը:

ՄԱՐՔՍԻԶՄ-լենինիզմն ուսուցանում է, իսկ կյանքը հաստատում, որ պատմության իսկական կերտողը ժողովուրդն է։ Այս աքսիոմատիկ ճշմարտությունը տարածվում է բոլոր ժամանակների վրա, բայց չպետք է մոռանալ, որ որքան բարձր է զարգացման մակարդակը և որքան դեմոկրատական են տիրող կարգերը, այնքան ավելի ակտիվ են գործում ժողովրդական մասսաները և այնքան ուժեղ է նրանց ազդեցությունը հասարակական կյանքի վրա, քաղաքականության մեջ, գիտության ու կուլտուրայի ասպարեզում։

Շահագործողական կարգերում ժողովրդական մասսաների ազդեցությունը քաղաքականության վրա հիմնականում արտահայտվում է դասակարգային պայքարով։ Որքան սուր է այդ պայքարը, այնքան շահագործողները հարկադրված են ավելի շատ հաշվի նստել նրանց հետ։ Իրենց ազատագրության համար պայքարել են ստրուկները, ճորտերը, բայց, հատկապես, պետք է նշել պրոլետարիատի դերը, պրոլետարիատ, որը դասակարգային պայքարը հասցրեց ամենաբարձր աստիճանի՝ սոցիալիստական ռևոլյուցիայի, որի հաղթանակից հետո աշխատավոր մասսաները դառնում են իրենց երկրի տերն ու տնօրենը, որոշում և ուղղություն տալիս հասարակության քաղաքական, տնտեսական ու կուլտուրական կյանքին։ Ինչպես նշել է Լենինը, կապիտալիզմի խորտակման և սոցիալիզմի հաղթանակի դարաշրջանում «պատմությունն ինքնուրույն կերպով կերտում են միլիոնավոր և տասնյակ միլիոնավոր մարդիկ»։

Դեռևս Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը հիմնավորեցին պրոլետարիատի համաշխարհային-պատմական դերը՝ որպես կապիտալիզմի գերեզմանափորի և կոմունիզմ կառուցողի։ Նրանք ցույց տվին, որ պրոլետարիատը հասարակության ամենառևոլյուցիոն դասակարգն է և կոչված է ազատագրելու ո՛չ միայն իրեն, այլև ամբողջ աշխատավոր մարդկությանը։ Պրոլետարիատի ուժը նրա կազմակերպվածության մեջ է, իսկ կազմակերպության բարձրագույն ձևը պարտիան է։ Հենց այդպիսին է կոմունիստական պարտիան, որը կոչված է գլխավորելու բանվոր-դասակարգի ու բոլոր աշխատավորների պայքարը՝ կործանելու հին, շահագործողական կարգերը և կառուցելու նոր, կոմունիստական հասարակարգ. «Դաստիարակելով բանվորական պարտիան,— գրել է Վ. Ի. Լենինը,— մարքսիզմը դաստիարակում է պրոլետարիատի ավանգարդը, որն ընդունակ է գրավելու իշխանությունը և ամբողջ ժողովրդին դեպի սոցիալիզմ առաջնորդելու, կազմակերպելու և ուղղություն տալու նոր հասարակարգին, լինելու բոլոր աշխատավորների ու շահագործվողների ուսուցիչը, ղեկավարը, առաջնորդը՝ նրանց հասարակական կյանքն առանց բուրժուազիայի և բուրժուազիայի դեմ կազմակերպելու գործում» (Երկեր, հ. 25, էջ 521)։

Կոմունիստական պարտիան բանվոր դասակարգի ավանգարդն է, նրա գիտակից ու կազմակերպված ջոկատը։ Իրենց նպատակներով ու խնդիրներով կոմունիստները չեն տարբերվում բանվորական մնացած մասսաներից, բայց աչքի են ընկնում քաղաքական կոփվածությամբ, տեսական բարձր պատրաստականությամբ և կազմակերպական մեծ ընդունակություններով։ Դրա շնորհիվ նրանք գլխավորում են ո՛չ միայն պրոլետարների, այլև բոլոր աշխատավորների ազատագրական պայքարը։ Բնորոշ է, որ մեր պարտիան իր առաջին իսկ ծրագրում ազդարարեց. «Բանվոր դասակարգի պարտիան՝ սոցիալ-դեմոկրատիան, իր շարքերն է կոչում աշխատավոր ու շահագործվող բնակչության բոլոր խավերին, որչափով որ նրանք պրոլետարիատի տեսակետին են անցնում» («ՍՄԿՊ-ի համագումարների, կոնֆերենցիաների և Կենտկոմի պլենումների բանաձևերում ու որոշումներում», I մաս, Երևան, 1954, էջ 44)։

Վ. Ի. Լենինը XIX դարի վերջից Ռուսաստանում տիտանական պայքար ծավալեց աշխատավոր ժողովրդի կենսական շահերն արտահայտող պրոլետարական պարտիայի ստեղծման համար։ Ընդգծելով կոմունիստական պարտիայի վճռական դերը և տարադարձելով անտիկ աշխարհի մեծագույն մաթեմատիկ ու մեխանիկ Արքիմեդի հռչակավոր խոսքերը՝ նա ասաց. «Տվեք մեզ ռևոլյուցիոներների կազմակերպություն, և մենք շուռ կտանք Ռուսաստա-



նը»։ Չնայած գիտության նկատմամբ ունեցած խոր հավատին, մեծ հունացին չգտավ և չէր կարող գտնել հենակետ, որպեսզի շրջեր երկիրը, բայց մեծահանճար Լենինն ինքն ստեղծեց ռևոլյուցիոներների կազմակերպություն՝ բոլշևիկյան պարտիա, որն, իրոք, շուռ տվեց Ռուսաստանը՝ այն ցարական-բուրժուականից դարձնելով սոցիալիստական-կոմունիստական։

Կոմունիստական պարտիան հին աշխարհի ռևոլյուցիոն վերափոխման պարտիա է։ Պատմական այդ մեծագույն խնդիրը կատարելու համար նա ո՛չ միայն մշակեց աշխատավոր ժողովրդի ազատագրման հստակ ծրագիր, որպիսին հանդիսացավ ՌՍԴԲՊ II համագումարում ընդունված պարտիայի առաջին Ծրագիրը, այլև երկարատև ու համառ պայքարով կազմակերպեց բանվորներին ու գյուղացիներին՝ այդ ծրագիրն իրականացնելու համար։ Բոլշևիկներն իրենց դրսևորում էին որպես ժողովրդի հարազատ զավակներ, ռևոլյուցիոն պայքարի խիզախ ասպետներ. ոչ բանտերն ու աքսորը, ոչ մահապատիժն ու կախաղանը չէին կարող ընկճել կոմունիստներին՝ հանուն ժողովրդի ազատության նրանց սրբազան պայքարում։

Բոլշևիկներն իրենց բեղմնավոր գործունեությամբ, գաղափարախոսությամբ, ծրագրով, քաղաքականությամբ, անձնական օրինակով համախմբում էին ժողովրդական լայն մասսաներին և դաստիարակում ռևոլյուցիոն պայքարի ոգով, առաջնորդում նրանց դեպի վճռական գոտեմարտ տիրող շահագործողական կարգերի դեմ։

Նախահոկտեմբերյան շրջանում Ռուսաստանում կային միապետական, բուրժուական ու մանրբուրժուական բազմաթիվ պարտիաներ (սևհարյուրակայիններ, օկտյաբրիստներ, կադետներ, մենշևիկներ, էսեռներ, անարխիստներ և այլն), որոնցից յուրաքանչյուրը ձգտում էր զանազան եղանակներով ու միջոցներով և, ամենից առաջ, խաբեբայությամբ ու կեղծ դեմոկրատիզմով իր կողմը գրավել ժողովրդին, որպեսզի նրան ծառայեցնի իր նպատակներին, ավելի ուժգնորեն կեղեքի ու ճնշի նրան։ Այդպես, կադետական պարտիան իրեն կոչում էր նաև «ժողովրդի ազատության պարտիա», բայց այդ սուտ փարիսեցիություն էր, որովհետև կադետները ռուսական բուրժուազիայի գաղափարախոսներ էին Վ. Ի. Լենինի դիպուկ արտահայտությամբ, «ռևոլյուցիայի գերեզմանային որդերը»։ Այդպես է դրությունը նաև ժամանակակից կապիտալիստական աշխարհում։ Օրինակ, ԱՄՆ-ում գոյություն ունեցող երկու խոշոր բուրժուական պարտիաները կոչվում են դեմոկրատական ու ռեսպուբլիկական և հաճախ իրար փոխարինում են որպես կառավարող պարտիաներ, հանդես գալիս «ժողովրդասիրական» պլատֆորմներով։ Բայց դրանցից և ոչ մեկն իրականում չի պաշտպանում ժողովրդի շահերը։ Նկատի ունենալով հենց այդ վիճակը՝ ամերիկյան նշանավոր ժուռնալիստ Պիրսոնը գրում է. «Այսօր շատ մարդիկ կգրեն Լինկոլնի և նրա հռչակած նպատակի մասին՝ ժողովրդի կառավարած, ժողովրդի կամքով և ժողովրդի համար... Եթե Լինկոլնը այսօր կենդանի լիներ և հեգնաբար տրամադրված, նա կարող էր իր ուղերձի մի տողը այսպես վերափոխել՝ «հարուստների կառավարում, հարուստների կամքով և հարուստների համար»։

Հայտնի է, որ ամեն մի հին հասարակական-տնտեսական ֆորմացիա իր տեղը զիջում է նոր ֆորմացիայի, սոցիալական ռևոլյուցիայի միջոցով։ Ահա թե ինչու Կ. Մարքսն ասում էր, որ «ռևոլյուցիաները պատմության շոգեքարշներն են», իսկ չէ որ սոցիալական ռևոլյուցիաների հիմնական շարժիչ ուժը

ժողովրդական մասսաներն են։ Ռևոլյուցիան չի կարելի կատարել պատվերով, այն պետք է լինի հասարակության օբյեկտիվ զարգացման օրինաչափ արդյունք։ Բայց այդ չի նշանակում, որ ամեն ինչ պետք է թողնել ինքնահոսի և մատնվել պասսիվության։

Մարքսիզմ-լենինիզմը հասարակության զարգացման օբյեկտիվ պայմանների հաշվառումը միահյուսում է ժողովրդական մասսաների ռևոլյուցիոն ակտիվության ճանաչման հետ, այսինքն՝ զուգակցում է ռևոլյուցիայի օբյեկտիվ և սուբյեկտիվ գործոնները։ 1917 թվականին հաղթանակեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիան։ Այդ հաղթանակի կազմակերպիչն ու ոգեշնչողը Վ. Ի. Լենինի ղեկավարած կոմունիստական պարտիան էր, որ կարողացավ մի ռևոլյուցիոն հեղեղի մեջ միավորել բազմապիսի շարժումներ և այն հասցնել հաղթանակի՝ Սովետական իշխանության հաստատման։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակի գրավականներից մեկն էլ այն էր, որ բոլշևիկների ղեկավարությամբ բանվորները, աշխատավորներն ստեղծել էին ռևոլյուցիոն պայքարի և իշխանության իրենց օրգանները՝ սովետները, որոնք դարձան նոր տիպի պետության՝ բանվորա-գյուղացիական պետության օրգաններ։ Աշխատավոր ժողովուրդը գիտեր, թե ինչի համար է պայքարում և կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ նա ստեղծեց ու ամրապնդեց սովետների ռեսպուբլիկան։ Վ. Ի. Լենինը սովետական իշխանության հաստատումից հետո ասաց. «Ընկեր-աշխատավորնե՛ր։ Հիշեցեք, որ այժմ **դուք ինքներդ եք** կառավարում պետությունը։ Ոչ-ոք ձեզ չի օգնի, եթե դուք ինքներդ չմիանաք և պետության **բոլոր գործերը ձեր** ձեռքը չվերցնեք։ Ձեր սովետներն այսուհետև պետական իշխանության օրգաններ են, լիազոր, վճռող օրգաններ» (Երկեր, հ. 26, էջ 359—360)։

ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ սոցիալիստական մեծ ռևոլյուցիան արմատական շրջադարձ էր մարդկության պատմության մեջ։ Առաջին անգամ աշխատավորները Ռուսաստանում դարձան բոլոր նյութական ու հոգևոր բարիքների տերը և բարձրացան երկիր կառավարողների աստիճան։ Փոխվեց նաև կոմունիստական պարտիայի դրությունը. այն դարձավ աշխարհում առաջին սոցիալիստական պետության **կառավարող** պարտիան։

Նոր իրադրության մեջ ավելի են մեծանում պարտիայի դերն ու նշանակությունը հասարակության կյանքում։ Նրանցից պահանջվում էր մշակել այնպիսի ծրագիր ու քաղաքականություն, որը լիովին համապատասխաներ աշխատավոր ժողովրդի շահերին և համեմատաբար կարճ ժամանակամիջոցում հասցներ սոցիալիզմի կառուցման։ Այդ մեծագույն խնդրի լուծումը կապված էր բազմապիսի դժվարությունների հետ։ Նախ՝ պարտիան գնում էր պատմության մեջ դեռևս չհետազոտված ճանապարհով, երկրորդ՝ նոր հասարակության կառուցումը պետք է սկսվեր տնտեսապես հետամնաց ու քայքայված երկրում, երրորդ՝ նորածնունդ սովետական պետությունը գտնվում էր կապիտալիստական շրջապատման մեջ, և մեր երկրի թշնամիները անում էին ամեն ինչ, որպեսզի վերականգնեն նախկին շահագործողական կարգերը։

Կոմունիստական պարտիան՝ հանճարեղ Լենինի ղեկավարությամբ ստեղծեց ու ամրապնդեց սովետական պետությունը, երկիրը դուրս բերեց պատերազմից և անմիջապես ձեռնամուխ եղավ սոցիալիստական շինարարության։



Լենինը արդեն 1918 թվականի ապրիլին՝ Սովետական իշխանության ներքա-
կան խնդիրները հոչակավոր աշխատության մեջ մշակեց մեր երկրում սոցիա-
լիստական էկոնոմիկայի հիմքերի կառուցման պլանը։ Լենինը շեշտում էր,
որ պրոլետարիատի դիկտատուրայի պայմաններում էկոնոմիկան գերակշռող
նշանակություն է ստանում քաղաքականության նկատմամբ և կոմունիստների
առաջնահերթ խնդիրն է զբաղվել տնտեսական շինարարության հարցերով։
«Սրանից հետո ամենալավ քաղաքականությունն է՝ որքան կարելի է քիչ քա-
ղաքականություն։ Առաջ քաշեցեք ավելի շատ ինժեներներ և ագրոնոմներ, սո-
վորեցեք նրանցից, ստուգեցեք նրանց աշխատանքը, համագումարներն ու
խորհրդակցությունները դարձրեք ոչ թե միտինգներ սարքելու օրգաններ, այլ
տնտեսական հաջողությունների ստուգման օրգաններ, որտեղ մենք իսկապես
կարողանայինք տնտեսական շինարարություն սովորել» (Երկեր, հ. 31,
էջ 651)։

Սակայն օտարերկրյա իմպերիալիստների և ներքին կոնտրռևոլյուցիայի
հանցանքով սովետական ժողովուրդը 1918—20 թվականներին կենաց ու մա-
հու պայքար է մղում իր անհամար թշնամիների դեմ։ Նրան կազմակերպում
ու ոգեշնչում էր կոմունիստական պարտիան։ Կոմունիստները գտնվում էին
ռազմաճակատների ամենածանր հատվածներում և անձնուրաց պայքարով
դարբնում մեր հաղթանակը։

Քաղաքացիական պատերազմի հաղթական ավարտից հետո սովետական
ժողովուրդը՝ կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ ձեռնամուխ եղավ
խաղաղ շինարարության աշխատանքին։ Նրա ուղին լուսավորված էր պարտիայի
երկրորդ Ծրագրով, ՍՍՌՄ-ում սոցիալիզմի կառուցման լենինյան պլանով,
որը նախատեսում էր իրականացնել երկրի ինդուստրացում, գյուղա-
տնտեսության սոցիալիստական վերակառուցում և կուլտուրական ռևոլյուցիա։
Դա իսկական ժողովրդական ծրագիր էր, որ ժողովրդի իսկ ուժերով կենսա-
գործվեց և մեր երկիրը պատմական կարճ ժամանակամիջոցում թռիչք
կատարեց հետամնացությունից դեպի քաղաքակրթության ժամանակակից
բարձունքները։ Սոցիալիզմի կառուցումը մեկընդմիշտ վերջ տվեց բուրժուա-
կան այն առասպելներին, թե մարքսիզմ-լենինիզմի գաղափարները երբեք չեն
կարող իրագործվել, իսկ աշխատավորներն էլ չեն կարող երկիր կառավարել։
Կյանքը ո՛չ միայն հերքեց այդ հեքիաթները, այլև նորից հաստատեց այն ճըշ-
մարտությունը, որ ամենաժողովրդական գաղափարախոսությունը կոմունիս-
տական գաղափարախոսությունն է, որը տիրապետելով միլիոնավոր մասսա-
ներին դառնում է անհաղթահարելի նյութական ուժ, վերափոխելով աշխարհն
ըստ աշխատավոր ժողովրդի մտքի ու կամքի։

Սովետական պետության համար մեծագույն փորձություն էր Հայրենա-
կան մեծ պատերազմը։ Սակայն այդ ծանր ժամանակներում ևս չերերաց մեր
բազմազգ ժողովուրդը, որովհետև նրան ղեկավարում էր կոմունիստական
պարտիան։ Պատերազմի ահեղ օրերին, երբ մահվան վտանգն էր կախված
մարդկանց գլխին, ավելի մեծացավ պարտիայի ու ժողովրդի միասնությունը։
Բազմահազար մարդիկ գնում էին մարտի՝ ասելով կամ գրելով՝ «Եթե սպան-
վեմ, խնդրում եմ ինձ համարեք կոմունիստ»։ Միայն ժողովրդական մեծ սի-
րով ու վստահությամբ կարելի է բացատրել այն, որ պատերազմի ժամանակ
մեր պարտիայի շարքերը համալրեցին մոտ երկու միլիոն մարդ։

Վրա հասավ բաղձալի ժամը. վերջացավ պատերազմը, եկան խաղաղ շի-

նարարության օրերը: Սովետական ժողովուրդը՝ կոմունիստական պարտիայի առաջնորդությամբ արագությամբ բուժեց պատերազմի վերքերը, վերականգնեց ժողովրդական տնտեսությունը և շարունակեց առաջխաղացումը սոցիալիզմից դեպի կոմունիզմ:

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո միջազգային արենայում արմատապես փոխվեց սոցիալիզմի ու կապիտալիզմի ուժերի հարաբերակցությունը հօգուտ սոցիալիզմի: Իմպերիալիզմի շղթայից պոկվեցին նոր երկրներ և ձևավորվեց սոցիալիզմի համաշխարհային սիստեմը, որն այժմ միավորում է ավելի քան մեկ միլիարդ բնակչություն և հաջողությամբ նոր հասարակություն է կառուցում: Այդ սիստեմի ավանգարդում է գտնվում Սովետական Միությունը, որը հասել է սոցիալիզմի լիակատար ու վերջնական հաղթանակին և թևակոխել կոմունիզմի ծավալուն շինարարության ժամանակաշրջանը: Դրան համապատասխան լուրջ փոփոխություններ տեղի ունեցան նաև սովետական պետության ու կոմունիստական պարտիայի կյանքում:

Իրերի այդպիսի վիճակին լիովին համապատասխանում է այն, որ կոմունիստական պարտիան, ստեղծվելով որպես բանվոր դասակարգի պարտիա, այժմ դարձել է ամբողջ սովետական ժողովրդի պարտիա: Դա, իհարկե, բոլորովին էլ չի նշանակում, թե կոմունիստական պարտիան հրաժարվել է բանվոր դասակարգի աշխարհայեցողությունից կամ վերածվել է ապադասակարգային, վերդասակարգային կազմակերպության: Միասնական սովետական հասարակության անսահման սերն ու վստահությունը վայելող կոմունիստական պարտիա,— ահա մեր պարտիայի ժողովրդական բնույթի ու էության բուն իմաստն ու նպատակը:

Ներկայումս կոմունիզմի կառուցումը դարձել է շուրջ 225 միլիոնանոց սովետական ժողովրդի գործնական խնդիրը և նրա արագ ու հաջող լուծումն ամենից առաջ կախված է կոմունիստական պարտիայի հմուտ ղեկավարությունից: Մեծագույն խնդիրներով լի նոր ժամանակաշրջանը պահանջում է ընդլայնել պարտիայի ղեկավար ազդեցությունը հասարակական կյանքի բոլոր կողմերի վրա: Ահա թե ինչու ՍՄԿՊ Ծրագրում ասված է. «Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը բնութագրվում է կոմունիստական պարտիայի, որպես սովետական հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժի, դերի ու նշանակության հետագա աճմամբ» («ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը», էջ 560):

Կատարելով այդ մեծ միսիան, լենինյան պարտիան մշակեց կոմունիզմի կառուցման հոյակապ ծրագիրը: Այն պահանջում է լուծել միմյանց հետ շաղկապված երեք հիմնական խնդիրներ. ստեղծել կոմունիզմի նյութատեխնիկական բազա, ձևավորել կոմունիստական հասարակական հարաբերություններ և դաստիարակել կոմունիստական հասարակության քաղաքացիներ: Դրանց իրականացումը կստեղծի նյութական ու հոգևոր բարիքների կատարյալ առատություն և կապահովի հասարակության բոլոր անդամների բազմակողմանի զարգացումը:

Ն. Ս. Խրուշչովը 1963 թվականի փետրվարի 27-ին՝ Մոսկվայի Կալինինի ընտրական օկրուգի ընտրողների ժողովում արտասանած իր ճառում ասաց. «Կոմունիզմը կառուցվում է ամենադեմոկրատական միջոցներով: Ուստի, մաս-



ցանների ակտիվության և ստեղծարար նախաձեռնության համակողմանի զար-
գացումը սոցիալիստական պետության հաջողությունների հուսալի երաշխիքն
է: Դրա հետ միասին պարզ է նաև մի այլ բան՝ որքան մեր կյանքում զարգա-
նան հասարակական հիմունքները, այնքան բարձր պետք է լինի նաև պար-
տիական-պետական ղեկավարման մակարդակը, այնքան ճկուն, օպերատիվ
պետք է գործեն պարտիական ու պետական օրգանները: Դա է մեր զարգաց-
ման դիալեկտիկան: Չէ՞ որ կոմունիզմը մերժում է ինքնահոսը. կոմունիզմ չի
կարելի կառուցել առանց խելացի պլանավորման, առանց գիտական կանխա-
տեսության, առանց հասարակական կյանքի բոլոր ոլորտներում պարտիական-
պետական ղեկավարությունը և աշխատավոր մասսաների ակտիվությունն
ուժեղացնելու:

Սովետական հասարակության առաջընթացն արագացնելու համար կոմու-
նիստական պարտիան վերջին տասնամյակում անցկացրեց մի շարք, բախ-
տորոշ իմաստով, ռևոլյուցիոն միջոցառումներ, որոնք լայնորեն արձակեցին ժո-
ղովրդի ուժերը և ապահովեցին մեր տնտեսության ու կուլտուրայի աննախըն-
թաց վերելքը: Ամենից առաջ պետք է նշել Ստալինի անձի պաշտամունքի,
նրա վնասակար հետևանքների վերացումը և պարտիական ու պետական շի-
նարարության լենինյան նորմերի վերականգնումն ու հետագա զարգացումը:
Կոմունիստական պարտիան ո՛չ միայն հիմնովին դատապարտեց և լիկվի-
դացրեց անհատի պաշտամունքն ու նրա արատավոր հետևանքները, այլև
ստեղծեց բոլոր պայմաններն ու երաշխիքները՝ նման երևույթները մեկընդ-
միշտ բացառելու համար: Միայն այդպիսի իրադրության մեջ կարող է հորդա-
ռատ աղբյուրի նման հոսել պարտիական մասսաների և ողջ ժողովրդի ստեղ-
ծագործական ավյունը, բազմապատկվել նրանց ուժերը:

Պարտիայի կյանքում վերականգնվեցին, ամրապնդվեցին ու զարգացվե-
ցին լենինյան նորմերը, կոլեկտիվ ղեկավարության սկզբունքը: Պարտիայի
կազմակերպական կառուցվածքի և գործունեության անխախտ հիմքը դեմո-
կրատական ցենտրալիզմն է, որի կիրառումը ամբողջ պարտիային սկսած
կենտկոմից մինչև սկզբնական կազմակերպությունները դարձնում է մշտապես
գործող կենդանի օրգանիզմ, որտեղ բոլորը պատասխանատու են մեկի, մեկը՝
բոլորի համար:

Պարտիական ղեկավարության բարձրագույն սկզբունքն է ղեկավարման
կոլեկտիվությունը, որը հանդիսանում է նրա նորմալ գործունեության նախա-
պայմանը: Լենինը խիստ բարձր էր գնահատում կոլեկտիվի կարծիքը և երբեք
չէր խախտում նրա ընդունած որոշումը և նույնիսկ ամենափոքր հարցում չէր
ուզում օրենքը խախտել և գտնում էր, որ միայն կոլեկտիվ օրգանը կարող է
օրենքը փոխել:

Պարտիան ամրապնդեց սովետական օրինականությունը և անշեղորեն
ընդլայնում է սոցիալիստական դեմոկրատիան: Դրա մասին են վկայում վեր-
ջին շրջանում սովետների, արհմիությունների և հասարակական մասսայական
այլ կազմակերպությունների դերի ուժեղացումը, նրանց ֆունկցիաների ընդ-
լայնումը, պարտիական-պետական վերահսկողության լենինյան սիստեմի
վերականգնումն ու հետագա զարգացումը:

Լենինը բազմիցս ընդգծել է, որ մենք ուժեղ ենք ժողովրդի գիտակցու-
թյամբ ու վստահությամբ, և կոմունիստները կարող են կառավարել միայն
այն ժամանակ, երբ ճիշտ են արտահայտում աշխատավորության լայն զանգ-

վածների գիտակցածը։ Պարտիան գործում է միայն ու միայն ճշմարտացի քաղաքականության ու բարոյական հեղինակության հիման վրա և ոչ մի վարչական իրավունք չունի ժողովրդական մասսաների, աշխատավորության ուրիշ կազմակերպությունների նկատմամբ։ Նրա ղեկավարման մեթոդները բացառապես դեմոկրատական են, պարտիան ո՛չ միայն սովորեցնում է մասսաներին, այլև ինքն է սովորում նրանցից։ Ուստի նրան խորթ են վարչարարությունն ու դեկրետավորումը։

Կոմունիստական պարտիայի խորապես ժողովրդական բնույթի մասին է վկայում նաև այն ուսանելի ու օգտակար պրակտիկան, երբ նախքան սովետական հասարակության զարգացման հանգուցային հարցերի շուրջ որոշումներ ընդունելը, դրանց նախագծերը դրվում են համաժողովրդական քննարկման և ապա ընդհանրացվում այդ քննարկման արդյունքները, հաշվի առնվում բոլոր արժեքավոր դիտողություններն ու առաջարկները։ Վ. Ի. Լենինը նշում էր, որ ժողովրդական մասսաներին համոզելը բոլոր խնդիրների լուծման գլխավոր նախապայմանն է, ուստի և այն միշտ պետք է գտնվի պարտիայի ուշադրության կենտրոնում։

Հավատարիմ ժողովրդին ծառայելու մեծ սկզբունքին, պարտիան հատուկ ուշադրություն է նվիրում բանվորա-գյուղացիական դաշինքի ամրապնդմանը, դաշինք, որն իրեն լիովին արդարացրել է ռևոլյուցիոն պայքարում և սոցիալիստական-կոմունիստական շինարարության մեջ։ Հայտնի է, որ Ստալինը լուրջ սխալներ թույլ տվեց նաև գյուղացիության նկատմամբ տարվող քաղաքականության հարցում։ Այդպիսի վերաբերմունքը լիովին հակասում էր լենինյան գծին և գործնականում լուրջ վնաս պատճառում գյուղատնտեսության զարգացմանը։ Կոմունիստական պարտիան վճռականորեն վերացրեց բոլոր սխալները և ավելի ամրապնդեց բանվորա-գյուղացիական դաշինքը, որը մեր պետության դասակարգային հիմքն է և կոմունիզմի կառուցման կարևորագույն գործոնը։

Կոմունիստական պարտիան սոցիալիստական ինտերնացիոնալիզմի մարմնացումն է և անդուլ կերպով պայքարում է ժողովուրդների բարեկամության ամրապնդման համար։ Այստեղ էլ, ազգային հարաբերությունների բնագավառում, հարկ եղավ վերացնել Ստալինի կողմից հատկապես Հայրենական մեծ պատերազմի շրջանում առանձին ազգությունների նկատմամբ թույլ տրված անարդարությունը և ընդարձակել միութենական ռեսպուբլիկաների իրավունքները, ակտիվացնել տեղական նախաձեռնությունը և ընդհանուր առմամբ ավելի հզորացնել բազմազգ սովետական պետությունը։

Կոմունիստական պարտիայի ժողովրդական բնույթն արտացոլվում է նաև նրա կազմով։ Պարտիայի մեջ մտնում են առանց ազգային խտրության բոլոր ժողովուրդների բանվորների, գյուղացիների, ինտելիգենցիայի առաջավոր ներկայացուցիչները։ Այժմ ՍՄԿՊ կազմում կան մեր երկրի ավելի քան հարյուր ազգությունների ու ժողովուրդների 10 միլիոն քաղաքացիներ, որոնք հասարակական կյանքի տարբեր ասպարեզներում աչքի են ընկնում աշխատանքի բարձր ցուցանիշներով։

ՍՄԿՊ-ն անշեղորեն իրականացնում է լենինյան ավանդները։ Նրա քաղաքականությունն ամբողջովին բխում է սովետական հասարակության կենսական շահերից և արդարացիորեն տնօրինում միլիոնավոր մարդկանց բախտը։



ՍԿՍԱԾ 1953 թվականից կոմունիստական պարտիան բացառիկ մեծ ուշադրություն է դարձնում մեր տնտեսության զարգացմանը և դրա հիման վրա՝ ամբողջ ժողովրդի բարեկեցության բարձրացմանը։

Կոմունիստական պարտիան ղեկավարում է մեր սովետական երկրի ողջ էկոնոմիկայի արագ զարգացումը, մշակում նրա կառավարման կատարելագործման ձևեր, մատնանշում աշխատանքի արտադրողականության բարձրացման և տեխնիկական առաջընթացի ուղիներ, կազմակերպում սոցիալիստական մրցություն, որը գնալով դառնում է համաժողովրդական։ Այդ մրցության ժամանակակից բարձր աստիճանն է կոմունիստական աշխատանքի համար ծավալվող շարժումը, որը թեև սկսվել է 1958 թվականի վերջից, բայց արդեն այժմ ընդգրկում է ավելի քան 23 միլիոն մարդ։ Այդ շարժման նշանաբանն է. Աշխատել ու ապրել կոմունիստաբար: Ինչպես նշել է Ն. Ս. Խրուշչովը, կոմունիստական աշխատանքի բրիգադներն ու կոմունիստները մեր հզոր առաջընթացի դրոշակակիրներն են, կոմունիզմ կառուցողների գվարդիան։

ՇՆՈՐՀԻՎ կոմունիստական պարտիայի ղեկավարության և մեր ժողովրդի հերոսական սխրագործության ՍՍՌՄ էկոնոմիկան ու կուլտուրան զարգանում են անշեղ վերելքի ուղիով։ Հաջողությամբ կատարվում ու գերակատարվում են յոթնամյա պլանի առաջադրանքները։ Բավական է հիշատակել, որ յոթնամյակի անցած չորս տարում երկրի արդյունաբերության համախառն արտադրանքն ավելացել է 45 տոկոսով, նախատեսված 39-ի փոխարեն. պլանից դուրս տրվել է 28 միլիարդ ռուբլու արտադրանք։ Այդ նույն ժամանակաշրջանում պարտիան բազմաթիվ միջոցառումներ մշակեց, որոնց կիրառմամբ ապահովվեց գյուղատնտեսության շեշտակի վերելքը։ Դրա անմիջական արդյունքներից մեկը եղավ այն, որ, չնայած կլիմայական անբարենպաստ պայմաններին, 1962 թվականին ՍՍՌՄ-ում հացահատիկի արտադրությունը հասավ 9 միլիարդ փթի, որքան մեր երկիրը դեռ երբեք չէր ստացել։ Այդ բոլորի շնորհիվ անընդհատ աճում է մեր երկրի ազգային եկամուտը և դրա հիման վրա բարձրանում սովետական ժողովրդի նյութական բարեկեցությունը։

Ցուցաբերելով մշտական հոգատարություն ժողովրդի հանդեպ, կոմունիստական պարտիան անընդհատ կատարելագործում է ժողովրդական տնտեսության ղեկավարությունը։ Դրա մի նոր պերճախոս վկայությունն է ՍՄԿՊ Կենտկոմի 1962 թվականի նոյեմբերյան պլենումը, որի որոշումների հիման վրա պարտիական օրգանները՝ վերևից մինչև ներքև վերակառուցվեցին արտադրական սկզբունքով։ Այդ հնարավորություն է տալիս ավելի կոնկրետ ու պլանաչափ կերպով ղեկավարել արդյունաբերությունը, շինարարությունը և գյուղատնտեսությունը, գլխավոր ուշադրությունը դարձնելով արտադրական հարցերի վրա, ակտիվացնել կոմունիստների ու սովետական բոլոր մարդկանց ստեղծագործական նախաձեռնությունը։

Կոմունիստական պարտիայի ժողովրդական բնույթը ցայտուն կերպով դրսևորվում է նաև նրա գաղափարական, կուլտուրական-դաստիարակչական ողջ գործունեության մեջ։ Կոմունիստական գաղափարախոսությունը, մարքսիզմ-լենինիզմը՝ դա գիտություն է բանվոր դասակարգի և բոլոր աշխատավորների ազատագրական պայքարի ու հաղթանակի մասին, նրանց երջանիկ

կյանքի ստեղծման մասին։ Զինված հասարակության զարգացման օրենքների գիտությամբ, պարտիան աշխատավոր ժողովրդին առաջնորդում է հաղթանակից-հաղթանակ։ Եթե հաստոցի բանվորն ու չուլթի գյուղացին չէին կարող համալսարան մտնել ոչ Նիկոլայ ցարի և ոչ էլ ռեսպուբլիկական պրեզիդենտ Վիլսոնի օրոք, ապա սովետական իշխանության պայմաններում նրանք դարձան երկրի տերեր և ստեղծեցին իրենց համալսարանները, սովորեցին և դարձան նոր հասարակության մտավոր աշխատանքի ստեղծագործողները։

Մարդկային հասարակական մտքի բարձրագույն նվաճումն է մարքսիզմ-լենինիզմը, կոմունիստական պարտիայի աշխարհայացքը, որը մեր երկրում դարձել է ամբողջ ժողովրդի գաղափարախոսությունը և լուսավորում է սովետական հասարակության առաջընթացը։ ՍՄԿՊ պատմությունը դա մարքսիզմ-լենինիզմն է գործողության մեջ և հանդիսանում է տեսության ու պրակտիկայի անխախտ միասնության մեծագույն դպրոց։ «Բոլշևիզմը,— գրել է Լենինը,— տակտիկայի տիպար է բոլորի համար»:

Կոմունիստական պարտիան միշտ սուր է պահում իր գաղափարական զենքը և անհաշտ պայքար մղում բուրժուական իդեոլոգիայի ազդեցության դեմ, բոլոր հնարավոր միջոցներով հաղթահարում է կապիտալիզմի մնացուկները մարդկանց գիտակցության մեջ ու վարքում։ Պայքարը պորտաբույծների, կաշառակերների, գռփողների, գողերի, խուլիգանների դեմ— դա պայքար է ժողովրդի հանգիստ ու բարեկեցիկ կյանքի համար։

Վերջերս գրականության ու արվեստի գործիչների հետ կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության ղեկավարների հանդիպման ժամանակ Ն. Ս. Խրուշչովը հատուկ ուժով ընդգծեց այն խիստ կարևոր դրույթը, որ գաղափարական ճակատում չկա ու չի կարող լինել խաղաղ գոյակցություն և որ ամեն մի նահանջ կոմունիստական գաղափարախոսությունից դա դավաճանություն է պարտիայի ու ժողովրդի գործին: Կոմունիստական պարտիան աճել ու ամրապնդվել է հետևողական պայքար մղելով մարքս-լենինյան գաղափարախոսության անաղարտության համար և, ինչպես միշտ, այնպես էլ այսուհետև, անհաշտ կլինի դեպի բուրժուական իդեոլոգիան, սոցիալ-ռեֆորմիզմը, նացիոնալիզմը, ռևիզիոնիզմը, դոգմատիզմը, աղանդավորությունը և այլ հակաժողովրդական ու ռեակցիոն հոսանքներն ու «ուսմունքները»։ Օրերս տեղի ունեցավ ՍՄԿՊ Կենտկոմի պլենումը, որ նոր թափ հաղորդեց մեր գաղափարական աշխատանքներին, այն դարձնելով ավելի մարտունակ։

Մարդկության լավագույն զավակները դարեր շարունակ երազել են լուսավոր ապագայի մասին։ Այժմ սովետական ժողովուրդը՝ կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, այդ ապագան դարձրել է անմիջական պրակտիկայի հարց. նա կառուցում է ազատ ու երջանիկ կյանք բոլորի համար։ Կոմունիզմը և ժողովուրդն անբաժան են, իսկ բարձրացող կոմունիզմի հոյակապ շենքի անգերազանցելի ճարտարապետն է պարտիան՝ նորարարների մեծ կոհորտան։

Այսօր, երբ մեր հայրենիքի աշխատավորությունը խորին գոհունակությամբ է նշում ՌՍԴԲՊ II համագումարի փառավոր վաթսուն տարին, մենք հպարտությամբ ենք վերհիշում այն մեծ և դարաշրջան կազմող պայքարը, որը բռնկվեց այդ համագումարում և մեզ բերեց այս պայծառ օրվան։

Հավե՜րժ փառք այն լենինյաններին, որոնք վաթսուն տարի առաջ մեր այսօրվա հաղթանակների բախտը կռեցին իրենց անձնուրաց մաքառումներով ու սխրանքներով։

---

# ՌՍԴԲՊ II ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ԵՎ ԲՈԼՇԵՎԻԿՅԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՁԵՎԱՎՈՐՈՒՄԸ ԱՆԴՐԿՈՎԿԱՍՈՒՄ

Գ. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ

Պատմական գիտությունների դոկտոր

ՌՈՒՍԱՍՏԱՆԻ սոցիալ-դեմոկրատական բանվորական պարտիայի II համագումարը (1903 թ. հուլիս-օգոստոս), օպորտունիզմի դեմ մղված սուր պայքարում Վ. Ի. Լենինի և լենինյանների ղեկավարությամբ լուծեց իր հիմնական խնդիրը՝ ստեղծեց ռևոլյուցիոն մարքսիստական պարտիա, բոլշևիկների պարտիա այն սկզբունքային ու կազմակերպական հիմունքներով, որ առաջադրել ու մշակել էր Իսկրան։ «Բոլշևիզմը,— գրել է պարտիայի հիմնադիր ու առաջնորդ Վ. Ի. Լենինը,— որպես քաղաքական մտքի հոսանք և որպես քաղաքական պարտիա, գոյություն ունի 1903 թվականից» (Երկեր, հ. 31, էջ 9)։ Վ. Ի. Լենինի ղեկավարությամբ բոլշևիկյան պարտիայի ստեղծվելը մեծագույն նշանակություն ստացավ Ռուսաստանի և ամբողջ միջազգային բանվորական շարժման հետագա զարգացման համար։

Երկրի գրեթե բոլոր խոշորագույն պարտիական կազմակերպությունները՝ Պետերբուրգի, Մոսկվայի, Կիևի, Դոնի, Օդեսայի և այլն, ջերմորեն և ակտիվ պաշտպանում էին ինքնուրույն քաղաքական պարտիայի լենինյան գիծը՝ ընդդեմ օպորտունիստների, մարտովականների։ Պարտիայի համար մղված պայքարում հենց սկզբից իսկրայական գծի հետևողական պաշտպանությամբ եռանդուն հանդես եկան նաև Անդրկովկասի սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունները և նրանց ղեկավարները՝ անդրկովկասյան լենինյանները։

Վ. Ի. Լենինը բազմիցս ընդգծել է Անդրկովկասի ռևոլյուցիոն սոցիալ-դեմոկրատների անձնվեր, պարտիայի համար կարևոր գործունեությունը, օրինակ է բերել ՌՍԴԲՊ անդրկովկասյան կազմակերպությունը՝ որպես պրոլետարական ինտերնացիոնալիզմի նմուշ։ 1905 թ. ապրիլին, պարտիայի III համագումարում ընդունված «Կովկասի իրադարձությունների առթիվ» բանաձևում, որի նախագիծը Վ. Ի. Լենինն էր կազմել, Կովկասի պարտիական կազմակերպությունները բնորոշվում էին որպես բոլշևիկյան պարտիայի առավել մարտական կազմակերպություններ, որոնց ստեղծմանը նպաստել են երկրամասի սոցիալ-քաղաքական կյանքի հատուկ պայմանները (տե՛ս Վ. Ի. Լենին, հատ. 8, էջ 536)։

«Մեր պարտիայի և Սովետական պետության մեծ հիմնադիր ու առաջ-

նորդ Վլադիմիր Իլյիչ Լենինը,— ասել է Ն. Ս. Խրուշչովը,— բազմիցս նշել է Անդրկովկասի պրոլետարիատի, ռևոլյուցիոն մարքսիստների աչքի ընկնող ծառայությունները մեր պարտիայի ստեղծման համար սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի համար մղված պայքարի ժամանակաշրջանում... Տասնամյակներ շարունակ Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունները հավատարիմ են եղել մեր պարտիայի լենինյան դրոշին, նրանք վճռական պայքար են մղել մենշևիկների ու էսեռների դեմ, մուսավաթականների ու դաշնակների նման ամեն կարգի նացիոնալիստական խմբավորումների ու հոսանքների դեմ»։

Առաջին ռևոլյուցիոն սոցիալ-դեմոկրատական, ապա՝ լենինյան իսկրայական խմբերն ու կազմակերպություններն Անդրկովկասում ստեղծվել են XIX դարի վերջին և XX դարի սկզբին՝ Ռուսաստանի պրոլետարական խոշոր կենտրոնների (Պետերբուրգ, Մոսկվա և այլն) օրինակով և օգնությամբ։ Այդ տարիներին բուռն թափով աճող ռուսական կապիտալիզմի ազդեցությամբ կապիտալիստական հարաբերություններն սկսում են զարգանալ նաև Անդրկովկասում։ Լայն թափ է ստանում երկաթուղային շինարարությունը, այստեղ ևս ստեղծվում են գործարաններ ու ֆաբրիկաներ, որոնցում աշխատող բանվորները, ռուսական պրոլետարիատի օրինակով, շուտով ներգրավվում են ռևոլյուցիոն պայքարի մեջ և կազմում համառուսաստանյան բանվոր դասակարգի հզոր բանակի մի անբաժան մասը։

Վ. Ի. Լենինի ստեղծած և գլխավորած Պետերբուրգի «Բանվոր դասակարգի ազատության պայքարի միության» (1895 թ.) օրինակով և Անդրկովկասի ռևոլյուցիոն սոցիալ դեմոկրատների՝ Վ. Կեցխովելու, Վ. Կուռնատովսկու, Մ. Կալինինի, Ս. Շահումյանի, Բ. Կնունյանցի, Ա. Ծուլուկիձեի, Մ. Ցխակայայի, Ի. Ստալինի, Ս. Սպանդարյանի, Մ. Ազիզբեկովի և մյուսների անմիջական ղեկավարությամբ Կովկասում ևս սկսում է կենսագործվել սոցիալիզմի միացումը բանվորական շարժման հետ։

Անդրկովկասում մարքսիստական սոցիալ-դեմոկրատական առաջին խմբերն ստեղծվում են Բաքվում և Թբիլիսիում, որոնք երկրամասի ռևոլյուցիոն շարժումների խոշորագույն կենտրոններն էին։ 1899 թ. Ստ. Շահումյանի ղեկավարությամբ Ջալալօղլում (այժմ Ստեփանավան) կազմակերպվում է Հայաստանում առաջին մարքսիստական խմբակը։ Սոցիալ-դեմոկրատական կազմակերպություններն Անդրկովկասում հենց սկզբից ստեղծվում և ամրապնդվում էին՝ սերտորեն կապված ամբողջ Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների հետ։

Լենինյան Իսկրա թերթի հրատարակությունից, 1900 թ. դեկտեմբերից հետո, Անդրկովկասի ռևոլյուցիոն սոցիալ-դեմոկրատները հաստատուն կանգնում են նրա դիրքերի վրա և վճռական պայքար ծավալում լենինյան-իսկրայական կազմակերպությունների ստեղծման ու աճման, բանվորների և գյուղացիների ռևոլյուցիոն շարժման վերելքը ղեկավարելու համար։

ՌՍԴԲՊ Բաքվի, Թիֆլիսի, Բաթումի լենինյան իսկրայական ուղղության կոմիտեները, ընդգրկելով տարբեր ազգերի՝ ռուս, վրացի, հայ, ադրբեջանցի, ռևոլյուցիոն գործիչներին, մեծ դեր են կատարում Անդրկովկասի աշխատավորության դասակարգային պայքարը կազմակերպելու գործում։

Անդրկովկասի սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների ինտերնացիոնալ բնույթի մասին Վ. Ի. Լենինը 1913 թ. գրել է. «Բանվորական շարժ-



ման շահերին ու խնդիրներին համապատասխանում է բոլոր ազգերի բանվորների միայն այն լիակատար միասնությունը (տեղերում, վարից մինչև վեր), որ այնքան երկար ու այնքան հաջող իրագործվում էր Կովկասում»։

1902 թ. կեսերին, ՌՍԴԲՊ Թիֆլիսի և Բաքվի կոմիտեների օգնությամբ, Ստ. Շահումյանի, Բ. Կնունյանցի և Ա. Զուրաբյանի ղեկավարությամբ Թիֆլիսում հայ իսկրայականների մի խումբ ձևավորվում է որպես «Հայ սոցիալ-դեմոկրատների միություն», որն սկզբում սերտորեն կապված էր Թիֆլիսի կոմիտեի հետ, իսկ 1903 թ. սկզբին ձուլվում է այդ կոմիտեին։ Հայ սոցիալ-դեմոկրատների Միության կազմում մտնում էին Ստ. Շահումյանը, Բ. Կնունյանցը, Ա. Զուրաբյանը, Ա. Խումարյանը, Ս. Խանոյանը, Ռ. Դաշտոյանը, Դ. Շահվերդյանը, Ն. Ալաջալովան, Ա. Երզնկյանը և ուրիշներ։

Հայ սոցիալ-դեմոկրատների միությունը 1902 թ. հոկտեմբերին լույս ընծայեց լենինյան իսկրայական ուղղության առաջին տպագիր հայերեն օրգան Պրոլետարիատ թերթը, որի առաջին համարում որպես առաջնորդող տպագրվել է հայ սոցիալ-դեմոկրատների միության Մանիֆեստը։ Վ. Ի. Լենինը, 1903 թ. փետրվարի Իսկրայի № 33-ում հատուկ հոդված տպագրեց՝ «Հայ սոցիալ-դեմոկրատների Միության մանիֆեստի մասին», որը խոշոր նշանակություն ունեցավ Անդրկովկասի սոցիալ-դեմոկրատների հետագա գործունեության համար։

1903 թ. մարտին Թիֆլիսում գումարվեց կովկասյան սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների առաջին համագումարը, որին մասնակցում էին 15 պատգամավոր՝ ՌՍԴԲՊ Թիֆլիսի, Բաքվի, Բաթումի կոմիտեներից և Քութաիսի, Գորիի, Գուրիայի, Ճիաթուրիի, Խաշուրիի, Օզուրգեթիի խմբերից։ Համագումարն ընդունում է ՌՍԴԲՊ II համագումարի համար Իսկրայի խմբագրության կողմից նախապատրաստված պարտիայի Ծրագրի նախագիծը, որպես Անդրկովկասի սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների քաղաքական գործունեության հիմք. պարտիական կազմակերպությունների կառուցման լենինյան ինտերնացիոնալիստական սկզբունքը համագումարում հռչակվում է որպես միակ ճիշտ սկզբունք։ Ընտրվում է ղեկավար օրգան՝ ՌՍԴԲՊ Կովկասյան Միության Կոմիտե, որի կազմում մտնում են՝ Ա. Ծուլուկիձեն, Մ. Ցխակայան, Բ. Կնունյանցը, Ի. Ստալինը, Մ. Բոչորիձեն, Ֆ. Մախարաձեն, Ա. Զուրաբյանը և ուրիշներ։ Հետագայում կոմիտեի կազմում տարբեր ժամանակներում մտնում են՝ Ստ. Շահումյանը, Ա. Ջափարիձեն, Վ. Բոբրովսկին, Մ. Դավիթաշվիլին, Ն. Ալաջալովան, Դ. Պոստալովսկին, Ա. Խումարյանը, Ս. Խանոյանը և ուրիշներ։ ՌՍԴԲՊ Կովկասյան Միության առաջին համագումարը որոշում է վրացական լենինյան իսկրայական ուղղության ბრძოლა թերթի հետ միացնել հայերեն Պրոլետարիատ թերթը, դարձնելով մեկ ընդհանուր օրգան, որ հրատարակվելու էր երեք լեզուներով՝ վրացերեն (პროლეტარიატის ბრძოლა), հայերեն (Պրոլետարիատի կռիվ) և ռուսերեն (Борьба пролетариата)։ Թերթը լույս տեսավ 1902 թ. ապրիլ-մայիսից մինչև 1905 թ. հոկտեմբերը և մեծ դեր խաղաց Անդրկովկասում ռևոլյուցիոն շարժումների կազմակերպման գործում։

Պրոլետարիատի կռիվը հետևողականորեն պաշտպանում էր մարքսիստական պարտիայի գաղափարական, կազմակերպական և տակտիկական հիմունքները, սերտ կապ պահպանում Լենինի և բոլշևիկների արտասահմանյան կենտրոնի հետ։

ՈՎԿԱՍՅԱՆ սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների առաջին համագումարը պատգամավորներ է ընտրում ՌՍԴԲՊ II համագումարին մասնակցելու համար։ Բաքվի կոմիտեից երկրորդ համագումարի պատգամավոր է ընտրվում Բ. Կնունյանցը (համագումարում հանդես է գալիս Ռուսով անունով)։ Բաթումի կոմիտեից Ա. Զուրաբյանը (Բեկով)՝ 2-ական ձայնով։ II համագումարում նրանք մտնում էին կայուն իսկրայական խմբի մեջ, որոնք ունեին 24 ձայն։ Կովկասյան Միութենական կոմիտեի պատգամավորներն ակտիվ մասնակցում են պարտիայի II համագումարի ամբողջ աշխատանքներին։ Համագումարում արտասանած իր բազմաթիվ փայլուն ելույթներում Բ. Կնունյանցը մերկացնում է օպորտունիստներին և պաշտպանում լենինյան գիծը։

Լենինը բարձր գնահատական է տվել Բ. Կնունյանցի ելույթներին համագումարում։ Իր Մի քայլ առաջ, երկու քայլ ետ հռչակավոր գրքում (1904 թ.)» խոսելով պարտիայի կենտրոնական հաստատությունների կազմի ընտրությունների կապակցությամբ Բ. Կնունյանցի (Ռուսովի) արտասանած ճառերի մասին, նա գրել է. «Մենք խորհուրդ կտայինք բոլորին, ովքեր ուզում են ինքնուրույնորեն վերլուծել պարտիական պառակտման պատճառները և գտնել նրա արմատները համագումարում, կարդալ և վերստին կարդալ ընկ. Ռուսովի ճառը...» (Երկեր, հ. 7, էջ 399)։

Համագումարի վճռական րոպեին պարտիայի կենտրոնական հաստատությունների կազմի ընտրությունների ժամանակ Անդրկովկասի պարտիական կազմակերպությունների պատգամավորները (6 ձայն) քվեարկեցին մեծամասնության օգտին և դրանով իսկ խոշոր օգնություն ցույց տվին անցկացնելու ԿՕ-ի խմբագրության և Կենտկոմի՝ Լենինի առաջադրած կազմը։

Երկրորդ համագումարից հետո մենշևիկները բոլոր միջոցներով աշխատում էին վիժեցնել նրա որոշումները և գրավել պարտիական կենտրոնները։ Անդրկովկասի լենինյան-իսկրայական կազմակերպությունները կանգնում են բոլշևիկյան դիրքերում և վճռական պայքար ծավալում մենշևիկների քայքայիչ գործունեության դեմ։ Բոլշևիկների առաջնորդ Վ. Ի. Լենինը անգնահատելի օգնություն է ցույց տալիս Անդրկովկասի պարտիական կազմակերպություններին, նամակագրական և կենդանի կապ պահպանում նրանց հետ, ղեկավար ցուցումներ տալիս։

Համագումարից հետո Բ. Կնունյանցը և Ա. Զուրաբյանը վերադառնում են Անդրկովկաս և պարտիական ակտիվին պատմում համագումարի աշխատանքների, ընդունած որոշումների մասին։ Անդրկովկասի պարտիական կազմակերպությունները, որոնք մինչև համագումարը կանգնած էին լենինյան-իսկրայական դիրքերում, համագումարից հետո բոլշևիզմի դրոշի տակ կանգնած առաջին կազմակերպությունների թվում էին։

ՌՍԴԲՊ II համագումարի արդյունքները հանգամանորեն քննարկվեցին Կովկասյան Միության II համագումարում, որը տեղի ունեցավ 1903 թ. հոկտեմբերի երկրորդ կեսին։ Լսելով Ա. Զուրաբյանի և Դ. Թոփուրիձեի զեկուցումները՝ համագումարը վճռական հակահարված տվեց վերջինիս՝ լենինյանների դեմ ուղղված զրպարտչական վարքագծին։ Թոփուրիձեն (Իսարի) II համագումարում Թիֆլիսի կոմիտեի պատգամավորն էր, որի մասին Վ. Ի. Լենինը գրել է. «Համագումարում նրա վարքագծի մասին եղած տվյալների ամբողջ գումարը անպայման նրա դեմ է խոսում։ Համագումարը ցույց տվեց նրա լիակատար անկայունությունը. որոշ տատանումներից հետո Իսարին վճռական րոպեին այնուամենայնիվ քվեարկեց մեծամասնության օգտին և օգնեց անցկացնելու ԿՕ-ի խմբագրության և Կենտրոնական Կոմիտեի այժմյան կազմը։ Բայց հետո Իսարին հանկարծ անցավ մյուս կողմը և այժմ հազիվ թե լոյալ միջոցներով է պայքարում մեծամասնության որոշումների դեմ։ Դա արդեն աստված գիտե, թե ինչ է։ Այդպիսի գործիչը արժանի չէ վստահության» (Երկեր, հ. 34, էջ 198)։

Կովկասյան բոլշևիկների որոշումը Թոփուրիձեին պարտիական աշխատանքից հեռացնելու մասին արժանացավ Վ. Ի. Լենինի լիակատար հավանությանը։ Համագումարի բոլշևիկ պատգամավորներ Ա. Զուրաբյանը, Մ. Ցխակայան, Ա. Ծուլուկիձեն, Ա. Խումարյանը և ուրիշներ լիովին հավանություն տվին Վ. Ի. Լենինի և նրա կողմնակիցների դիրքորոշմանը։ «...Համագումարում փոքրամասնության մեջ մնացած ընկերները,— ասված է միութենական կոմիտեի բանաձևում,— խախտելով մեծամասնության կողմից ընդունված որոշումներին փոքրամասնության ենթարկման տարրական սկզբունքը, հնարավոր են գտնում խանգարել պարտիայի II հերթական համագումարի որոշումների կիրառումը կյանքում և դրանով իսկ հանդիսանում են համապարտիական աշխատանքի թուլացման և կազմալուծման գործի մեղավորները։ Մենք, կովկասյան ընկերներս, հայտնելով մեր խոր ափսոսանքը այդ ցավալի փաստի մասին, կոչ ենք անում բոլոր ընկերներին, ովքեր գիտակցել են միասնական կենտրոնացած պարտիայի ստեղծման ամբողջ կարևորությունն ու անհրաժեշտությունը, մոռանալով մանր տարաձայնությունները, համախմբվել արդեն ձևավորված պարտիայի կենտրոնական օրգանների ղեկավարությամբ ամենաեռանդուն և համերաշխ պայքար մղելու համար, որպեսզի միավորված պրոլետարիատի ահեղ ուժն ավելի շուտով կարողանա կատարել իր մերձավոր պատմական միսիան՝ տապալել ցարական դեսպոտիզմի գարշելի լուծը»։

Քննարկելով և հաստատելով Կովկասյան Միության նոր Կանոնադրությունը՝ համագումարն ընդգծում էր իր լիովին համերաշխությունը ցենտրալիզմի լենինյան կազմակերպչական սկզբունքին։ Կանոնադրության առաջին երկու պարագրաֆներում ասված էր. «1. Կովկասյան սոցիալ-դեմոկրատական բանվորական կազմակերպությունների միությունը, որպես շրջանային կազմակերպություն կազմում է ՌՍԴԲՊ-ի անբաժան մասը։

2. Միությունն ամբողջովին ընդունում է պարտիայի Ծրագիրն ու Կանոնադրությունը, որը մշակվել է պարտիայի II համագումարում և իր գործունեությամբ ենթարկվում է պարտիայի գերագույն օրգանին՝ պարտիայի համագումարին և պարտիայի Կենտրոնական Կոմիտեին»։

Կատարելով ՌՍԴԲՊ II համագումարի որոշումը տեղական լեզուներով անլեգալ գրականության հրատարակչության ընդլայնման մասին, համագումարը որոշում է ուժեղացնել Կովկասյան միության գրական հրատարակչական գործունեությունը։ Համագումարում ընտրված Կովկասյան Միութենական կոմիտեի նոր կազմում հիմնականում մտան լենինյանները՝ Մ. Ցխակայան, Ա. Ծուլուկիձեն, Դ. Պոստալովսկին և ուրիշներ։ Նույն կոմիտեի կազմում կոոպտացիայի ենթարկվեցին Բ. Կնունյանցը, Մ. Բոչորիձեն և Ա. Զուրաբյանը։

Համագումարից հետո բոլշևիկյան դիրքերում ամուր կանգնեց Բաքվի պարտիական կազմակերպությունը։ Համագումարի արդյունքների մասին

Բաքվում կազմակերպված ժողովներում զեկուցումներով հանդես եկան Բ. Կնունյանցը, Մ. Ցխակայան, Ա. Զուրաբյանը և ուրիշներ։ Այդ ժողովներից մեկի մասին հին բոլշևիկ Ֆ. Մ. Կնունյանց—Ռիզելը հիշում է. «Ինձ հայտնեցին, որ «Կասպիական ընկերությունում» բանվորական ժողով պետք է լինի, որտեղ զեկուցումով հանդես կգա ինչ-որ եկած ընկեր... Դուրս եկավ, որ դա Բոգդանն էր... Նա այն ժամանակ այնպիսի կրակով էր խոսում Լենինի և լենինյանների մասին, որ այդ ճառն ամբողջ կյանքումս մնացել է հիշողության մեջ, և Լենինի մեծ կերպարը պայծառ կերպով տպավորվել է, և կարծում եմ ոչ միայն իմ ուղեղում»։

Բաքվի պարտիական կազմակերպության հին գործիչ Տ. Տրդատյանը պատմում է. «...Բաքվեցիներն անմիջապես կանգնեցին բոլշևիկյան պլատֆորմի վրա։ Դեռևս մինչև երկրորդ համագումարը ժողովներում մեր պարտիական ընկերները հանդես եկան որպես ցենտրիստներ. ընդհատակյա աշխատանքն ինքը ստիպեց մեզ էլ առաջին պարագրաֆը հասկանալ այնպես, ինչպես այն հասկանում էին բոլշևիկները»։

Արտասահմանից հետևելով Անդրկովկասի բոլշևիկների գործունեությանը, Վ. Ի. Լենինը հավանություն էր տալիս նրանց վճռական պայքարին մենշևիկների դեմ։ 1903 թ. հունվարի 20-ին Ժնևից Կովկաս, Կովկասյան Միության Կոմիտեին ուղարկած նամակում Վ. Ի. Լենինը և Գ. Վ. Պլեխանովը,— որը երկրորդ համագումարում պաշտպանում էր Լենինին,— գրում էին. «Թող Կովկասի ընկերները համառորեն ընթանան այն ուղիով, որի վրա նրանք կանգնել են։ Թող նրանք չլսեն բամբասանքները մեծամասնության դեմ։ Շուտով լույս կտեսնեն համագումարի լրիվ արձանագրությունները և այն ժամանակ գործը պարզ կլինի բոլորի համար։ Թող նրանք շարունակեն համերաշխ աշխատանքը ընկերական վստահությամբ դեպի Կենտկոմը և մենք համոզված ենք, որ այժմյան պարտիական «խառնակությունը» արագորեն կվերանա։

Մենք այժմ եռանդուն մտածում ենք այստեղ վրացական և հայկական գրականության հրատարակության կազմակերպման մասին։ Այդ գործին ձեռնամուխ են եղել ձեռնհաս ընկերներ. փող հույս ունենք ճարել։ Հարկավոր է օգնություն և՛ գրականությամբ, և՛ միջոցներով։

Կովկասի ընկերներին հղում ենք ողջույն և ջերմորեն ցանկանում ենք հաջողություններ աշխատանքի մեջ» (Երկեր, հ. 34, էջ 198—199)։

Զինված Վ. Ի. Լենինի ցուցումներով և նրա օգնությամբ, կովկասյան լենինյանները մեծ աշխատանք ծավալեցին մենշևիկների, բոլոր գույնի բուրժուական նացիոնալիստների մերկացման, բոլշևիկյան կազմակերպությունների ամրապնդման, մարքս-լենինյան գաղափարների պրոպագանդման, աշխատավորության ռևոլյուցիոն պայքարի կազմակերպման ուղղությամբ։

Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ 1904 թվականի փետրվարին Ժնևում ստեղծվում է հայերեն և վրացերեն լեզուներով սոցիալ-դեմոկրատական պարտիական գրականության հրատարակման հանձնաժողով, որի աշխատանքներն անմիջականորեն ղեկավարում էր Ս. Գ. Շահումյանը։ Հանձնաժողովի մեջ մտնում էին Ժուրուլին, Մ. Մանուչարյանը և ուրիշներ։ Իր եռանդուն գործունեության առաջին իսկ ամիսներին հանձնաժողովը թարգմանեց և հայերեն ու վրացերեն լեզուներով հրատարակեց մարքսիստական բազմաթիվ գրքեր, բրոշյուրներ ու թերթիկներ։ Ստ. Շահումյանի թարգմանությամբ հայերեն լույս տեսան Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի Կոմունիստական պարտիայի մանիֆես-



տի լրիվ տեքստը, Կ. Մարքսի Վարձու աշխատանք և կապիտալ, հայերեն և վրացերեն՝ Ծանուցում Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցության երկրորդ համագումարի մասին ժողովածուն, որի մեջ զետեղված էին II համագումարի 21 փաստաթուղթ, այդ թվում՝ ՌՍԴԲՊ Ծրագիրը, Կանոնադրությունը, Վ. Ի. Լենինի գրած բանաձևը։ Հանձնաժողովը նախապատրաստեց Վ. Ի. Լենինի Գյուղական չքավորությանը աշխատության հրատարակությունը վրացերեն և հայերեն։

Վ. Ի. Լենինի ցուցումներով հրատարակչական գործը լայն ծավալ է ստանում Բաքվի, Թիֆլիսի (Հավլաբար) և կովկասյան այլ պարտիական տպարաններում։ Մ. Ցխակայան պարտիայի III համագումարում ասում է, որ Կովկասյան Միութենական Կոմիտեն իր գոյության երկու տարում հրատարակել է մոտ կես միլիոն օրինակ թերթեր։ Միայն Բաքվի տպարանը 1904 թ. հուլիսից մինչև 1905 թ. փետրվարը հրատարակում է 73 անուն թռուցիկ՝ 200 հազար օրինակ ընդհանուր տիրաժով։ Տպագրվում են Վ. Ի. Լենինի Ի՞նչ անել, Գյուղական չքավորությանը, Պարտիային և այլ աշխատություններ։ 1904 թ. ամռանը Բաքվում հրատարակվեց Վ. Ի. Լենինի Մի քայլ առաջ, երկու քայլ ետ գիրքը, որը լայնորեն տարածվեց և ջերմ ընդունելություն գտավ Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպություններում, անգնահատելի օգնություն ցույց տվեց նրանց՝ խորապես ըմբռնելու ՌՍԴԲՊ II համագումարի պատմական նշանակությունը, հետևողականորեն պայքարելու մենշևիկների օպորտունիստական, քայքայիչ գործունեության դեմ, հանուն պարտիայի ամրապնդման։

Երկրորդ համագումարից հետո, մենշևիկներն ամենաստոր զրպարտություններ էին անում Վ. Ի. Լենինի և նրա կողմնակիցների մասին։ Պարտիայի մեջ ստեղծվեց շատ ծանր վիճակ, որը Լենինը որակեց որպես ճգնաժամային։ Այդ դրությունից դուրս գալու, փրկության միակ ելքը Վ. Ի. Լենինը համարում էր նոր համագումարի հրավիրումը։ «Փրկությունը մեկն է— համագումար,— գրում էր Վ. Ի. Լենինը 1903 թ. դեկտեմբերին,— նրա լոզունգն է՝ պայքար կազմալուծիչների դեմ» (Երկեր, հ. 34, էջ 221)։ Այնուհետև պարտիայի առաջնորդը խնդիր էր դնում «Բոլոր ուժերը, ամենքին ու ամեն ինչ շարժել դեպի կոմիտեները և դեպի շրջագայություններ... ամբողջ ուժով ամրացնել կոմիտեները մեր մարդկանցով»։ Տեղական կոմիտեները ամրապնդելու և նրանց պարտիայի համագումարի հրավիրման համար պայքարի հանելու նպատակով Վ. Ի. Լենինը Կովկաս է ուղարկում իր հավատարիմ աշակերտներին՝ Ստ. Շահումյանին, Ա. Մ. Ստոպանուն, Վ. Ս. Բոբրովսկուն, Ց. Զելինսկի—Բոբրովսկայային և ուրիշների, որոնք տեղերում աշխատող ընկերների հետ միասին Անդրկովկասում ստեղծում են բոլշևիկյան ամուր կորիզ։

Կովկասյան լենինյանները, շրջագայելով քաղաքներում ու գյուղերում, հսկայական կազմակերպչական աշխատանք են կատարում բոլշևիզմի ազդեցությունն ամրապնդելու ուղղությամբ։ Նրանց ջանքերով 1903-ից մինչև 1904 թթ. բոլշևիկյան խմբակներ և կազմակերպություններ են ստեղծվում Քութայիսում, Երևանում, Ճիաթուրայում, Ալեքսանդրապոլում (Լենինական), Փոթիում, Ելիզավետպոլում (Կիրովաբադ), Կարսում, Շուշիում, Սարիղամիշում, Իմերեթիայի, Գուրիայի, Բորչալուի և այլ գյուղական շրջաններում։ Դեռևս 1903 թ. հուլիսին Քութաիսի լենինյան իսկական կոմիտեն, միանալով գյուղական բանվորների՝ Իմերեթիայի և Գուրիայի կոմիտեներին, կազմել էր կովկասյան միութենական Իմերեթա-մենգրելական կոմիտե, որը II համա-

գումարից հետո կանգնեց բոլշևիկյան դիրքերում։ Նույն ամսին սոցիալ-դեմոկրատական խմբակ կազմակերպվեց Հաղպատում, որը նոյեմբերին գլխավորեց գյուղացիների ապստամբությունը կալվածատեր Բարաթովի դեմ։ 1904 թ. սոցիալ-դեմոկրատական խմբակներ էին գործում Ալեքսանդրապոլի երկաթուղային հանգույցում և կայարանում, Երևանի երկաթուղային կայարանում և Սարաջևի կոնյակի գործարանում, գիմնազիայում։ Նույն տարվա հոկտեմբերին Պրոլետարիատի կռվի բերբիկը բոլշևիկյան լրագրում Գյանջայից գրում էին. «Սոցիալ-դեմոկրատական ուսմունքի պայծառ ճառագայթը թափանցեց նաև մեր քաղաքը և Ելիզավետպոլի բանվորները սկսում են ունկնդրել ու հասկանալ միասնության և համերաշխության համար պայքարելու կոչը» (№№ 11, 12)։ Աշխուժանում են ռևոլյուցիոն աշխատանքները Շուշիի սոցիալ-դեմոկրատական խմբակներում։ 1904 թ. աշնանը ձևակերպվում է ՌՍԴԲՊ Ճիաթուրայի կոմիտեն և Փոթիի բոլշևիկյան կազմակերպությունը, որը մինչև այդ մտնում էր Բաթումի կոմիտեի մեջ։ Բաքվի կոմիտեին կից ստեղծվում է «Հումմեթ» սոցիալ-դեմոկրատական խումբը, որը ռևոլյուցիոն աշխատանք է տանում ադրբեջանական աշխատավորության շրջանում։

Անդրկովկասյան բոլշևիկները վճռական պայքար էին մղում Կովկասում ռևոլյուցիայի ոխերիմ թշնամի բուրժուա-նացիոնալիստական պարտիաների ու խմբերի՝ դաշնակների, նացիոնալ-ֆեդերալիստների, պանիսլամիստների դեմ։ «Արդյունաբերական խոշոր կենտրոններին կից վայրերում,— Թիֆլիսի և Բաքվի նահանգներում նացիոնալիստների ազդեցությունը սաստիկ խախտված է. — գրում էր Ստ. Շահումյանը 1904 թ. հոկտեմբերին։ Հայկական շատ գյուղերում արդեն կան գյուղական երիտասարդության կազմակերպություններ, որոնք կապված են մեր կոմիտեների հետ, ստանում են մեր գրականությունը և լարված ուշադրությամբ հետևում են հայ և այլազգի բանվորների հերոսական պայքարին։ Այս պայքարը,— ավելացնենք վերջում,— արդեն բազմաթիվ փայլուն հաղթանակներ է տարել» (Ստ. Շահումյան, Երկեր, հ. 1, էջ 52)։

Բոլշևիկների հերոսական պայքարն ու փայլուն հաղթանակը Անդրկովկասում կազմակերպում ու ղեկավարում էր Կովկասյան միութենական կոմիտեն, որը հաստատուն կերպով կանգնած էր լենինյան դիրքերում և պատվով էր կատարում Վ. Ի. Լենինի ցուցումները։

Միութենական կոմիտեն, պարտիայի Եկատերինոսլավի (Կրասնոդար) կոմիտեից հետո առաջինը որոշում ընդունեց III համագումար հրավիրելու մասին։ 1904 թ. մարտի 26-ին հատուկ բանաձևով նա դիմեց Ռուսաստանի բոլոր կոմիտեներին համախմբվելու պարտիայի կենտկոմի շուրջը և, եթե վերջինիս փորձերը հաջողություն չեն ստեղծի պարտիայում, ապա անհապաղ ձեռնամուխ լինել պարտիական համագումարի հրավիրման։ Վ. Ի. Լենինը հավանություն տվեց այդ դիրքավորմանը։ 1904 թ. մայիսին Թիֆլիսում տեղի ունեցավ ՌՍԴԲՊ Կովկասյան միության III համագումարը, որի որոշումները մեծ նշանակություն ունեցան Անդրկովկասի բոլշևիկներին Վ. Ի. Լենինի շուրջըն ավելի համախմբելու, տեղական պարտիական կազմակերպություններն ամրապնդելու, ռևոլյուցիոն ուժերը մոբիլիզացնելու համար։

1904 թ. սեպտեմբերին Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունները միանում են Վ. Ի. Լենինի ղեկավարած 22 բոլշևիկների ժնևյան խորհրդակցության (1904 թ. օգոստոս)՝ անհապաղ III համագումար հրավիրելու մասին դիմումին։ Այդ ոգով բանաձևեր են ընդունում պարտիայի Կովկասյան միութենական Բաքվի, Թիֆլիսի, Բաթումի, Իմերեթա-մենգրելական և Գուրիայի կոմիտեները։

Վ. Ի. Լենինի ցուցումների համաձայն 1904 թ. նոյեմբերին Թիֆլիսում գումարվեց ՌՍԴԲՊ Կովկասյան միութենական կոմիտեների կոնֆերանս, որը որոշեց լայն ագիտացիա և պայքար կազմակերպել հանուն III համագումարի հրավիրման և այդ նպատակով ընտրեց հատուկ բյուրո՝ հանձնարարելով նրան կապվել «22-ի» բոլշևիկյան խմբի հետ։

Վ. Ի. Լենինը բարձր էր գնահատում կովկասյան բոլշևիկների վճռական պայքարը մենշևիկների կազմալուծիչ գործունեության դեմ՝ հանուն III համագումարի հրավիրման։

Ռ. Ս. Զեմլյաչկան, որը 22 բոլշևիկների թվումն էր և 1904 թ. սեպտեմբեր-հոկտեմբերին Վ. Ի. Լենինի հանձնարարությամբ գտնվում էր Անդրկովկասում՝ III համագումար հրավիրելու կապակցությամբ, Լենինին հայտնում է, որ «Կովկասում մենք լրիվ հաղթանակ տարանք...»։

Ստանալով կոնֆերանսի բանաձևը, Վ. Ի. Լենինը հատուկ նամակով՝ ուղարկված 1904 թ. դեկտեմբերին Ժնևից, Կովկասյան միութենական կոմիտեին, հավանություն է տալիս նրանում առաջ քաշված հարցերին և խնդրում է արտասահման ուղարկել հատուկ դելեգատ՝ հարցերը մոտիկից պարզելու։

Կովկասյան միութենական կոմիտեի կոնֆերանսը մեծ դեր խաղաց պարտիայի III համագումարի համար մղված պայքարում։ Այն միավորեց Անդրկովկասի բոլշևիկներին մի միասնական կազմակերպության մեջ՝ միասնական բոլշևիկյան կենտրոնով, հանձին ՌՍԴԲՊ կովկասյան միութենական կոմիտեի. որն ամենաակտիվ մասնակցությունն ունեցավ ինչպես III համագումարի նախապատրաստման, այնպես էլ նրա աշխատանքներում և ընդունած լենինյան որոշումների կենսագործման համար մղված պայքարում։

ՌՍԴԲՊ II և III համագումարների միջև ընկած ամենածանր ժամանակաշրջանում Անդրկովկասի բոլշևիկները Վ. Ի. Լենինի ղեկավարությամբ և օգնությամբ պայքարում էին Ռուսաստանում բանվոր դասակարգի ռևոլյուցիոն պայքարի միասնության համար, վճռականորեն հանդես գալիս մենշևիկների դեմ, պաշտպանելով լենինյան գիծը գաղափարական, կազմակերպական և տակտիկական հարցերում։ Դեռևս ռուսական առաջին ռևոլյուցիայի տարիներին անդրկովկասյան բոլշևիկները ղեկավարեցին բանվորների, զինվորների, գյուղացիների և ուսանող երիտասարդության՝ ցարական ինքնակալության, կալվածատերերի ու կապիտալիստների դեմ ուղղված մի շարք փայլուն ելույթները՝ Բաքվում, Թիֆլիսում, Բաթումում, Քութայիսում, Ալեքսանդրապոլում, Ղարսում, Երևանում Ելիզավետպոլում, Փոթիում, Գորիում, Իմերեթիայում, Լոռիում և այլուր։

***

Անդրկովկասի պարտիական կազմակերպությունները միշտ եղել և մնում են լենինյան փառապանծ պարտիայի մարտական, հավատարիմ ջոկատը, նրանց ղեկավարությամբ Վրաստանի, Ադրբեջանի ու Հայաստանի աշխատավորներն անցնելով երեք ռևոլյուցիաների բովով, հերոսական մարտերով ձեռք են բերել սոցիալական ու ազգային ազատություն և, կառուցելով սոցիալիզմ, վստահորեն գնում են դեպի մարդկության երջանիկ ապագան՝ կոմունիզմ։

---

## Գրականության և ԱՐՎԵՍՏԻ հարցեր

# ՄԵՐ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՈԳԵՇՆՉՈՂՆ ՈՒ ՂԵԿԱՎԱՐԸ

ԳՐ. ՍԱՐԳՍՅԱՆ

*ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի հաղթանակը նշանավորեց մարդկության ընդհարվեստական զարգացման նոր դարաշրջանը, որի հիմնական խնդիրները հանճարեղորեն սահմանել է Վ. Ի. Լենինը դեռևս 1905 թվականին գրած Պարտիական կազմակերպություն և պարտիական գրականություն ծրագրային հոդվածում։*

*Հետևողականորեն կենսագործելով լենինյան ավանդները՝ կոմունիստական պարտիան հենց սկզբից ուշադիր հետևել և ուղղություն է տվել «համապրոլետարական գործի մի մասը» կազմող գրականությանը, այն առաջ տանելով ժողովրդական մասսաների արմատական շահերին ծառայելու հունով։ Դեռևս մեծ Հոկտեմբերի հաղթանակից շատ առաջ պարտիան կազմակերպել ու համախմբել է գրական կենսունակ ուժերին և նրանց ստեղծագործական ջանքերն ուղղել աշխարհի ռևոլյուցիոն վերափոխման մեծ նպատակին։*

*Մեր երկրում սովետական կարգեր հաստատելուց հետո, երբ ժողովուրդը դարձավ իր բախտի տերը, պարտիան հսկայական ուշադրություն դարձրեց նոր կուլտուրայի ստեղծման գործին։ Ելնելով մասսաների կոմունիստական դաստիարակության շահերից, նա մի միասնական ընտանիքում միավորեց ու ոգեշնչեց սովետական գրականության բազմազգ կադրերին և նրանց պայքարի կոչեց հանուն ժողովրդի առջև ծառացած մեծ խնդիրների կատարման։*

*Առաջնորդվելով լենինյան ցուցումներով, կոմունիստական պարտիան հետևողականորեն իրականացրել և իրականացնում է գրականության նկատմամբ իր ղեկավար իրավունքը՝ դառնալով նրա ոգեշնչողն ու ուղղություն տվող ուժը։ Եվ դա միանգամայն հասկանալի է, որովհետև, ինչպես հպարտությամբ հայտարարել է սովետական ականավոր գրող Ա. Ֆադեևը 1949 թ. Փարիզում, «Պարտիան և գեղարվեստական գրականությունը մեր երկրում ունեն նույն նպատակները»։ Նրանք երկուսն էլ հավատարմորեն ծառայում են ժողովրդին, կոմունիզմի կառուցման մեծ գործին։*

*Պարտիայի ուղղություն տվող ու առաջատար դերը գրական կազմակերպությունների ու գրողների նկատմամբ արտահայտվել է ինչպես ամենօրյա օպերատիվ ղեկավարությամբ, այնպես էլ կոնկրետ որոշումներով, որոնք հրապարակ եկան մեծ մասամբ մեր կյանքի շրջադարձային էտապներում, գրական*



*հասարակայնությանը հուզող մոմենտներին։ Միանգամայն իրավացի էր մեր ժամանակի մեծագույն գրող Մ. Շոլոխովը, երբ ՍՄԿՊ XX համագումարի ամբիոնից հայտարարեց. «Պարտիան հաճախ է գրողների միությանն ուղղել գրական աշխատանքի առանձին հատվածներում եղած գաղափարախոսական խափանումների համար, և մենք միշտ զգացել ենք նրա ամուր, ուղղություն տվող ձեռքը»։*

*Այստեղ, հարկավ, անհնար է թեկուզ և համառոտակի անդրադառնալ գրականության մարզում պարտիայի քաղաքականությունն արտահայտող բոլոր փաստաթղթերին ու ձեռնարկումներին, ուստի և սահմանափակվենք նշելով դրանցից մի քանիսը, որոնք առանձնապես վճռական նշանակություն ունեցան սովետական գրականության զարգացման համար։*

## 1

*ՍՈՎԵՏԱԿԱՆ իշխանության հաստատման առաջին իսկ տարիներից մեր պարտիան ուշադիր հետևում էր քաղաքի և գյուղի աշխատավորների կուլտուրական մակարդակի և կոմունիստական գիտակցականության անշեղ վերելքին՝ ապահովելով նաև սոցիալիստական գրականության ու արվեստի զարգացումը։ Դեռևս պարտիայի VIII համագումարը (1919 թ. մարտ) գյուղում տարվող պրոպագանդիստական և կուլտուր-լուսավորական աշխատանքի մասին ընդունած բանաձևում ընդգծել է, որ «Չկան գիտության ու արվեստի այնպիսի ձևեր, որոնք կապված չլինեին կոմունիզմի մեծ գաղափարների հետ և կոմունիստական տնտեսություն ստեղծելու անսահման բազմազան աշխատանքի հետ» (ՍՄԿՊ-ն համագումարների, կոնֆերենցիաների և կենտկոմի պլենումների բանաձևերում ու որոշումներում, I մաս, 1954, էջ 572)։*

*Նշելով գրականության ու արվեստի դերը աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում, համագումարը պահանջեց վճռական հակահարված տալ ամեն տեսակի ռեակցիոն տարրերին, որոնք կփորձեն ձախողել կոմունիստական պրոպագանդայի ջանքերը և շեղել սովետական գրականության զարգացումը ժողովրդին ծառայելու ուղուց։ Այդպիսի վնասակար փորձեր էին կատարում, ինչպես հայտնի է, «պրոլետկուլտականները», որոնք հասարակացնելով ու գռեհկացնելով մարքսիզմը՝ թեթևամիտ ու ժխտական վերաբերմունք էին ցուցաբերում կլասիկ ժառանգության նկատմամբ՝ մերժելով նրա նշանակությունը սոցիալիստական կուլտուրայի կառուցման գործում։*

*Նմանօրինակ արատավոր ըմբռնումները ոչ մի ընդհանուր բան չունեին պարտիայի քաղաքականության հետ, որը ռևոլյուցիայի առաջին իսկ օրերից կոչ էր անում պահպանել անցյալի կուլտուրան և այն քննադատաբար վերամշակել ու օգտագործել նոր արվեստի ստեղծման համար։ Այդ իմաստով հսկայական նշանակություն ունեցան Լենինի մի շարք ելույթները, որոնց մեջ տրըված է պրոլետկուլտական տեսաբանների նիհիլիստական դիրքավորման քննադատությունը և առաջադրված այն խորիմաստ միտքը, որ պրոլետարական կուլտուրան պետք է լինի անցյալում ստեղծված գեղարվեստական մշակույթի առաջավոր տրադիցիաների հետագա խորացումն ու զարգացումը։ «Ոչ թե նոր պրոլետկուլտուրայի մտացածին բան,— գրել է Լենինը,— այլ գոյություն ունեցող կուլտուրայի լավագույն օրինակների, տրադիցիաների արդյունքների զարգացում՝ մարքսիզմի աշխարհայացքի և պրոլետարիատի կյանքի ու պայ-*

քարի տեսակետից՝ նրա դիկտատուրայի դարաշրջանում» (Լենինը կուլտուրայի և արվեստի մասին, Երևան, 1958, էջ 367)։

Ղեկավարվելով լենինյան հանճարեղ ցուցումներով, պարտիան մինչև վերջ բացահայտեց ու մերկացրեց «պրոլետկուլտի» ռեակցիոն էությունը, նրա տեսական ու կազմակերպական հիմունքների արատավոր բնույթը և ապահովեց սովետական գրականության հետագա զարգացումը։

Այդ ուղղությամբ կարևոր դեր խաղաց ՌԿ(բ)Պ Կենտկոմի հայտնի նամակը «պրոլետկուլտի» մասին (1920 թ. դեկտեմբեր)։ Խստորեն դատապարտելով պրոլետկուլտականների ռևիզիոնիստական դիրքը, որի հետևանքով պրոլետարական կուլտուրայի պատրվակի տակ հաճախ մատուցվում էին բուրժուական հայացքներ և արվեստի բնագավառում պատվաստվում էին անհեթեթ, այլանդակ ճաշակներ, պարտիան կոչ արեց գրողներին՝ սերտորեն կապվել արդիականության հետ և քննադատորեն ուսումնասիրել ու յուրացնել անցյալի ժառանգությունը։ Նամակում միաժամանակ մերկացվում էր պրոլետկուլտի ղեկավարների հակապարտիական պահանջը, նրա ինչ-որ ինքնուրույն և անկախ լինելու ձգտումը նոր կուլտուրայի շինարարության գործում և առաջադրվում էին մի շարք կոնկրետ միջոցառումներ, որոնք գալիս էին ստեղծելու ավելի առողջ, նորմալ պայմաններ աշխատավոր ինտելիգենցիայի բեղմնավոր գործունեության համար։

Վ. Ի. Լենինի անմիջական ղեկավարությամբ կազմված այս փաստաթուղթը, որ արտացոլում է սովետական գրականության զարգացման նկատմամբ պարտիական ղեկավարության էությունը, վերջ տվեց պրոլետկուլտականությանը և զինեց մեր գրական ինտելիգենցիային ինչպես կեղծ-ռևոլյուցիոն նորարարության, այնպես էլ իրենց դարն ապրած հին ազնվական-բուրժուական ուղղությունների դեմ մղվող պայքարում։

Քաղաքացիական կռիվների հաղթական ավարտումից հետո, երբ մեր երկիրը թևակոխեց ժողովրդական տնտեսության վերականգնման ժամանակաշրջանը, և նրա առաջ ծառացան խաղաղ շինարարության խնդիրները, պարտիան իր որոշումներով օգնության եկավ մեր բազմազգ գրական ինտելիգենցիային՝ ընդգծելով բանվորա-գյուղացիական մասսաների վրա գեղարվեստական կերպարների միջոցով ներգործելու մեծ նշանակությունը։ Պարտիայի XI համագումարը (1922 թ. մարտ) մամուլի և պրոպագանդայի մասին ընդունած բանաձևում անհրաժեշտ էր համարում երիտասարդության համար ստեղծել այնպիսի գրականություն, որը կարողանա հակադրվել բուրժուական-գրականության ազդեցությանը և նպաստել նոր սերնդի կոմունիստական դաստիարակությանը (Նույն տեղ, էջ 825)։

Սովետական գրականության զարգացման համար նույնպիսի կարևոր նշանակություն ունեցավ Մամուլի մասին պարտիայի XIII համագումարի ընդունած բանաձևը, որտեղ հանգամանորեն խոսվում է գեղարվեստական գրականության ասպարեզում պարտիայի մերձավոր խնդիրների մասին և նշվում են սովետական գրականության զարգացման կոնկրետ ուղիները։ Բանաձևում ընդգծված է, որ պարտիան պետք է ամեն կերպ օգնի գրական ասպարեզ մտած բանվոր և գյուղացի երիտասարդներին, որոնց ստեղծագործական աճման հիմնական պայմանը իրենց վրա կատարելիք գեղարվեստական ու քաղաքական լուրջ աշխատանքն է, պարտիայի և պարտիական քննադատության օգնությամբ նեղ խմբակայնությունից ազատվելը։ Առանձին իմաստ ու նշանակու-



թյուն ուներ համագումարի, հատկապես, այն ցուցումը, ըստ որի ոչ մի գրական ուղղություն, դպրոց կամ խումբ չի կարող և չպետք է իր մենաշնորհը համարի պարտիայի անունից հանդես գալը։

Համագումարի այդ ցուցումները իրենց կոնկրետ արտահայտությունը գտան ՌԿ(բ)Պ Կենտրոնական կոմիտեի 1925 թ. հունիսյան բանաձևում՝ Գեղարվեստական գրականության բնագավառում պարտիայի քաղաքականության մասին, ուր արդեն նշված են գրականության հիմնական խնդիրները երկրի ինդուստրացման նախօրյակին։ Արձանագրելով մեր կյանքի ու գրականության ասպարեզում կատարված տեղաշարժերը, պարտիայի կենտկոմը մի անգամ ևս հիշեցնում էր պարտիականության լենինյան սկզբունքի էությունը՝ ընդգծելով, որ «դասակարգային հասարակության մեջ չկա և չի կարող լինել չեզոք արվեստ, թեև ընդհանրապես արվեստի և, մասնավորապես, գրականության դասակարգային բնույթը արտահայտվում է անսահմանորեն ավելի բազմազան ձևերով, քան, օրինակ, քաղաքականության մեջ (Պարտիական և սովետական մամուլի մասին, Երևան, 1955, էջ 478)։

Այսպիսով, ինչպես տեսնում ենք, սովետական կարգերի հաստատման սկզբից, անխնա պայքարելով թշնամական գաղափարախոսությունների դրսևորումների դեմ, պարտիան ղեկավարում և ուղղություն էր տալիս գրական նոր շարժմանը, բացահայտում նրա զարգացման կոնկրետ տենդենցները։ Գրականությունը դարձնելով համապրոլետարական գործի մի մասը՝ նա հաշվի էր առնում այդ աշխատանքի ողջ յուրահատկությունն ու բարդությունը, ուստի և վճռականորեն մերժում վարչարարության, գրական հին և նոր կադրերին հակադրելու, կողմնապահության ամեն մի փորձ։ Պարտիան պահանջում էր հետևողական պայքար մղել խմբակայնության, ընտանեվարության ու «աղանդավորության» ամեն կարգի արտահայտությունների դեմ և օգնել անցյալից եկող գրողներին՝ արագորեն ազատագրվելու սխալներից ու մոլորություններից, դառնալու նոր կուլտուրայի ակտիվ կառուցողներ։

Այդ գործում մեծ դեր ուներ կատարելու պարտիական անաչառ քննադատությունը, որը կոչված էր համարձակորեն մերկացնելու խորթ ազդեցությունների դրսևորումները և ճիշտ վարվեցողությամբ նպաստելու գրականության կենսունակ ուժերի գաղափարա-գեղարվեստական աճին։ Դաստիարակչական համառ ու համբերատար աշխատանք, կոմունիստ և անպարտիական գրողների ստեղծագործական մրցություն,— ահա ձևավորվող նոր գրականության զարգացման գլխավոր նախադրյալներից մեկը, որ առաջադրեց ու պաշտպանեց պարտիան դեռևս 20-ական թվականներին։

## 2

ԵՐԵՍՆԱԿԱՆ թվականների սկզբին, երբ մեր երկրում ծավալվեց սոցիալիզմի հարձակումը ամբողջ ճակատով, և հարազատ հայրենիքի բարօրության համար բանվոր դասակարգի, աշխատավոր գյուղացիության ու ինտելիգենցիայի համագործակցությունը թևակոխեց նոր և ավելի բարձր աստիճանի, հարկ եղավ վերակառուցել ստեղծագործական կազմակերպությունների աշխատանքը։ Այդ իմաստով նշանակալից երևույթ է Գրական-գեղարվեստական կազմակերպությունների վերակառուցման մասին պարտիայի Կենտրոնական կոմիտեի 1932 թ. ապրիլի 23-ի որոշումը, որը հանրագումարի բերեց գրականության և

տրվեստի մարզում պարտիայի վարած քաղաքականության փայլուն արդյունքները և միաժամանակ հստակորեն գծեց նրա հետագա զարգացման ուղիները։

Արձանագրելով սոցիալիստական շինարարության հաջողությունների հիման վրա մեր գեղարվեստական կուլտուրայի թե՛ քաղաքական և թե որակական աճը՝ կենտկոմն իր որոշման մեջ նշեց, որ գոյություն ունեցող գրական-գեղարվեստական կազմակերպությունների կառուցվածքը այլևս չի համապատասխանում մեր առաջընթացի նոր պայմաններին։ Ներկայումս, երբ պրոլետարական գրողների կադրերն աճել ու ամրապնդվել են, և գրական ողջ ինտելիգենցիան անվերապահորեն անցել է սոցիալիզմի կողմը, «գոյություն ունեցող պրոլետարական գրական կազմակերպությունների շրջանակները... արդեն դառնում են նեղ և արգելակում գեղարվեստական ստեղծագործության լուրջ թափը»։ Այդ պատճառով լիկվիդացվեցին պրոլետարական գրողների Ռուսաստանի ասոցիացիան (ՌԱՊՊ) ու գրական մյուս կազմակերպությունները և նորաստեղծ սովետական գրողների միության մեկ միասնական ընտանիքում միավորվեցին այն բոլոր գրողները, որոնք պաշտպանում էին Սովետական իշխանության պլատֆորմը և ձգտում էին մասնակցել սոցիալիստական շինարարությանը։

Մեր երկրի գրականության բազմազգ ջոկատը մի միասնական ընտանիքում միավորելու աշխատանքը ամբողջացրեց սովետական գրողների համամիութենական առաջին համագումարը (1934 թ. օգոստոս), որն անցավ սոցիալիստական ռեալիզմի մեթոդի միահամուռ պաշտպանությամբ։ Համագումարը ցուցադրեց Մ. Գորկու գլխավորած սովետական բազմազգ գրական ինտելիգենցիայի միասնությունն ու համախմբվածությունը հարազատ կոմունիստական պարտիայի շուրջը։ Իր բացման խոսքում պրոլետարական հանճարեղ արվեստագետը հայտարարեց, որ սովետական բազմալեզու գրականությունը «ամբողջ աշխարհի առաջ հանդես է գալիս որպես միասնական ամբողջություն» (Մ. Գորկի, Գրական-հրապարակախոսական հոդվածներ, Երևան 1949, էջ 270)։

Գրականության գաղափարա-գեղարվեստական առաջընթացի գործում այդ տարիներին վիթխարի դեր կատարեցին մեր պարտիայի կենտրոնական օրգան Պրավդայի էջերում հրապարակված հոդվածները՝ ընդդեմ ֆորմալիզմի, նատուրալիզմի, գռեհիկ սոցիոլոգիզմի և հակաժողովրդական գրական այլ ուղղությունների, ինչպես նաև Մ. Գորկու նշանավոր հոդվածաշարքը սոցիալիստական ռեալիզմի, լեզվի ու գրական վարպետության վերաբերյալ։ Դրանք բացահայտեցին գրականության մեջ երևան եկած սխալներն ու թերությունները։

Այդ ուղղությամբ առանձնապես մեծ էր այն ներգործուն նշանակությունը, որ ունեցավ Պրավդայի խմբագրական հոդվածը Քաղաքական պոեզիայի մասին (1937 թ.), նշելով, որ «սոցիալական իմաստից ու նշանակությունից զուրկ պոեզիա գոյություն չունի», որ նա միշտ էլ սուր զենք է դասակարգային պայքարում։ Պարտիայի կենտրոնական օրգանը մինչև վերջ մերկացրեց «երկիմաստ» բառերի ու քաղքենիական նրբազգացության սիրահար որոշ «քննադատների» փորձերը՝ պոեզիան կյանքից, արդիականության հրատապ հարցերից կտրելու վերաբերյալ։ Ավելին, նպատակ ունենալով վարկաբեկել ռևոլյուցիոն մարտաշունչ պոեզիան, էսթետացող ֆորմալիզմի այդ ներկայացուցիչները գեղարվեստական անկատարության պատրվակով հարձակվում էին, հատկապես, քաղաքական տեսակետից նպատակային, հայրենաշունչ երկերի վրա



և վահանի վրա բարձրացնում գաղափարազուրկ ու անկումային խրթնաբանությունները։

Ոգեշնչված պարտիայի իմաստուն ցուցումներով, մեր երկրի գրական ինտելիգենցիան անողոք պայքար ծավալեց սեթևեթող ֆորմալիզմի, սողացող նատուրալիզմի և բուրժուական այլ տենդենցների դեմ հանուն բարձրարվեստ, ժողովրդաշունչ գրականության։ Գրողներն իրենց երկերում պատկերեցին սոցիալիստական գյուղի ու քաղաքի մարդկանց գործերը, նրանց ստեղծարար ջանքերը հայրենիքի հզորության համար։ Հենց այդ տարիներին ստեղծվեցին այնպիսի առաջնակարգ երկեր, ինչպիսիք են՝ Լ. Լեոնովի Սոտ, Վ. Կատաևի Ժամանակ, առա՛ջ, Ա. Մալիշկինի Խուլ վայրի մարդիկ, Յու. Կրիմովի Տանկեր Դերբենտ, Մ. Շոլոխովի Հերկած խոպան, Ա. Տվարդովսկու Երկիր Մուրավիա, Ստ. Զորյանի Սպիտակ քաղաք, Վ. Թոթովենցի Բաքու և շատ այլ ստեղծագործություններ։

Երեսնական թվականների վերջերին մեր գրականության մեջ ուժեղացավ պաշտպանական թեման, որի գեղարվեստական բացահայտմամբ գրողները ձգտում էին բարձրացնել ընթերցողի զգաստությունը, նրան դաստիարակել հայրենասիրության ու հերոսության ոգով։ Նրանք ո՛չ միայն օգնում էին պարտիային՝ բարձրացնելու ժողովրդի մարտական ոգին, մերկացնելով պատերազմի հրձիգներին, այլև պատրաստ էին մի մարդու պես գրիչը փոխել զենքի և ջախջախիչ հակահարված տալ ամեն մի ագրեսորի։ Արտահայտելով պարտիայի շուրջը համախմբված տարբեր ազգի ու սերնդի պատկանող սովետական գրողների մարտական պատրաստակամությունն սպառնացող առաջիկա փորձության հանդեպ, Մ. Շոլոխովը դեռևս պարտիայի XVIII համագումարում հայտարարեց. «Եթե թշնամին հարձակվի մեր երկրի վրա, մենք՝ սովետական գրողներս, պարտիայի ու կառավարության կոչով՝ մի կողմ կդնենք գրիչը և այլ զենք կվերցնենք մեր ձեռքը, որպեսզի հրաձիգ կորպուսի համազարկի մեջ թռչի ու խոցի թշնամուն նաև մեր կապարը, որ ծանր ու հրաշեկ է, ինչպես մեր ատելությունը ֆաշիզմի նկատմամբ»։

Չի կարելի չնշել, սակայն, որ այդ և հետագա տարիներին մեր գրականությանը խիստ վնասեց անհատի պաշտամունքի ազդեցությունը։ Եվ այդ ո՛չ միայն առանձին գրողների նկատմամբ կիրառված ապօրինությունների իմաստով, այլև նրանով, որ գրողները սխալ կերպով Ստալինին էին վերագրում մեր ժողովրդի անսահման սերն ու նվիրվածությունը կոմունիստական պարտիային։ Նմանօրինակ երևույթը անհատապաշտության տուրք էր և շեղում սոցիալիստական ռեալիզմի պահանջներից։ Բայց դա, իհարկե, չէր կարող փոխել և չփոխեց մեր գրականության ընդհանուր բնութագիրը, նրա զարգացման ուղին։

## 3

ՀԱՅՐԵՆԱԿԱՆ պատերազմի ավարտումից հետո գրականության վերելքն ապահովելու համար պարտիան ձեռնարկեց նոր միջոցառումներ։

Բանն այն է, որ, ինչպես պատերազմի տարիներին, այնպես էլ նրանից հետո մեր գրականության և արվեստի մի քանի գործիչներ, մոռացության տալով գրականության պարտիականության լենինյան սկզբունքը, անհանդուրժելի բարեհոգություն դրսևորեցին բուրժուական գաղափարախոսության նկատմամբ։ Առանձին դեպքերում դա հանգեցնում էր նույնիսկ ստորաքարշության Արև-

*մուտքի քաղքենիական-բուրժուական կուլտուրայի հանդեպ։ Դրա հետ մեկտեղ նկատելի էր դատարկ, զուտ զվարճացնող սյուժեներով զբաղվելու փորձ, ինչպես և պատմական թեմատիկայով միակողմանիորեն՝ տարվելու տենդենց, որն իր հետ բերում էր անցյալի իդեալականացում։*

*Ինքնին հասկանալի է, որ այս ամենն անհարիր էր մեր գաղափարախոսությանը և լուրջ վնաս կարող էր հասցնել երիտասարդ սերնդի կոմունիստական դաստիարակությանը։ Դրությունը շտկելու և ստեղծագործական ինտելիգենցիային սայթաքումներից զերծ պահելու համար հարկ եղավ պարտիայի կենտրոնական կոմիտեի անմիջական միջամտությունը։ Եվ ահա գրականության ու արվեստի հարցերի վերաբերյալ կենտկոմը 1946—1948 թթ. ընդունեց մի շարք կարևոր որոշումներ՝* «Զվեզդա *և* Լենինգրադ *ամսագրերի մասին», «Դրամատիկական թատրոնների ռեպերտուարի ու նրա բարելավման միջոցառումների մասին»,* «Մեծ կյանք *կինոֆիլմի» և Վ. Մուրադելու* «Մեծ բարեկամություն *օպերայի մասին»։*

*Այդ որոշումները, որոնց մեջ իրենց հետագա զարգացումը գտան սոցիալիստական կուլտուրայի լենինյան հիմնարար դրույթները, հանդիսացան սովետական մարդկանց հոգևոր պահանջմունքների նկատմամբ պարտիայի ցուցաբերած հոգատարության նոր արտահայտություն։ Ամենայն վճռականությամբ վեր հանելով գրականության ու արվեստի բնագավառում եղած թերություններն ու սխալները, կենտկոմը պարզորոշ նշեց դրանց վերացման կոնկրետ ուղիները և սովետական կուլտուրայի գործիչներին զինեց գաղափարական հզոր զենքով։ Պարտիան առանձնահատուկ ուժով ընդգծում էր գրականության ու արվեստի հասարակական վերափոխիչ նշանակությունը միլիոնավոր սրտերի վրա հուժկու ներգործություն ունենալու և կոմունիստական գաղափարներ տարածելու գործում։ Միաժամանակ նշվում էր, որ արվեստի յուրաքանչյուր երկ պետք է ունենա գեղարվեստական կատարելություն, ձևի պարզություն ու հստակություն, բնավորությունների ու կերպարների ցայտունություն, լեզվի ու արտահայտչական միջոցների կենդանություն ու հարստություն։ Միայն գաղափարա-գեղարվեստական բարձր արժանիքներ ունեցող երկը կարող է գոհացնել ժողովրդի աճած հոգևոր պահանջները և էսթետիկական հաճույք պատճառել նրան։*

*Պարտիայի կենտկոմը իր որոշումներով ո՛չ միայն օգնեց սովետական արվեստագետներին՝ ժամանակին հաղթահարելու հեռուն գնացող հետևանքներով հղի սխալներն ու թերությունները, այլև նրանց զինեց ստեղծագործական աշխատանքի մարտական ծրագրով։ Այդ որոշումները նշում էին սովետական գրականության զարգացման հստակ հեռանկարները, վերստին հիշեցնում նրա սկզբունքային գծերը և սահմանում նրա առաջնահերթ խնդիրները պատմական նոր պայմաններում։ Հարկ է նկատել, սակայն, որ, ինչպես նշված է ՍՄԿՊ կենտկոմի 1958 թ. մայիսի 28-ի* «Մեծ բարեկամություն *օպերայի մասին» որոշման մեջ, առանձին կոմպոզիտորների ստեղծագործություններին տրված գնահատականները մի շարք դեպքերում անապացույց և անիրավացի էին, անհատի պաշտամունքի ժամանակաշրջանին բնորոշ սուբյեկտիվ մոտեցման արդյունք։*

*Չնայած դրան, այդ և մյուս որոշումները դրական դեր խաղացին մեր արվեստի զարգացման գործում։ Խորապես ըմբռնելով դրանց իմաստն ու նշանակությունը՝ մեր գրողներն ու արվեստագետները ստեղծագործական համառ ջանքերով արագորեն հաղթահարեցին թերություններն ու սխալները և կարճ*



*ժամանակամիջոցում լուրջ հաջողությունների հասան մեր երկրում հոգևոր կուլտուրայի առատություն ստեղծելու ասպարեզում։*

*Ըստ արժանվույն գնահատելով սոցիալիստական ռեալիզմի գրականության այդ նվաճումները՝ պարտիայի կենտրոնական կոմիտեն սովետական գրողների համամիութենական երկրորդ համագումարին հղած ողջույնի մեջ առաջադրեց նոր խնդիրներ։ Նշելով, որ «մեր գրականությունը շատ բանում դեռ ետ է մնում բուռն կերպով զարգացող կյանքից, քաղաքականապես և կուլտուրապես աճած ընթերցողի պահանջմունքներից», պարտիան գրողներին կոչ արեց առավել խստապահանջ լինել ստեղծագործական աշխատանքում, անդուլ կերպով կատարելագործել գեղարվեստական վարպետությունը, ստեղծել սովետական հայրենասերների այնպիսի վառ ու արտահայտիչ կերպարներ, որոնք դառնան ոգեշնչման օրինակ միլիոնավոր ընթերցողների համար։*

*Համագումարի պատգամավորները և սովետական ողջ գրական հասարակայնությունը ջերմ խանդավառությամբ ընդունեցին պարտիայի լենինյան շտաբի այդ ողջույնը, մի անգամ ևս ընդգծելով, որ իրենց հաջողությունների գլխավոր գրավականը պարտիայի՝ ուղղություն տվող ղեկավարության մեջ է։ «Մեր՝ սովետական գրողներիս մասին,— ասաց իր ելույթում Մ. Շոլոխովը,— կատաղած թշնամիներն արտասահմանում ասում են, որ իբր թե մենք գրում ենք պարտիայի ցուցումով։ Բանը մի քիչ տարբեր է, մեզանից ամեն ոք գրում է իր սրտի ցուցումով, իսկ մեր սրտերը պատկանում են պարտիային ու հարազատ ժողովրդին, որոնց մենք ծառայում ենք մեր արվեստով»։*

## 4

ԱՌԱՋ ԵՎ ԴԵՊԻ ՎԵՐ *նշանաբանով ընթացող սովետական գրականության հետագա զարգացման համար առանձնապես մեծ եղավ պարտիայի XX համագումարի նշանակությունը։ Համագումարի կողմից դատապարտված անհատի պաշտամունքի հետևանքները վերացնելու մասին նշված միջոցառումները, աշխատանքի բոլոր բնագավառներում լենինյան նորմերը վերականգնելու, նրա առաջադրած պահանջը և տեսական մյուս դրույթները նոր, ավելի բարձր մակարդակի են հասցնում պարտիայի գաղափարական գործունեությունը։ Հավատարիմ մարքսիզմ-լենինիզմի հավերժ կենդանի ու զարգացող ուսմունքին՝ պարտիայի կոլեկտիվ միտքը մշակեց կոմունիստական շինարարության հոյակապ ծրագիր, որը տոգորված է ժողովրդի հոգևոր կուլտուրան զարգացնելու անսահման հոգատարությամբ։*

*Անդրադառնալով գրականության ու արվեստի հարցերին՝ համագումարը պահանջեց ուժեղացնել կապը կյանքի հետ, հետևողական պայքար մղել կեղծիքի ու գորշության դեմ, բարձրացնել ստեղծագործական աշխատանքի որակը և գրողների գեղարվեստական վարպետությունը. «Մեր երկրի արվեստը և գրականությունը,— ասված է ՍՄԿՊ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,— կարող են և պետք է հասնեն այն բանին, որ աշխարհում առաջինը լինեն ոչ միայն բովանդակության հարստությամբ, այլև գեղարվեստական ուժով և վարպետությամբ»։*

*Գրականության ու արվեստի գործիչներին համարելով պարտիայի հավատարիմ օգնականներ՝ աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում, համագումարը պարտավորեցրեց նրանց հաշվի առնել ժողովրդի կուլ-*

տուրական մակարդակի բարձրացման հսկայական մասշտաբները և իրենց ողջ գործունեությունը տոգորել կոմունիզմի համար մղվող պայքարի ոգով։ Համագումարի ընդունած պատմական որոշումները, որոնցով սկիզբ դրվեց մեր հասարակական-քաղաքական զարգացման նոր շրջափուլին, ջերմ հավանության արժանացավ սովետական ողջ ժողովրդի, ինչպես և նրա գրական ինտելիգենցիայի կողմից։ Մեծապես աճեց գրողների ստեղծագործական ակտիվությունը, բարձրացավ նրանց պատասխանատվությունը ժողովրդի հանդեպ. դեմոկրատիզմի սկզբունքների խստիվ պահպանման հիման վրա լայն թափ ստացավ գրական կազմակերպությունների աշխատանքը։ Հաղթահարելով իրականության գունազարդման և անկոնֆլիկտայնության տենդենցները՝ գրողներն սկսեցին դիմել համարձակ որոնումների, ավելի խորամուխ լինել հասարակական բարդ պրոցեսների ճանաչման ու արտացոլման մեջ։ Իսկապես, պարտիայի XX համագումարից հետո, ասաց Լ. Սոբոլևը, մեզնից շատերի համար պարզ անհրաժեշտություն դարձավ՝ «գրել ուղղակի և ազնվորեն ընդդեմ վատի, վնասակարի, քարացածի, որը խանգարում է ժողովրդի ու պարտիայի մեր գործին»։

Հետհամագումարյան շրջանում, սակայն, մեր ողջ ժողովրդին և նրա ավանգարդ հանդիսացող կոմունիստական պարտիային լրջորեն մտահոգում էր այն հանգամանքը, որ, չնայած գրականության մեջ կատարված տեղաշարժերին, նրա զարգացման ընթացքը, այնուամենայնիվ, խիստ ետ է մնում կյանքից, մեր իրականության ռևոլյուցիոն զարգացման տեմպերից։ Մյուս կողմից՝ առավել ակնհայտ դարձան գեղարվեստական ինտելիգենցիայի որոշ տարրերի մոտ նկատվող գաղափարական տատանումները, մարքս-լենինյան էսթետիկայի սկզբունքներից կատարվող առանձին շեղումները, որպիսիք դուռ էին բացում թշնամական լագերից կատարվող ռևիզիոնիստական հարձակումների համար։

Այդ պատճառով էլ պարտիան, ինչպես միշտ, այս անգամ ևս, օգնության եկավ մեր ստեղծագործ մարդկանց և իր իմաստուն խորհուրդներով, հայրական հոգատարությամբ լուսավորեց նրանց առաջընթացի ճանապարհը։ Դրա լավագույն ապացույցը ժողովրդի կյանքի հետ գրականության և արվեստի սերտ կապի համար (1957 թ.), ժողովրդին ծառայելը սովետական գրողի բարձր կոչումն է (1959 թ.)՝ Ն. Ս. Խրուշչովի նշանավոր ելույթներն են։

Այդ պատմական փաստաթղթերում բացահայտված են սովետական գրականության և արվեստի հիմնական խնդիրները կոմունիզմի ծավալուն կառուցման ներկա էտապում, երբ մեր ժողովուրդը ստեղծագործական բարձր ակտիվությամբ կենսագործում է ՍՄԿՊ XXII համագումարի պատմական որոշումները։ Ընկեր Խրուշչովի ասույթներն օգնեցին մաքրելու գրականության ու արվեստի մթնոլորտն ամեն տեսակ խորթ տենդենցներից և պարտիական դիրքերից վճռական պայքար ծավալելու ռևիզիոնիստական ոտնձգությունների դեմ։ Ընդգծելով գեղարվեստական ստեղծագործության վիթխարի դերը, նա գրողների ու արվեստի գործիչների առաջ խնդիր դրեց՝ ակտիվորեն ներթափանցել ժողովրդի կյանքի ու պայքարի մեջ, մեր գրականությունն ու արվեստը բարձրացնել գաղափարա-գեղարվեստական նոր, ավելի բարձր աստիճանի։

Հատուկ իմաստ ու նշանակություն ունեն ընկ. Խրուշչովի դիտողությունները գրականության ու արվեստի պարտիականության և ժողովրդայնության մասին։ Նա համոզիչ կերպով ցույց տվեց, որ մեր ժամանակներում չի կարելի



պարտիականություն և ժողովրդայնություն հասկացողությունները հակադրել միմյանց, որովհետև մեր պարտիայի քաղաքականությունն արտահայտում է ժողովրդի արմատական շահերը և հանդիսանում սովետական հասարակական և պետական կարգի կենսական հիմքը։ «Ուստի մեծ մոլորություն կլիներ կարծել, թե մեր սովետական պայմաններում կարելի է ժողովրդին ծառայել՝ ակտիվորեն չմասնակցելով կոմունիստական պարտիայի քաղաքականության կենսագործմանը։ Անհնար է ցանկանալ ժողովրդի հետ ընթանալ՝ համամիտ չլինելով պարտիայի հայացքներին, նրա քաղաքական գծին։ Ով ուզում է ժողովրդի հետ լինել, նա մեր պարտիայի հետ կլինի, ով ամուր կանգնում է պարտիայի դիրքերում, նա միշտ ժողովրդի հետ կլինի»։

Գաղափարական-գեղարվեստական հարցերի վերաբերյալ մեր պարտիայի դիրքը նոր ուժով հաստատվեց գրականության և արվեստի գործիչների հետ պարտիայի ու կառավարության ղեկավարների այս տարվա մարտյան հանդիպման ժամանակ։ Այդ հանդիպումը, որ մի սրտաբաց զրույց էր, նշավակեց մեր արվեստին խորթ աբստրակցիոնիստական ու ֆորմալիստական ծամածությունները, մերկացրեց սոցիալիստական և բուրժուական գաղափարախոսությունների խաղաղ գոյակցության վնասակար մտայնությունը և ընդգծեց այն հսկայական նշանակությունը, որ ունի ռևոլյուցիոն տրադիցիաների օգտագործումը մեր գեղարվեստական կուլտուրայի զարգացման համար կոմունիզմի կառուցման ներկա էտապում։ Սկզբունքային նշանակություն ունեցող այդ և ուրիշ հարցերի բազմակողմանի վերլուծությունը տրված է Ն. Ս. Խրուշչովի ելույթում, որ կրում է «Բարձր գաղափարայնությունը և գեղարվեստական վարպետությունը սովետական գրականության և արվեստի մեծ ուժն են» վերնագիրը։

***

Հարթ ու սահուն չի եղել սովետական գրականության զարգացման ճանապարհը։ Այն ենթարկվել է փորձությունների, ունեցել է ոչ քիչ սայթաքումներ, բայց, շնորհիվ կոմունիստական պարտիայի հեռատես և իմաստուն քաղաքականության, միշտ էլ կարողացել է հաղթահարել դժվարություններն ու խոչընդոտները և առաջ ընթանալ պարտիականության ու ժողովրդայնության ուղիով։ Պարտիայի հետ և ժողովրդի համար, ահա այն ոգեշունչ նշանաբանը, որով առաջնորդվել է սովետական գրականությունը իր զարգացման բոլոր էտապներում։

Ուստի, հետադարձ հայացք ձգելով անցած ճանապարհին, մեր գրողները երախտագիտությամբ են գնահատում հարազատ պարտիայի անփոխարինելի դերը իրենց ստեղծագործական աճման ու զարգացման, ինչպես և ողջ գրական պրոցեսի կազմակերպման գործում. «Շնորհակալություն պարտիային այն ամենի համար, որ նա արել է սովետական գրականությանը.— ասել է մեր երկրի ավագագույն գրող Ֆ. Գլադկովը։— Չկա ավելի մեծ երջանկություն գրողի համար, քան այն գիտակցությամբ ապրելը, որ աշխարհում կա այնպիսի պարտիա, որը գրականությունը դարձրել է համաժողովրդական գործի մասը...»։

Այդ վսեմ գիտակցությամբ էլ խոսքի սովետական վարպետները նշում են լենինյան պարտիայի ծննդյան 60-ամյակը։

# ԺԱՄԱՆԱԿԻ ՃՇՄԱՐՏՈՒԹՅՈՒՆԸ

Վ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ

Ժամանակի պոետական քննություն, խորհրդածություններ երեկվա ու այսօրվա սահմանագծում, սրտի ու մտքի նվիրական «դաղտնարանների» բացում աշխարհի հանդեպ, անողոք ճշմարտության երկրպագում և մարդասիրության նոր բարձունքների կարոտ, հրաժարում արվեստի խունացած միջոցներից, նոր, ծանրակշիռ խոսքի համառ որոնումներ, պայքար մեծ բովանդակության համար՝ կենսունակ ձևերի շրջանակներում. ահա էթիկական-էսթետիկական այն պրոբլեմները, որոնցով տոգորվել է սովետահայ պոեզիան։

Հիրավի, յուրաքանչյուր բանաստեղծ ձգտել է արտահայտել իր նվիրական զգացմունքները, ասել իր սրտի խոսքը ուրախությունների մասին՝ հըպարտությամբ, դառնությունների մասին՝ ցավով։ Գաղափարական իրենց ընդհանրության, նույն նպատակին ծառայելու երջանիկ գիտակցության հողի վրա պոետները ձեռք են բերել կյանքի ճշմարտությունն ընկալելու և պատկերելու նոր հնարներ, լայնացրել իրենց գեղարվեստական տեսադաշտը։ Ու որքան ավելի են պոետները լավով տարբերվել իրարից, այնքան հարստացել է նրանց հոգևոր ընդհանուր գանձարանը՝ պոեզիան։

## ԶԳԱԼ ԿՅԱՆՔԻ ՀԵՎՔԸ, ԱՊՐԵԼ ՆՐԱՆՈՎ

Վերջերս տպագրված Ե. Չարենցի Անտիպ էջերում, հավատալով անխորտակ գալիքին, պոետը հիշեցնում էր, որ ուղին դեռ դժվարին է և ապրում են դեռ չնչին կրքերի ու զգացմունքների մարդիկ «այս ահագին դարում»։

Տարիներ են անցել, փոխվել են ժամանակն ու մարդիկ, փոխվել է պոեզիան։ Սխալված չենք լինի, եթե ասենք, որ մոտ անցյալում պոեզիան երբեք այնքան ակտիվ, կրքոտ ու անկաշկանդ հետաքրքրություն չի ցուցաբերել մեր ժողովրդի պատմության, նրա անցած ճանապարհի հերոսականության ու դառնությունների նկատմամբ, երբեք այնպիսի սրտաբացությամբ չի զինվորագրըվել կյանքին, ինչպես վերջին երկու տարում։ Այդ պրոցեսն, իհարկե, մեկ տասնամյակի պատմություն ունի, սակայն առավել խորություն ու գաղափարական նպատակասլացություն ձեռք բերեց կոմունիստական պարտիայի XXII համագումարից հետո։

«Ես սովոր եմ գրականությանը նայել որպես հեղափոխական գործի։ Ամեն անգամ, երբ խոսում եմ գրականության մասին, թվում է մարտի եմ նետվում»,— այսպես է արտահայտվել Մաքսիմ Գորկին այն հոգևոր զենքի մասին, որի համար չկա և ոչ մի դադար, որն իրոք, մշտական կռվի մեջ է հանուն մարդու, ընդդեմ կյանքի թշնամիների։

Վերջերս կոմունիստական պարտիայի ու կառավարության ղեկավարները



մի շարք հանդիպումներ ունեցան արվեստի և գրականության գործիչների հետ այդ հզոր զենքի մարտունակությունը սրուցելու նպատակով։ Հպարտությամբ պետք է նշել, որ սովետական գրականությունը ինչպես անցյալում, այնպես էլ հիմա, կոմունիստական նվիրվածությամբ է կատարում իր պարտքը հայրենիքի, ժողովրդի հանդեպ։ Եվ, եթե պարտիան անհրաժեշտություն զգաց մի անգամ ևս ստուգելու մեր գաղափարական ֆրոնտի վիճակը, ապա նպատակը պարզ էր՝ ստեղծագործական նոր հեռաստաններ բացել գրողների առջև, օգնել նրանց ավելի լավ, ավելի գեղեցիկ ծառայելու կոմունիզմին։

Այդ օգնությունը երկու բնույթի էր. գովասանքի և քննադատության։ Ստեղծագործողին սթափ պահելու, գաղափարապես նրան անխոցելի դարձնելու վերջին միջոցը ոմանց դուր չի գալիս։ Այդ կարգի տրտնջացող մարդիկ չեն հասկանում, որ գրականությունը հոգևոր գեղեցկությունների նոր ուղիներ բացող է և չի կարող մարդկանց առաջ տանել, չունենալով ոչ պատասխանատվության զգացում, ոչ էլ հստակ պատկերացում այն ճշմարտության մասին, որին ծառայում ես սրտի թելադրանքով։

Տարօրինակն այն է, որ այսօրվա կեղծ նորարարները ճշմարտություն են համարում միայն բացասականը, իսկ ստեղծագործական ազատություն՝ միայն այդ բացասականի պատկերումը։ Կարելի էր հավատալ դրանց անկեղծությանը, եթե իրենց դիմանկարն ստեղծելիս նույնպես ամեն ինչ այլանդակեին։ Բայց չէ՞ որ նրանք այդպես չեն վարվում իրենց ոչ արտաքինի, ոչ էլ հոգևոր աշխարհի հետ։ Նշանակում է՝ նրանք պարզապես լավ չեն ըմբռնում արվեստի կոչումը, չգիտեն, որ այն ստեղծվել է, առաջին հերթին՝ բարձր իդեալներ քարոզելու և դրանց անձնվիրաբար ծառայելու համար։

Ով զուրկ է նման իդեալներից, նա չի կարող տեսնել կյանքի հերոսականը։ Իսկ առանց հերոսականի անհնար է զարգացման հեռանկար ունենալ։ Այդօրինակ գրողը, նահանջելով հասնում է այնպիսի մի կետի, երբ կամ պետք է խոստովանի իր ոչնչությունը, կամ աշխարհը ներկայացնի մռայլ գույներով։ Դժվար չէ նկատել, որ այդ դեղնակտուց «որդիները» իրենց ստեղծագործական անզորությունը թաքցնելու նպատակով են ազատությունը դարձնում ինչ-որ հովանոց, որի տակ անձրևոտ եղանակներին կարող են պատսպարվել։ Միամի՜տ մոլորյալներ։

Կոմունիստական սերունդն ունի իր որոշակի իդեալները, աշխարհ է եկել մարդկային պատմությունն ազնվացնելու, նրա ընթացքի բոլոր պղտորությունները վերացնելու վեհ նպատակով։ Հենց այդ նպատակի տեսանկյունից էլ գրողը պարտավոր է անսխալ որոշել, թե ինչ է փոխվում կյանքում, դեպի ուր է գնում այդ փոփոխությունը և ինչն է դեռ նետվում պատմության կենդանի հոսանքից, որպես նրա ոգուն խորթ երևույթ, որպես հոգևոր արատ։ Կարողանալ ազատվել այդ արատներից մեկից, ինչպիսին անհատի պաշտամունքն է, տեսնել նրան իր իրական այլանդակությունների մեջ և ոչ թե այլանդակել, մոռանալ մեր ամբողջ պատմությունը, հայրենասիրական պոեզիայի կարևոր խնդիրներից մեկն է։ Մենք ունեցել ենք մաքուր, անբիծ հավատ, մենք կառուցել ենք արյունով, քրտինքով, զրկանքով և այդ ամենը հաճախ վերագրել մեկի հանճարին։ Նշանակում է այդ վերագրումն է սխալ եղել, և ոչ թե մեր կառուցումները։

Պարտիայի ու կառավարության ղեկավարների հանդիպումները արվեստի ու գրականության ներկայացուցիչների հետ գրողներին զինեցին նոր հեռա-

*նկարներով, ցույց տվին կյանքին սերտորեն կապվելու, գեղարվեստական սխրանքներով ժողովրդին ծառայելու գաղափարական ուղիները։ Ինչպես այդ հանդիպումների ժամանակ, այնպես էլ դրանցից հետո խիստ քննադատության ենթարկվեցին այն երկերը, որոնցում աղավաղվել է մեր իրականությունը, անհատի պաշտամունքի դատապարտման պատրվակով մրոտվել է մեր հայրենիքի անցած փառավոր ուղին։ Նման հիվանդագին տրամադրություններ երևացին նաև մեզ մոտ, Հայաստանում։*

*Հայաստանի կոմպարտիայի կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Յա. Ն. Զարոբյանը և կենտկոմի երկրորդ քարտուղար ընկ. Հովհ. Բաղդասարյանն իրենց զեկուցումներում ռեսպուբլիկայի ստեղծագործական ինտելիգենցիայի ակտիվի ժողովում (1963 թ. մարտի 29-ին), բարձր գնահատելով գաղափարական ֆրոնտում ձեռք բերած զգալի հաջողությունները, միաժամանակ անդրադարձան այն լուրջ սխալներին ու թերություններին, որոնք տեղ են գտել որոշ գիտնականների ու գրողների առանձին ստեղծագործություններում։ Մասնավորապես սուր քննադատության ենթարկվեցին Հովհ. Շիրազի, Խ. Դաշտենցի, Սարմենի և առանձին երիտասարդ գրողների արատավոր գրվածքները։ Ինչպես իրավացիորեն նշում է ընկ. Զարոբյանը՝ «այն գրողները, որոնց սխալների և մոլորությունների մասին ասվեց ներկա խորհրդակցությունում, մեր գործին նվիրված և ընդունակ ստեղծագործողներ են»։ Հենց այդ հանգամանքն էլ պարտավորեցնում է բարեկամական շիտակությամբ վեր հանել և վերացնել սոցիալիստական ռեալիզմի գրականությանը խորթ երևույթները։ Դեպի ճշմարտություն և ազնվություն տանող պարտիական խստությունը տաղանդի դաստիարակման, նրա առողջ ծաղկումն ապահովող միջոցներից է։*

*Ետ նայելիս, բանաստեղծը առաջին հերթին պարտավոր է որոնել, գտնել այն լավը, գեղեցիկը, որ ժամանակին չեն նկատել։ Գաղտնիք չէ, որ անցյալում բանաստեղծական միտքը հաճախ է սավառնել հրապարակների, տոնականորեն զարդարված պողոտաների վրա։ Երբեմն աննկատ են մնացել այդ ամենին կյանք ու խնդություն տվող շարքային մարդիկ։ Արվեստը ստեղծվել է նաև կորցրած գեղեցիկը վերգտնելու և ժողովրդի սեփականությունը դարձնելու համար։*

*Ուրեմն, եթե ցանկանում ես մտքերդ ազատել պաշտամունքի կապանքներից և պատրաստվել նոր թռիչքների, ինքնախոշտանգմամբ մի զբաղվի, մի հոշոտի քեզ անցյալի սխալների համար։ Դա՝ մեղմ ասած, մարդկային արարք չէ։ Մարդկայինը՝ թերությունների խոր գիտակցումից և սեփական ուժերի նըկատմամբ ունեցած հավատից առաջացած այն առողջ հառաչանքն է, որից հետո պայծառանում է մարդու հայացքը, մարդը թեթև է շնչում ու հեռուն տեսնում. կյանքին հավատացողը միայն իրավունք ունի քննադատելու։*

*Վերջին տարիներին ժառանգության և նորարարության շուրջը կրքոտ վեճեր են ծագել սովետական մամուլի էջերում։ Ոմանք, հատկապես երիտասարդները, կյանքի պահանջների համեմատ նոր պոեզիայի ստեղծումը դիտում են որպես «հայրերի» ժառանգության ժխտում՝ «որդիների» կողմից, մյուսները միայն ավանդականն են ընդունում կայուն ու տևական։ Վերջապես կա նաև վիճողների երրորդ թևը, որը հակված է մանրացնել ժամանակաշրջանը և այդ մանրուքների մեջ տեսնել մարդու վեհությունը՝ ի հակակշիռ տարիներ առաջ պոեզիայում իշխող պարադայնության։ Բնական է, որ նման վեճերը որևէ գրական արդյունք տալ չէին կարող։ Բայց այդ ճանապարհին եղան գաղափարա-*



*կան խոտորումներ, կյանքի մուրով հագեցած ֆորմալիստական վրձնահարվածներ, որոնք իրավացիորեն դատապարտվեցին պարտիայի ու ժողովրդի կողմից։*

*Նորարարությունը, որպես կյանքի ճշմարտության խուզարկության ձև արվեստի մեջ, չի կարող հաջողություն ունենալ առանց դասական գրականության հարուստ փորձի յուրացման։ Այլապես, եթե յուրաքանչյուր սերնդի հայտաբերած գեղարվեստական ճշմարտությունը մահանար նույն սերնդի հետ, հազիվ թե գոյություն ունենար պատմություն հասկացությունը, գեղեցկի ըմբռնումն ընդհանրապես։ Հենց պատմության փորձն է մեզ ստիպում չկրկնել ասվածը, ստեղծել նորը, ավելի կատարյալը։*

## ՊՈԵԶԻԱՅԻ ՀԵՐՈՍԸ ԿՈՄՈՒՆԻԶՄ ԿԱՌՈՒՑՈՂ ՄԱՐԴՆ Է

*Վերջին շրջանում սովետահայ գրականությունը փորձեր է կատարել պարզելու, թե գեղարվեստական ի՞նչ թարմություն բերեց գրականությանը Չարենցի ու Բակունցի ժառանգությունը, ինչ նոր տենդենցների ակունք հանդիսացավ, որ առաջներում չկային կամ սահմանափակ էին իրենց զարգացման մեջ։ Դա մի նոր աստիճանի բարձրացրեց բանաստեղծների՝ խոսքի ու ժամանակի նկատմամբ ունեցած պատասխանատվության զգացումը, օգնեց նրանց ընթանալ մեծ մտքերի ու հույզերի հունով։ Անվիճելի թեթևամտություն կլինի սերունդների էսթետիկական այդ ձայնակցումը որոնել նրանց առանձին տողերի, պատկերների նմանության կամ ընդօրինակման մեջ։ Տրադիցիան պետք է զգալ, պետք է կարողանալ ապրել գեղարվեստական այն մթնոլորտը, որի մեջ հինն ու նորը ապրում են ոչ թե կողք-կողքի՝ բարի հարևանի իրավունքով, այլ ի մի ձուլված։ Ահա կարդում ենք Վահագն Դավթյանի հետևյալ տողերը.*

Քարակոփ է, քար է ամբողջովին,
Քարաբեկոր է՝ վայրի ու կուռ,
Բայց պղնձագույն նրա կողից
Շատրվանել է ծառ մի զանգուր:

Ծառն այդ դժվար է ապրել կյանքում,
Ու թվում է թե երբ բնին խփես,
Նա՝ կարծրացած իր տառապանքում
Զրնգա պիտի պողպատի պես:

*Այլաբանորեն ասված այս իմաստությունը, իհարկե, վերաբերում է մարդուն։ Բայց ոչ սովորական, իր ճամփան հեշտ ու թեթև անցնող մարդուն, այլ նրան, որի կամքը, ոգին, հավատը թրծվել են տառապանքներում և դարձել պողպատի պես զրնգուն։ Ակամա մտաբերում ես Մ. Շոլոխովի* Մարդու ճակատագիրը, *Ա. Սոլժենիցինի* Իվան Դենիսովիչի մեկ օրը, *Գ. Չուխրայի* Մաքուր երկինք, *Գ. Մահարու* Սև մարդը, *Մ. Արմենի* Իմ տունը *ստեղծագործությունների հերոսներին։*

*Բայց չկա՞ր տառապանքի նույն ընկալումը, ասենք, Չարենցի մոտ։ Չարենցը չէ՞ր, որ հուշակեց* տխրության ու հոգսի ժամին *տոկուն պահել ոգին,* ինչպես հնոցի հուրը բորբոքուն. *Նա չէ՞ր, որ հպարտությամբ երգեց* խոր տանջանքներում կոփած իր ոգին, *ապագա բանաստեղծներին կտակելով լենինյան դարի իր շնդալից, պայծառ քնարը։*

«Արվեստագետը,— ասում է ընկ. Խրուշչովը,— պետք է կարողանա տեսնել դրականը, ուրախանալ այդ դրականի համար, որը կազմում է մեր իրականության էությունը, պաշտպանել այն և միևնույն ժամանակ, հասկանալի է, չանցնել բացասական երևույթների կողքով, այն ամենի կողքով, ինչ խանգարում է կյանքում նորի ծնունդը: Յուրաքանչյուր, նույնիսկ ամենալավ գործ ունի իր սովորոտ կողմերը: Ամենագեղեցիկ մարդն էլ կարող է թերություններ ունենալ:

Ամբողջ բանն այն է, թե ինչպես պետք է մոտենալ կյանքի երևույթներին և ինչ դիրքերից գնահատել դրանք»:

Սովետական բանաստեղծները ճիշտ են գիտակցում մեր կյանքի առաջընթացն ապահովող դրականը, միաժամանակ անտարբեր չեն թերությունների ու դժվարությունների նկատմամբ: Դրանք, այդ դժվարությունները, պոեզիայում ներկայացվել են մերթ «հազարամյա քարի», մերթ «սև կոճղի», մերթ էլ «դավադիր մացառների» կերպարանքով, բայց բոլոր դեպքերում ճեղքվել է այդ քարը դրականին ճանապարհ տալու համար: Իսկական արվեստն, իրոք, չի կարող իր ծաղկումով ծառայել ժողովրդին, առանց փշրելու մարդկային կյանքի ճանապարհը փակող ժայռաբեկորները:

Մերժելով թեթև հիացմունքից ծնված մեծ ճիչերի «արվեստը», հայ բանաստեղծները, վերջին երկու տարում, իրենց ուշադրությունը սևեռած են պահել շարքային մարդուն, անաչառ քննության ենթարկել նրա կյանքն ու գործը: Յուրաքանչյուրը նրանցից յուրովի, իր տաղանդի չափի ու կշռի համեմատ է մոտեցել իրականությանը, ձգտելով հասկանալ, թե ինչ է վերցրել կյանքից և ինչպես է հատուցել արվեստագետի իր պարտքը: Դա ինքնաղննման այն աղնիվ զգացումն է, որի խորությունը չափվում է գրողի՝ դարաշրջանի հանդեպ ունեցած հոգևոր ու քաղաքացիական պատասխանատվության աստիճանով, նրանով, թե ինչպես է նա կարողացել սեփականել ժամանակի ճշմարտությունը:

Ուստի բնական է, որ նման դեպքերում ավելի են ուժեղանում երևույթների քնարական, խոհական ընկալումն ու պատկերումը, ամրանում սրտի ու մտքի գաղափարական դաշինքը: Ձևափոխելով Պրիշվինի խոսքերը, կարող ենք ասել՝ ճշմարիտ խոհերը նույնպես ծաղիկներ են, որ բուսնում են նպաստավոր եղանակին: Կոմունիստական պարտիան ստեղծեց այդ բարենպաստ եղանակը: Պոետների մոտ դա անվանվեց Պայծառ առավոտ, Գարնանային տաքուկ քամի, Մաքուր երկինք, Սրբագործող կայծակ և այլն: Եվ բանաստեղծները սկսեցին խոր զգալ մարդկային սրտի բաբախումը նաև որոտների ժամին, երգել արյունը նրա, որ ոմանք ջուր էին կարծում, կարողացան դարաշրջանի ճշմարտությունը չափել ոչ թե օրվա, այլ պատմության մասշտաբներով:

Մարդը սկսեց երևալ և՛ իր մեծ ու հարուստ աշխատանքային առօրյայով, և՛ իր կիրակնօրյա խոհերով: Նա դրվեց պատմության յափի մեջ, որպես միակ հպարտությունն այդ նույն պատմության: Ցավոք սրտի այդ սրբազան ափի տարածությունը երբեմն չարաշահվում է, և ոմանք սկսել են արվեստի այգեստանում ցուցադրել ամեն ինչ, նույնիսկ իրենց պապերի տրեխները: Կարծում ենք, որ այդ ափը քաղքենիական չնչին զգացմունքների հանգստավայր չէ, ոչ էլ խռնավ մտքերի չորանոց, այլ իսկական մարտադաշտ, որտեղ նույնպես պարտավոր են մտնել ազնիվ զենքով և մաքուր սրտով:

Ուժեղ տաղանդը, Ավետիք Իսահակյանի դիպուկ արտահայտությամբ, արծիվ է, որին ամոթ է կերակրել մժեղներով (մանրաբեմայնությամբ): Ու զարմանում ես, թե ոմանք տրամաբանության ինչ օրենքի համաձայն են չնչինով, անցողիկով կամ սոսկ բացասականով տարվելը համարում կուտուզովյան նահանջ՝ հակահարձակման անցնելու համար: Բայց չէ՞ որ արվեստի տերիտորիան շատ է փոքր՝ ընդամենը մարդկային մի սիրտ: Այստեղ նահանջելու տեղ չկա, և հակառակորդին հանձնածը դժվար է ետ գրավել:

Ինչ խոսք, կան մոլորություններ, որոնք ծնվում են լավի, գեղեցկի որոնման ճանապարհին: Դժբախտությունն այդ չէ, այլ այն, երբ գրողը փորձում է սրբագործել իր գաղափարական խոտորումները, համարելով դրանք այսօր սխալ հասկացված, բայց գալիքի հեռաստանները նետած ճշմարտության սերմեր: Ճշմարտությունը, առաջին հերթին, ուժեղ է իր արդիականությամբ: Ինչ այսօր անհասկանալի է, հարյուր տարի հետո չեն էլ հիշելու:

Մարդուն պետք է դիտել իր կերտած պատմության մեջ. այս է պահանջվում գրողից: Նման մոտեցման դեպքում դժվար չի լինի համոզվել, որ կյանքը միայն ստվերից բաղկացած լինել չի կարող: Ստվեր հասկացությունն իսկ ենթադրում է լույսի առկայությունը: Թերևս հենց այդ է նկատի ունեցել ռուս բանաստեղծը, ասելով. գրիչը ոչ թե թանաքի, այլ այգաբացի մեջ եմ ես թաթախում: Գեղեցիկ խոսքեր: Միայն այգաբացով ներշնչվածը կարող է մենամարտել խավարի դեմ և հաղթանակել:

Դեռևս վառ է մեր հիշողության մեջ, երբ մարդ–պտուտակը «մաշվում» և փոխվում էր մեկ ուրիշով. և դա երբեմն կատարվում էր այնքան հանգիստ ու անվրդով, որ կարծես «մի ամբողջ աշխարհ չէր հեռանում»: Մինչդեռ մարդուն ոչ թե փոխում, այլ փոխարինում են, և այդ փոխարինողը հպարտ պետք է լինի իր նախորդից ժառանգածով: Մերժելով պտուտակի տեսությունը, Գևորգ Էմինը Ներբող մարդուն բանաստեղծության մեջ փառաբանում է ոչ միայն նավն ու հրթիռը, այլ՝

Ձեռքերը մարդու,
Որ ցանել, վարել,
Տներ են շինել, բերդեր են շարել...
Բռունցք են դարձել կատաղությունից.
Հաճախ թուլացել անհուսությունից,
Արյուն են թափել ու սրբել արցունք,
Մինչև, մագլցած բարձունք առ բարձունք,
Հասել են իրենց տենչած գալիքին՝
Այս հրթիռին ու այս նավի ղեկին
Եվ... գրկել մեջքը ողջ տիեզերքի:

Նույն գաղափարի ինքնատիպ մարմնավորումն՝ ենք տեսնում նաև Վ. Դավթյանի Լուսապսակում:

## ԸՆԴԴԵՄ ԱՆՊՏՈՒՂ ՆՈՐԱՐԱՐՈՒԹՅԱՆ

Համարձակորեն կարելի է ասել, որ արդի հայ պոեզիան, շարունակելով հին ու մեծ արվեստի տրադիցիաները, ունի իր ուղին, դարից ստացած իր մուրհակը, կոմունիստական պարտքի իր գիտակցումը և, իհարկե, իր հերոսը: Սեփականը, ինքնուրույնը չունենալու դեպքում անիմաստ կլիներ խոսել տրադիցիաների շարունակման մասին: Բայց և առանց այդ տրադիցիաների յու-

*րացման, անհնար է հասնել բանաստեղծական ինքնուրույնության։ Այդ առումով իսկական նորարարության մեջ մասն ունի նաև հին լավը։*

*Վերջին տարիներին հաճախ են խոսում այս կամ այն գրողի* ուղղության *մասին, որին չպատկանելը համարվում է հնամոլության, քարացածության պաշտպանություն։ Ոչ մի անհատ գրական ուղղություն ստեղծել չի կարող և չի ստեղծել (եղել են միայն հիմնադիրներ). ուղղությունները ստեղծվում են ստեղծագործողների կոլեկտիվ ջանքերով։ Կա ուղղություն, որի մեջ ընդգրկվում են տարբեր խառնվածքի, նույն ճշմարտության պոետական տարբեր ընկալումների տեր գրողներ։ Խոսք կարող է լինել այն մասին, թե ում տաղանդն է ավելի խոր զգում և արտահայտում կյանքը, ով է գեղարվեստական խոսքը բարձրացնում հոգևոր սխրագործության աստիճանին։*

*Մեզ մոտ, դժբախտաբար, երբեմն նորարար են հռչակում նաև այն բանաստեղծին, որի «նոր» ներշնչանքների ակունքը նրա հին երգերն են։ Նման* ինքնամատակարարումով *սնվող տաղանդը, անգամ եթե նա մեծ է, չի կարող մարմնացնել դարաշրջանի ոգին, թամբել ժամանակը և դիմանալ նրա բաշի թափահարումին։ Չի կարելի թամբը դնել վրադ և ձևացնել, թե ժամանակը դու ինքդ ես։ Նման դեպքում ստեղծագործական ազատությունը վեր է ածվում քմահաճության, իսկ պատասխանատվության զգացումին փոխարինելու է գալիս բանաստեղծական «ես»-ի շռայլ մանրացումը։ Այդպիսի պոետի ոչ վիշտն է բնական, ոչ էլ ուրախությունը, թեև երբեմն արժանանում է քաղքենիների ծափերին։*

*Մենք քնարերգու ենք համարում միայն այն պոետին, որը բարոյական մի նոր աստիճանի է բարձրացնում ժամանակակիցներին՝ իր հարուստ «ես»-ի հասարակական մտորումների արտահայտությամբ։ Դրանում է հենց այն անհատականությունը, առանց որի դժվար է պատկերացնել պոեզիայի ժողովրդայնությունը։ Խորապես անհատական են, ինքնուրույն ու ինքնատիպ Մահարին, Նորենցը, Սարմենը, Տարոնցին, Սևակը, Կապուտիկյանը, Սահյանը, Էմինը, Հովհաննիսյանը, Դավթյանը իրենց նոր ստեղծագործություններում։ Եվ, եթե որևէ մեկը ցանկանում է հասկանալ, թե ինչումն է նրանց ժողովրդայնությունը, առաջին հերթին պարտավոր է զգալ նրանց հարուստ անհատականությունը։ Ժողովրդայնությունը ո՛չ միայն գաղափարական, այլ գեղարվեստական կատեգորիա է։ Չէ՞ որ հենց այնպես, գեղեցիկ խոսքի համար չէ Հրաչյա Հովհաննիսյանն ասում.*

Ձեզ հետ եմ լույսի բանաստեղծ դարձել,
Ձեզ հետ եմ եղել ընկեր ու մարտիկ,
Ձեզ հետ եմ հողմում անթեք մնացել,
Ձեմ կարող ապրել առանց ձեզ, մարդիկ:

*Ոչ էլ Սարմենի՝ ապրելու կարոտն է ինքնանպատակ.*

Ապրել եմ ուզում. ապրել ու ապրել,
Բայց ոչ մենակյաց ճգնավորի պես.
Ես, մարդու ճամփին որպես ողջակեզ,
Այրվել եմ ուզում, այրվել ու այրվել:

*Կարելի է հիշատակել նաև Մ. Մարգարյանի, Ա. Սարոյանի հպարտության տողերը բոլոր փորձություններով անցած, աշխարհի երիտասարդության հա-*



*մար «սպառված» ջահելության մասին։ Այստեղ խոսքը* բնության ամենամեծ երևույթի՝ *մարդուն անձնվիրաբար ծառայելու մասին է, այն մասին որ հանրության երջանկության համար մղվող պայքարից դուրս չկա երջանկություն։ Սա սոսկ դեկլարացիա չէ, այլ էսթետիկական տեսանկյուն, պատմության առաջընթացը մարդու կատարածով չափելու սկզբունք։ Երբ այդ ամենը առկա է, միանգամայն բնական է հնչում բոլորին հասկանալի լեզվով գրելու պահանջը։*

*Այդ կապակցությամբ ո՛չ միայն մերժելի, այլև ծիծաղելի են թվում հոգեվոր այն ծամծմությունները, որ վերջերս վերստին հրապարակ է հանվել աբստրակցիոնիզմի համազգեստով։ Ֆորմալիզմի այդ* ճաճճանյուղը *իր սոցիալական էությամբ ստորաքարշություն է այլանդակի հանդեպ, նույնիսկ դավաճանություն այն մարդկայինի նկատմամբ, որ այսօր կամրջվում է աշխարհի բոլոր ժողովուրդների միջև։ Հակառեալիստական արվեստի պղտոր հոսանքից մենք պետք է զատենք այն արվեստագետներին, որոնք երբեմն կարողանում են նետել իրենց հոգուն ու մտքին ծանրացած քարը և աշխարհը տեսնել իր բնական գույներով։ Այժմ արդեն ստեղծվել են այնպիսի պայմաններ, երբ առանց վախենալու* միջանցիկ կամայականություններից *կարողանում ենք իսկական գրողին վեր դասել իր իսկ գործած սխալներից, սատարել նրան, միաժամանակ նշավակելով նրա սխալները։*

*Մեզ հետաքրքրող ժամանակահատվածի պոետական երկերում որոշակի տեղ ունի հայ ժողովրդի անցյալը։ Եվ այդ բնական է։ Սոցիալիստական ազգերի կուլտուրաների մերձեցումը, նրանց կյանքի ու գրականության հարըստացումը ինտերնացիոնալիստական համընդհանուր զգացումներով, չէին կարող շրջանցել այն ուղին, որ մեզ, պայքարների ու զրկանքների գնով, հասցրել է այս երջանկությանը։*

*Չի կարելի ուրախությամբ չնշել շատ կարևոր մի հանգամանք. պատմության լայկան ընկալումը, որ ժամանակին դատապարտել է Ստեփան Շահումյանը, խորթ է սովետահայ պոեզիային։ Պատմությունն, ըստ պոետների, առաջին հերթին, աշխատավոր ժողովրդի պայքարն է հանուն իր պայծառ իդեալների։*

*Կան բանաստեղծություններ, որոնց մասին բարձրաձայն խորհելը դժվար է։ Այն պետք է կարդալ մենակության մեջ, երբ դառնում ես ավելի խոհուն, երբ աշխարհի հոգսերն ավել ուժգին են արձագանքում քո հոգում ու դու ավելի հեռուն ես տեսնում, ավելի խոր։ Նման մի կերտվածք է Կապուտիկյանի* Աղավնիները: *Ի՞նչ է ասել հեղինակը։ Շատ «քիչ» բան։ Հայոց աղավնիները, որ միշտ վախվորած ապավինել են վանքի գմբեթներին, ապրել ահով, ցրիվ եկել ամեն նետած քարից, տագնապահար եղել ամեն թեթև ղանգից, այժմ իջել են Լենինի հրապարակի ամուր ասֆալտին, շուրջը ծիծաղ է ու ճիչ, շատրըվանում են ջրերը, աղմկում մեքենաները…*

Դուք խառնված մարդուն, մարդամոտիկ,
Շրջրում եք հանգիստ, տափիկ-տափիկ,
Ու հատիկ եք քաղում մանկան ափից,—
Աղավնիներ, հայոց աղավնիներ…

*Այս տողերի մեջ խտացվել է հայ ժողովրդի ճակատագիրն իր երեկվա ողբերգությամբ և այսօրվա երջանկությամբ, իր տագնապահար անցյալով ու*

ապահով ներկայով: Ինչպես տեսնում եք՝ ոչ միայն մարդկային ձեռքի ափը, այլև մի ամբողջ երկիր է դարձել մարդամոտ ու մարդասեր:

Սրտի ու ձեռքի «հարցերով» հատկապես շատ է զբաղվում Գևորգ Էմինը: Նա իրավացի է, երբ մերժում է լոկ ծափ տվող, լոկ թափ տվող ձեռքը, և ընդունում է այն ձեռքերը,

Որ սերմ են ցանում,
Որ գործ են անում:

Դա տրամաբանական զարգացումն է Էմինի այն մտքի, թե երգել լոկ բարին, միևնույն է, թե ծառայել չարին: Հիրավի չարը չնկատելը, նրան հանդիստ թողնելը թուլացնում է բարու դիրքերը: Հետևությունն այն է, որ միայն դրականի փառաբանումով թերի կլինի կյանքի ճշմարտությունը: Բայց ահա մի այլ բանաստեղծության մեջ Էմինը պնդում է, թե՝

Չկա ավելի խախուտ հենարան,
Քան ձեռքը մարդու.

որովհետև նույն ձեռքը, որ այսօր քեզ պահում է գլխի վրա, վաղը կարող է անդունդ նետել: Ուրեմն՝

Երանի նրան
Ում ժողովուրդը կպահի... սրտում:

Սա Էմինի նախասիրած հին հնարանքներից է. կեղծ հոգեվիճակ ստեղծել, վերջում որևէ թևավոր ճշմարտություն հայտնելու համար:

Էմինը, իրոք ինքնատիպ, ընդգծված անհատականության բանաստեղծ է: Սակայն երբեմն այդ ինքնատիպությունը հանգում է մտքի թեթև խաղերի, ոչ դիպուկ սրամտությունների: Մենք, օրինակ, բնավ համամիտ չենք Էմինին, երբ նա մեր անցյալի երգերը որակում է որպես խեղդված ճառաչանքներ: Այդ հարցում իրավացին, անշուշտ, Համո Սահյանն է.

Թշնամացած մի այրուձի
Եվ ընդվկում մի անողոք,
Մի Վարդանի սրի շառաչ,
Մի Ֆրիկի արդար բողոք,
Մի սասնա տան թուր-կայծակի
Դավթի հզոր ձեռքերի մեջ.—
Այսպիսին է Հայաստանը
Մեր հինավուրց երգերի մեջ:

Այդ ներքին վեճին մասնակցել է նաև Արշալույս Մարգարյանը իր Օշականում բանաստեղծությամբ: Նա փառաբանում է այն հողը, ուր Կոմիտասն է բոցկլտալով այրվում:

Ուր որ միայն, միայն իր մի «Կալի երգով»
Մի սրտի չափ տաք հող՝ որպես ոգու վաստակ,
Ծառս եղավ ավերի, սրի դեմ ահագնող,
Անառիկ պահելով ամբողջ մի Հայաստան...

Ճշմարիտը սա է, թեև, այո, եղել են նաև խեղդված ճառաչանքներ, հուսահատության ճիչեր, և պարզապես մեծ սրտի ճառաչանք: Այստեղից հետևում



է, որ երբեք չպետք է թուլացնել խոսքի նկատմամբ պատասխանատվության զգացումը:

## ԲԱՐՁՐ ԳԱՂԱՓԱՐԱՅՆՈՒԹՅՈՒՆԸ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՀԵՆՔՆ Է

Երբ ժամանակը հասարակական մտքի նոր սահմանագծի գրավման պահանջ է առաջադրում, պոեզիան առաջինն է մարտի նետվում: Միանգամայն բնական է, որ պարտիայի XXII համագումարից հետո բանաստեղծներն ակտիվ հետաքրքրություն են ցուցաբերում նաև ազգային հպարտության զգացումի նկատմամբ: Եթե մի կողմ թողնենք այդ հետաքրքրության «ավելցուկները», ապա կարող ենք ասել, որ հայ պոետները նույնպես ճիշտ ըմբռնեցին ազգային զարգացման նոր էտապի տենդենցները. տեսան ու պատկերացրին դեպի համամարդկայինը, ինտերնացիոնալիստականը տանող հոգևոր ուղիները: Պարտիան նշել է, որ «...մի ազգի կուլտուրայի նվաճումները դառնում են մյուսների սեփականությունը: Դրա շնորհիվ փոխադարձաբար հարստանում են ՍՍՌՄ ժողովուրդների կուլտուրաները, ամրապնդվում է դրանց ինտերնացիոնալ հիմքը, ձևավորվում է կոմունիստական հասարակարգի ապագա միասնական համամարդկային կուլտուրան»: Ինքնին հասկանալի է, որ անհնար է գնալ դեպի միասնական համամարդկային կուլտուրա, առանց ազգային գրականության ու արվեստի զարգացման, առանց այն նվաճումների, որ ձեռք է բերում յուրաքանչյուր ազգ, դարձնելով դրանք նաև ուրիշների հոգևոր սեփականությունը:

Սակայն ցավով պետք է նշել, որ կան դեռևս հիվանդագին, քաղցր-մեղցր զգացումներ, որոնք անհարիր են այսօրվա մեր քաղաքացիական ոգուն, մեր աշխարհայացքին և այն միսիային, որ պատմությունը դրել է մեզ, որպես կոմունիզմ կառուցող ժողովրդի վրա:

Որոշ բանաստեղծների մոտ դեռևս շարունակում է ապաստան գտնել «ախ ու վախ»-երի հոգեբանությունը, հենց որ խոսք են բացում անցյալի մասին: Մարդ երբեմն դժվարանում է հասկանալ խոսքը բախտի քմահաճույքին մատնված ժողովրդի՞ մասին է, թե՞ մի ժողովրդի, որ դիմանալով դարերի բոլոր փորձություններին, կրակ է դարձել, բայց չի մոխրացել, խավար է տեսել, բայց լույսին չի դավաճանել, մի ժողովրդի, որ այսօր ոչ միայն ունի իր պետականությունն ու դրոշը, այլև իր տնտեսական ու հոգևոր կշիռը աշխարհի զորեղների շարքում:

Ակամա մտաբերում եմ չին գրողներից մեկի այն անկեղծ, սրտաբաց խոսքը, թե չինացիները երախտապարտ են նաև հայ մեծ ժողովրդին: Եվ սա ասում էր 700 միլիոնանոց ժողովրդի պատվիրակը, այդ մեծի հասկացությանը մոտենալով ոչ թե վիճակագրության տեսակետից, այլ նրանից, որ Հայաստանը նույնպես հաղթանակած սոցիալիզմի երկիր է. իսկ սոցիալիզմն ամենուր մեծ է ու անպարտելի:

Այսպիսով, կան սոսկ աշխարհագրական բանաստեղծություններ, որտեղ հոլովվում են Հայաստանի լեռներն ու գետերը, հին կոթողների փլատակները, բայց կա նաև պոեզիա, որտեղ հայ ժողովրդի հոգևոր հպարտության, նրա ծաղկման ու զարգացման աշխարհագրությունն է պատկերված:

Մտերմական մի զրույցի ժամանակ Համո Սահյանը հետևյալ դիպուկ դիտողությունն է արել. կարդալով Մասիսի մասին գրած բազմաթիվ բանաստեղ-

ծությունները, ես այն տպավորությունն եմ ստանում, թե դրանց հեղինակները այդ սրբազան սարի գագաթն են բարձրացել իլիկով թել մանելու ճամար. այնքան հնաբույր, պրիմիտիվ են նրանց պատկերացումները և՛ այդ սարի, և՛ նրա ստորոտում ապրող ու ստեղծագործող հայ ժողովրդի մասին։ Այդ մտքի հետ չի կարելի չհամաձայնել։ Իրոք, իլիկի պոեզիան դեռևս ապրում է, որի դեմ պայքարելը նույնքան անհրաժեշտ է, որքան լավի պաշտպանությունը։ Իսկական արվեստի խնդիրը՝ կորցրածի, ավերվածի վրա անվերջ արտասվելը չէ, այլ մեծարումն այն ստեղծվածի ու ստեղծողի, որոնցով հայ ժողովուրդը մնացել է պատմության շղթայում, ի հեճուկս նրա բոլոր թշնամիների։

Ոմանք ասում են, թե բանաստեղծը կյանքի երևույթները անց է կացնում իր «ես»-ի միջով։ Բայց դրանով ցույց է տրվում փաստի անցած ճանապարհը, ոչ ավելին։ Առավել կարևոր է իմանալ, թե ինչպիսին է այդ ճանապարհը, այդ «ես»-ը։ Չէ՞ որ եթե հիվանդ է «ես»-ը, փաստերը չեն կարող առողջ մեկնաբանություն ստանալ։ Քիչ չեն օրինակները, երբ գրողն իր հոգու ստվերոտ կողմերն է նկարագրում։ Ուրեմն որոշողը «ես»-ի միջով երևույթի անցնելը չէ, այլ ինքը «ես»-ը, սրա հասարակական վիճակը։ Ասել, թե մեր բանաստեղծները միշտ էլ մնացել են «ես»-ի անաղարտ դիրքերում, չեն չարաշահել դրա իրավունքները, ճիշտ չէր լինի։ Այո, մեծ մտքերի ու հույզերի հեռաստաններ բացող երկերի կողքին, հաճախ հանդիպում ենք այնպիսի տողերի, որոնց մեջ մարդու սիրտը շատ է ասեղնահարվում։ Երբեմն այն տպավորությունն ես ստանում, թե պոետը նպատակ է դրել ստուգելու մարդկային սրտի վշտադիմացկունությունը։ Թող մեզ այնպես չհասկանան, որ մենք դեմ ենք տխրության, վշտի երգերին և ցանկանում ենք վարդագույն շղարշ նետել մարդու ներաշխարհին։ Բնավ։ Իր գրույցներից մեկի ժամանակ Լունաչարսկին այն կարծիքն է հայտնել, որ «մարդու ամբողջ կյանքը, ողջ անձնականը, բոլոր խնդություններն ու տառապանքները հատուկ իմաստ են ստանում միայն այն դեպքում, երբ կյանքը ծառայում է ընդհանուրի շահին, բարձրագույն նպատակին»։ Այս խոսքերն ասվել են Վերա Իմբերի հետևյալ տողերի կապակցությամբ. կարևորն այն է, որ ոչ մի վիշտ, ոչ մի այգաբաց զուր չկորչի իմ երկրի տնտեսության մեջ։ Կարելի է նույնիսկ վշտին ստիպել աշխատել սոցիալիզմի օգտին։

Փորձեք այս շինարար վշտի տեսանկյունից գնահատել լիրիկական շատ ու շատ բանաստեղծություններ, որ տպագրվել են մամուլի էջերում և ժողովածուներում։ Դրանցից շատերը չեն դիմանա ոչ միայն ձևի, այլև բովանդակության քննությանը։ Գևորգ Էմինը գրել է մի բանաստեղծություն (Տխուր պատմություն), որտեղ տրված է նույնիսկ կեղծ ժպիտների հանդեպ հալվող սիրո պատկերը.

Նա ինձ այնպես խոր ու խենթ է սիրում,
Որ պատրաստ է, իմ մի խոսքի սիրույն,
Զոհել ինձ կյանքն ու աշխարհը արար.
Իսկ ես, չոքած քո ծնկերի առաջ,
Իրար եմ խառնում արցունք ու ճառաչ
Քո, թեկուզ մի... կեղծ, ժպիտի ճամար:

Իրոք, բավականին տխուր պատմություն է, եթե չասենք՝ ողբերգական։ Լավ է, որ հերոսը զգում է իր վիճակի անտանելիությունը, որին հաջորդելու է այրող ամոթի զգացումը՝ արցունքն ու ճառաչանքը զուր վատնելու համար։



Բայց հատկապես երիտասարդ պոետների մոտ նկատվում է սիրո տառապանքի ինչ-որ մոլուցք։ Թվում է, թե հեղինակը զգացմունքների ողջ ուժը մխացող վերքերի, տանջող սպասումների, դառն մերժումների մեջ է տեսնում. բավական է վերանան դրանք, և սիրտը կցվի... դատարկությամբ։

Ամեն ինչ ներող, ամեն վիճակի նկատմամբ անտարբեր սերը չի կարող թեթևացնել մարդու հոգին։ Այդ մեծ զգացումը նույնպես անողոք լինելու իրավունք է նվաճել։ Թերևս այդ անողոքության մեջ են նաև նրա բարությունն ու քնքշությունը։ Կա սիրո արտահայտման մի այլ ձև ևս, որ արդեն շաբլոնի է վերածվում։ Պոետը ոչ թե պատկերում է երջանիկ, հարուստ սերը, այլ թվարկում է այն բոլոր դառնությունները, որ կարող են իրեն բաժին ընկնել, եթե սիրածը հանկարծ բռնի ուրիշի տան ճամփան։ Հնարանքն ինքնին մերժելի չէ, բայց ինչո՞ւ չդիմել նաև սիրո անկրկնելի վեհության պատկերմանը, չստեղծել կնոջ պատկերն իր զգացմունքների սրբությամբ, մարդկային հասարակության այնքան ջերմություն ու իմաստություն բերող իր սրտով։ Վաղարշակ Նորենցը, վերհիշելով իր առաջին սերը, ասել է. քող փառք լինի քեզ, ընդմիշտ աշխարհում: Հիրավի, իսկական սերը արժանի է փառքի, որովհետև ընդունակ է սրբությունների։

Վերջին տասնամյակում գրած բանաստեղծություններում առավել ցայտուն արտահայտություն են ստացել Ալազանի, Մահարու ու Նորենցի հայրենասիրական զգացումները։ Ուշագրավն այն է, որ նրանք երբեք անհատի պաշտամունքը չգարձրին մեր ապրած դարաշրջանի միակ գույնը, նրա բարոյական արատները չվերագրեցին ժողովրդի անցած փառավոր ուղուն։ Հոգևոր այդ առողջությունը դրական ազդեցություն ունեցավ հատկապես գրական երիտասարդության վրա, որը գաղափարական տաք պայքարի պահերին մերթ գայթակղվում էր ծայրահեղություններով։

Եթե դառնություններ տեսնողն իր սրբազան պարտքն է համարում գրկել բոլոր սերերը աշխարհի, ապրողներին բաժանելով երգի վարդեր (Մահարի), սիրտը բացել բոլորին, ժողովրդին, լավին, նորին (Ալազան), ամեն բարի մոտ, ամեն ծառի մոտ տեսնել իր հոգու թևերի հետքը, արձագանքներն իր կարոտի կանչի և հարազատ սրտերի (Նորենց), ապա դառնությունները չտանողը իրավունք չունի դիմելու այդ անծանոթ, նույնիսկ վտանգավոր թեմային։ Անհնար է չապրած, չուսումնասիրված նյութին դիմելիս պահպանել բարձր պատասխանատվության զգացումը գեղարվեստական խոսքի նկատմամբ։ Իսկ այդ, իր հերթին, կարող է հանգեցնել էժանագին սենսացիայի, մանավանդ, եթե կրքոտ է այդ անպատասխանատվությունը։ Ճիշտ է նկատել ընկեր Խրուշչովը. «Ով ուժ ունի իր մեջ, ով վստահ է իր տաղանդին և համոզված է, որ աքսորի թեմային դիմելիս կարող է հայրենասիրական ոգով հագեցած, պարտիային ու ժողովրդին օգնող երկ ստեղծել, թող գրի»։ Դրա դրական օրինակներն ունենք նաև հայ գրականության մեջ։

Ժամանակի հետ կարող է վիճել, թելադրել նրան իր կամքը միայն մեծ մտքերի ու հույզերի պոետը։ Մարքսիզմի կլասիկներն արժեքավոր դիտողություններ են արել այդ մասին։ Հերոսի չափից դուրս ինքնախոհումը նրանք մերժել են որպես ռեալիստական արվեստին խորթ երևույթ, պաշտպանել այն հերոսին, որն իր արարքների շարժառիթները քաղում է ո՛չ թե անհատական ընչին իղձերից, այլ այն պատմական ընթացքից, որի մասնակիցն է։

Ընդգծելով գրողի հասարակական քաղաքական դիրքի կարևորությունը՝

Էնգելսը գրել է. «Գրականության ի՞նչ գործն է, թե այս կամ այն գրողը օժտված է տաղանդի փշրանքով, որ նա երբեմն աննշան բաներ է ստեղծում, եթե ընդհանրապես նա ոչինչ է, եթե նրա ողջ ուղղությունը, նրա գրական խառնվածքը, ստեղծագործությունն ընդհանրապես ոչինչ չարժեն»։ Որքա՜ն արդիական են հնչում Էնգելսի տողերը հատկապես այսօր, երբ ֆորմալիզմի կողմնակիցները փորձում են տաղանդն առանձնացնել գաղափարից, արվեստը տանել բոլորին հավասարապես ծառայող (առանց դասակարգային շահերի) վտանգավոր ճանապարհով, մարդկային զգացումները զրկել իրենց իսկական նշանակությունից։

Այդ կապակցությամբ արժե հիշատակել Մարքսի սպանիչ խոսքերը, ուղղված գերմանական ռեակցիոն փիլիսոփա Դաումերի դեմ, որի կարծիքով «արցունքների կոչումը՝ աչքի մակերեսը խոնավ վիճակում պահելն է»։ Նմանօրինակ մի հեգնանքի են արժանացել նաև այսօրվա աբստրակցիոնիստները ընկ. Խրուշչովի Բարձր գաղափարայնությունը և գեղարվեստական վարպետությունը սովետական գրականության և արվեստի մեծ ուժն են ճառում։ «Ինձ վրա ուժեղ տպավորություն թողեց ձմեռային անտառը. նոր տարվա նախօրյակին, որքա՜ն գեղեցիկ էր այն... Ես իմ ուղեկիցներին ասացի. նայեցեք այս եղևնիներին, նրանց զարդարանքին, այս ձյան փաթիլներին, որոնք խաղում և փայլում են արևի ճառագայթների տակ, որքան զարմանալիորեն գեղեցիկ է սա։ Բայց ահա մոդեռնիստները, աբստրակցիոնիստներն ուզում են այդ եղևնիները նկարել գլխիվայր և ասում են, որ դա նորը, առաջադիմականն է արվեստի մեջ»։

Ինչպես տեսնում ենք, երկու դեպքում էլ դատապարտվում է կյանքն իր բուն իմաստից զրկելու փորձը, բարձր է գնահատվում մարդկային հույզը, գեղեցկով հիանալու նրա բնական իրավունքը։ Մենք չենք վախենում ռեալիստական արվեստի բարձր պահանջների տեսանկյունից մոտենալ այն գեղեցկին, որ մարդու մեջ տեսել և մարմնավորել են սովետական հայ պոետները։ Նրանց լավագույն բանաստեղծություններում գեղեցիկը պատմություն ստեղծող մարդու առաքինությունն է, միաժամանակ նրա պայքարի զենքը ընդդեմ սոցիալական այլանդակի։ Փորձենք վերլուծել Հ. Սահյանի հետևյալ տողերը.

Քո գլխի վերև ծածանվող ամպի
Թավշյա ստվերով
Սրբիր ճակատիդ քրտինքը մաքուր
Եվ նորից գնա,
Որ դիմավորես մայրամուտը քո
Լեռան գագաթին...
Լեռան գագաթին օրն ուշ է մթնում։

Ահա ձեզ բնության մի տեսարան, որն ամբողջովին հագեցած է մարդկայինով։ Ու թեև դեպի մայրամուտ ձգվող ճանապարհի մասին է խոսքը, բայց հերոսի կյանքի նպատակը արևածագի անմահության համար զոհվելն է, գագաթների երգով կյանքից հեռանալը։ Երբ գրողը երջանկություն է համարում իր պարտքի հատուցումը, երբ նրան մտահոգում է իր տալիքը և ոչ թե ստանալիքը, բնական է հնչում բարձունքների կարոտը, տքնությամբ երկարելու և վերջին շունչը լույսին զոհաբերելու ցանկությունը։ Այդպիսի խոհերից ձուլված բանաստեղծական տողն, իրոք, կարող է դառնալ ճանապարհի հաց և հավատարիմ ընկեր։



Ուզում ենք մի ընդհանուր դիտողություն անել Արշ. Սարոյանին, Վահագն Կարենցին, Արտ. Պողոսյանին և Ար. Մարգարյանին։ Ինչ-որ հանգստություն է նկատվում նրանց բանաստեղծություններում, դանդաղ են գործի դնում իրենց տաղանդի հնարավորությունները։ Խոսքը ոչ թե խառնվածքի, այլ կյանքի գլխավոր զարկերակներին ավելի մոտ լինելու, անհանգստանալու և անհանգստացնելու արվեստը կատարելագործելու մասին է։ Մեկը կարող է մերթընդմերթ լավ բանաստեղծություններ գրել, բայց դուրս լինել ժամանակից։ Այդ լավը պետք է մշտական ակունք ունենա, որոշակի ուղղություն և մշտական անելիք։ Բոլորի հետ միասին այդ լավը պարտավոր է գրականություն դառնալ և գրականություն պահել։

Կա դիպուկ մի արտահայտություն—ընտրության արվեստ։ Եթե բանաստեղծը չի տիրապետում դրան, չգիտե, թե ինչ երևույթներ են արտահայտում ժամանակի ոգին, նա չի կարող ստեղծել այն ծանրակշիռ ու գեղեցիկ խոսքը, որին կարելի լինի վստահել մարդու գեղարվեստական դաստիարակությունը։ Դաստիարակել նշանակում է ցույց տալ այն ուղին, որը տանում է ո՛չ թե դեպի ճահիճ, դեպի մեկուսացում, այլ դեպի կյանք, դեպի դժվարին վերելք։ Այստեղ սոսկ տաղանդով ոչինչ անել չես կարող։ Այն պետք է հագեցած լինի պարտիականությամբ։ Պարտիականությունը տաղանդի հավելված չէ, այլ տաղանդ սնող գաղափարական հող։ Երկուսի ներդաշնակության դեպքում միայն գրողը կկարողանա գրական մնայուն արժեքներ ստեղծել, հավատարիմ մնալով դարաշրջանի ճշմարտությանը։ Բայց դարաշրջանը օրացույց չէ, որի մեկ թերթիկի պոկվելուն մյուսը մնում է անտարբեր։ Նա ունի «իր թերթիկները», որ հաճախ գալիս են հնից, չեն կորցրել իրենց արդիականությունը և դեռ երկար զբաղեցնելու են սերունդների միտքն ու սիրտը։ Բայց կարո՞ղ է գրողի արտահայտած ճշմարտությունը հագեցած չլինել որոշակի իդեալով— ոչ, չի կարող։ Ապրել առանց իդեալի, նշանակում է գերի մնալ կյանքի մանրուքներին։ Իսկ մանրուքը կյանքի ճշմարտության վատ հաղորդիչ է։

Կյանքը վեհ է ճշմարտության մեջ, իսկ մարդը՝ այդ ճշմարտության համար պայքարելիս։ Սովետահայ պոեզիան, հավատարիմ սոցիալիստական արվեստի հումանիստական իր տրադիցիաներին, շարունակում է կրքոտությամբ պատկերել այն մեծ նորը, որով մեր ժողովուրդը հպարտանում է այսօր, հպարտանալու է վաղը և ընդմիշտ։



## Նշանավոր ՏԱՐԵԹՎԵՐ



# ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՋԻՆՎՈՐԱԳՐՎԱԾԸ

**Վ. Վ. Մայակովսկու ծննդյան 70-ամյակի առթիվ**

ԿՈՄՈՒՆԻԶՄԻ պայծառ ու հոյակապ շենքի կառուցման, սովետական մարդկանց գաղափարական դաստիարակության գործում հսկայական դեր խաղալու է կոչված ռևոլյուցիոն մեծ պաթոսով տոգորված գրականությունը, որը ծնում է քաղաքացիական վեհ մտքեր ու զգացմունքներ, մարդկանց ոգեշնչում պայքարելու հանուն իրենց երջանկության:

«Սովետական գրականության և արվեստի ականավոր ներկայացուցիչների ստեղծագործությունը, — ասում է Ն. Ս. Խրուշչովը,— նրանց մեծ ծառայությունն է ժողովրդի հանդեպ, իր հայրենիքին արվեստագետի ծառայության ոգեշնչող օրինակը:

Ուրիշ ի՞նչը կարող է ավելի մեծ գոհունակություն պատճառել արվեստագետին, քան այն գիտակցությունը, որ իր տաղանդն ամբողջովին նվիրված է կոմունիզմի կառուցման համար ժողովրդի պայքարին, որ նրա ստեղծագործությունն ընդունվել ու բարձր է գնահատվել ժողովրդի կողմից»:

Վլադիմիր Մայակովսկին հենց այն արվեստագետներից է, որոնց ստեղծագործությունները մեծապես նպաստում են կոմունիզմի համար մղվող պայքարին: Սեփական ստեղծագործության մեջ նա արտահայտել է իր համակ սերը մարդու, ժողովրդի, ռևոլյուցիայի, կոմունիզմի հանդեպ: Տրիբուն բանաստեղծի ստեղծագործական ժառանգությունը ժամանակի ընթացքում չի կորցրել իր հզոր ուժը և այսօր էլ մեծ ազդեցություն ունի սովետական գրականության զարգացման վրա: Մայակովսկու պոեզիայի քաղաքական պաթոսը, նրա գեղարվեստական մտածողության պատմականությունը, բանաստեղծի բարոյական ու գեղագիտական իդեալը, արդիականության պրոբլեմի հանճարեղ լուծումը կապվում են այն առավել հրատապ հարցերը, որոնք այսօր առանձնապես հետաքրքրում են տաղանդավոր բանաստեղծի ստեղծագործության հետազոտողներին, նրա մեծաթիվ երկրպագուներին և գրական հետևորդներին:

***

ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ռևոլյուցիան հզոր խթան հանդիսացավ մեր երկրի ազատագրված ժողովուրդների գրականության ծաղկման ու զարգացման համար: Մայակովսկին մեկն էր նրանցից, ովքեր ռևոլյուցիայի առաջին օրերից պայքարի մեջ մտան հեղափոխիչ, ներգործուն արվեստ ստեղծելու համար: Շահագործման կարգերի դեմ ուղղված վերացական կոչերից, որոնք բնորոշ էին բանաստեղծի ստեղծագործության նախահոկտեմբերյան շրջանին, նա հանգում է սոցիալիզմի համար մասսաների քաղաքական պայքարում իր արվեստի սենքով մասնակցելու անհրաժեշտության գիտակցմանը: Հոկտեմբերից հետո գրած առաջին իսկ բանաստեղծություններում Մայակովսկին արտահայտում է սոցիալական ճնշումից ազատագրված մարդու բերկրանքը: 1918 թվականին գրած Ռևոլյուցիայի ներբողում բանաստեղծը գովերգում է սոցիալիստական ռևոլյուցիայի կապմակերպող, ստեղծարար ուժը:

Առաջին խոշոր ստեղծագործությունը, որտեղ առավել լրիվությամբ է դրսևորված Մայակովսկու խոր հավատը ռևոլյուցիայի և նրա ապագայի նկատմամբ, եղավ Միստերիա-բուֆը: «Միստերիան» ռևոլյուցիայի հերոսական իրադարձությունների այլաբանական պատկերումն է. «բուֆը»՝ հին, մեռնող աշխարհի երգիծական պատկերումը: Միստերիա-բուֆ պիեսը նվիրված է ռևոլյուցիայի հիմնավորմանը՝ որպես հասարակության զարգացման բովանդակ պատմության օրինաչափ արդյունքի: Երկու հակամարտ դասակարգերի՝ պրոլետարիատի և բուրժուազիայի բախումը, նրանց անհաշտ պայքարը կազմում են «Միստերիայի» գաղափարական հիմքը: Պիեսը սկզբից մինչև վերջ շոշափում է հրատապ հարցեր. կենդանի ձևով, մերթ երգիծանքով, մերթ պաթետիկորեն այն արձագանքում է արդիականության ամենատարբեր երևույթներին:

Չնայած պիեսի մասին եղած հիացական կարծիքներին, Մայակովսկին հասկանում էր, որ այն շատ թերություններ ունի: Իր առաջին խմբագրությամբ «Միստերիան» հագեցած էր ռևոլյուցիոն պայքարի և կոմունայի վերաբերյալ որոշ վերացական պատկերացումների պաթոսով: Պիեսում նկարագրված իրադարձությունները զուրկ էին ազգային-պատմական որոշակիությունից, իսկ աշխատավորների կերպարները՝ կոնկրետությունից:

1920 թվականի աշնանը Մայակովսկին սկսում է երկրորդ անգամ խմբագրել պիեսը: Առաջին խմբագրությունից դեն նետելով «բանաստեղծական ավելորդությունները», նա պիեսին տվեց գաղափարական-սոցիալական մեծ հնչեղություն: Երկրի ներքաղաքական և տնտեսական կյանքի իրադարձություններն ու մանրամասները պատկերելով, Մայակովսկին այնտեղ տալիս է միջազգային կյանքի փաստերի ու երևույթների բնութագիրը: Միստերիա-բուֆը Մայակովսկու յուրատեսակ արձագանքն էր Վ. Ի. Լենինի խոսքերի՝ «ավելի մեծ ուշադրություն այն բանին, թե ինչպես բանվորական ու գյուղացիական մասսան իրականում կառուցում է մի նոր բան իր առօրյա աշխատանքում (Երկեր, հատ. 28, էջ 109): «Միստերիայի» երկրորդ խմբագրությունը մի առաջընթաց քայլ էր Մայակովսկու՝ որպես առաջավոր սովետական բանաստեղծի ձևավորվելու ճանապարհին:

***

ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ կարգացումը, սովետական ժողովրդի առջև ծառացած գործնական խնդիրների լայնությունն ու բարդությունը նոր պահանջներ էին առաջադրում երիտասարդ ռեսպուբլիկայի գրողներին:

1919 թվականին՝ այդ դժվարին տարին, երբ երկրի վրա մահացու վտանգ էր կախվել, Մայակովսկին մտնում է Ռուսաստանի հեռագրական գործակալություն (ՌՈՍՏԱ) իբրև «ՌՈՍՏԱ-ի պատուհանների» աշխատակից: Նա ՌՈՍՏԱ եկավ գիտակցորեն հաշվի առնելով երկրում տիրող խիստ լարված իրադրությունը, որը պահանջում էր մոբիլիզացնել ժողովրդի նյութական ու հոգևոր ուժերի բոլոր տեսակները:

Կոմունիստական պարտիան միշտ էլ մեծ նշանակություն է տվել աշխատավորների շրջանում ծավալվող մասսայական-քաղաքական ագիտացիային: Լենինը և արվեստը հոդվածում Ա. Վ. Լունաչարսկին վերհիշում է. «Դեռ 18 թվականին Վլադիմիր Իլյիչը ինձ կանչեց և հայտարարեց, որ պետք է առաջ մղել արվեստը որպես ագիտացիոն միջոց... Նախ, նրա կարծիքով, հարկավոր էր շենքերը, ցանկապատերը և մյուս այն վայրերը, որտեղ սովորաբար աֆիշներ են լինում, զարդարել ռևոլյուցիոն մեծ մակագրություններով» («Լենինը գրականության մասին» ժողովածու, էջ 283—284, ռուս. հրատ.):

Մայակովսկին այն մարդկանց հետ էր, ովքեր օգնում էին պարտիային՝ «առաջ մղելու արվեստը որպես ագիտացիոն միջոց»: Բանաստեղծը բացառիկ զգայուն էր պարտիայի քաղաքականության նկատմամբ: Աշխատելով ՌՈՍՏԱ-ում, Մայակովսկին ապրում էր այդ քաղաքականությամբ, գլխովին ընկղմվում նրա մեջ, պլակատների համար գրած իր տեքստերով և ագիտ-բանաստեղծություններով նպաստում էր դրա կիրառմանը: ՌՈՍՏԱ-ում Մայակովսկին հսկայական ու բազմազան աշխատանք էր կատարում, փաստորեն ղեկավարում էր գեղարվեստական կոլեկտիվի ամբողջ աշխատանքը, առաջարկում էր թեմաներ, հորինում տեքստեր: Ագիտբանաստեղծությունների թեմաները խիստ բազմազան էին՝ ցանքի կամպանիան, խոլերայի դեմ մղվող պայքարը, վառելիքի խնայողությունը և այլն: «ՌՈՍՏԱ-ի պատուհանները» բանաստեղծի համար նախ և առաջ նոր, սոցիալիստական իրականության համար մղվող պայքարին ակտիվ մասնակցելու միջոց էին: Դրա հետ մեկտեղ դրանք ռևոլյուցիոն պայքարը խիստ ցայտուն արտացոլող արվեստի ձևերից մեկն էին: Մայակովսկին ինքն է ընդգծում «ՌՈՍՏԱ-ի պատուհանների» ճանաչողական նշանակությունը. «...դա ռևոլյուցիոն պայքարի դժվարագույն եռամյակի արձանագրությունն է, մի պայքար, որը վերարտադրված է գույների բծերով և լոզունգների կնգոցով»:

Երկուս ու կես տարի Մայակովսկին աշխատեց ՌՈՍՏԱ-ում, ընդ որում, իր սեփական բառերով

յուրաքանչյուր տողը, ինչի մասին էլ գրած լինես, հարկավոր լինի սովետական իշխանությանը, օգնի նրան»:

Պոեզիայի դերի մասին բանաստեղծի նոր պատկերացման հետ է կապված նաև ստեղծագործությունների թեմաների վերաբերյալ պոետի պատկերացումը: Մայակովսկին սովետական իրականությունը բացահայտում է որպես նոր պոեզիայի մի անսպառ թեմա: Նա առաջնորդվում էր այն բանով, որ մեր կյանքում ամեն մի երևույթ պետք է իր արտացոլումը գտնի ստեղծագործությունների մեջ:

Պարտիայի քաղաքականությունը և բոլշևիկյան մամուլը բանաստեղծին օգնեցին հասկանալու երկրում տիրող դրությունը և գալու այն գիտակցության, որ հենց կոմունիստական գաղափարայնությունն է արվեստի ներգործուն ուժի աղբյուրը, իսկ պատկերման օբյեկտը ռևոլյուցիոն իրականությունը: Սովետական կինոյի քաղաքականության շուրջ տեղի ունեցած վիճաբանության ժամանակ (1927 թ. հոկտեմբերի 15-ին) նա նշեց. «Ասում են, ահա Մայակովսկին բանաստեղծ է, դե ուրեմն թող նստի իր բանաստեղծական նստարանին... Ես թքել եմ իմ բանաստեղծ լինելու վրա: Ես բանաստեղծ չեմ, այլ նախ և առաջ մարդ, որ իր գրիչը ծառայեցնում է, նկատեցեք, ծառայեցնում է այսօրվա ժամին, իսկական իրականությանը և այն կիրառող՝ սովետական կառավարությանն ու պարտիային»: Պոեզիայի նկատմամբ Մայակովսկու հենց այդպիսի վերաբերմունքը նրան օգնեց տալու ռևոլյուցիոն, ստեղծարար մեծ պաթոսով տոգորված ստեղծագործություններ, այնպիսի երկեր, որոնք, ինչպես նշեց Ն. Ս. Խրուշչովը, թափանցում են մարդու հոգու և գիտակցության խորքերը, հարուցում են քաղաքական վեհ կգացմունքներ և մարդկանց երջանկության պայքարին նվիրվելու վճռականություն:

Մայակովսկին իր ողջ ստեղծագործությունը նվիրաբերեց պարտիային, բանվոր դասակարգին, աշխատավորներին, սովետական հասարակությանը: «Վլադիմիր Իլյիչ Լենին» պոեմում ամենից լավ է ասված այդ մասին՝

Իմ ողջ
գնգուն ուժը պոետական
քե՛զ եմ նվիրում,
գրոհող դասակարգ:

Այս խոսքերում արտահայտված է բանաստեղծի սյատրաստակամությունը ամեն ինչ նվիրելու պրոլետարիատի մեծ գործին: Դա բացահայտ բանավեճ է Սերգեյ Եսենինի հետ, որը գրում էր.

Ողջ հոգիս կնվիրեմ հոկտեմբերին ու մայիսին,
Բայց քնարս սիրած չեմ տա:



Մայակովսկու բանաստեղծություններում մենք մշտապես զգում ենք նրա մերվածությունը հարազատ ժողովրդի իսկական պայքարին, նրա գալիք գործերին:

Մայակովսկին սովետական ընթերցողի աչքում վերականգնեց ռուս պոեզիայի՝ ժողովրդական առաջավոր ռեալիստական պոեզիայի ընդհատված տրադիցիան: Ահա թե ինչու նրա անունը հաստատուն տեղ գրավեց ռուս պոեզիայի այնպիսի մեծ վարպետների շարքում, որպիսիք են՝ Պուշկինը, Լերմոնտովը, Նեկրասովը: Իր գրական գործունեության մեջ Մայակովսկին ելնում էր ռուս և համաշխարհային դասական գրականության նվաճումներից: Փքուն, ներքին բովանդակությունից կուրկ պոեզիայի դեմ բանաստեղծի պայքարը միաժամանակ պայքար էր աշխարհը սոցիալիստական հիմունքներով վերակառուցելու հսկոր կենքերից մեկի համար:

***

Սովետական երիտասարդ ռեսպուբլիկայի կարգացման կուզընթաց Մայակովսկու հոգում հասունանում էր ռևոլյուցիային նվիրված բանաստեղծական մեծ կտավի գործ ստեղծելու երականքը: Դեռևս 1926 թվականի գարնանը նա գրում էր, որ ունի «Հոկտեմբերի վերաբերյալ մի հսկայական թեմա»: Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի 9-րդ տարեդարձի առթիվ Մայակովսկին գրում է **Հոկտեմբեր 1917—1926** բանաստեղծությունը, որի մեջ գտնում ենք ապագա պոեմում պատկերված շատ կերպարներ ու իրադարձություններ: Այս ամենը վկայում է, որ Մայակովսկին երկար ժամանակ իր բանաստեղծական մտածողության մեջ կերտում էր հոկտեմբերյան պոեմի հիմնական կերպարները, թեև այն գրեց համեմատաբար կարճ ժամանակամիջոցում (1927 թվականի փետրվար—օգոստոս):

**Լավ է** պոեմը նվիրված է Հոկտեմբերյան սոցիալիստական ռևոլյուցիայի պատմական իրադարձություններին: Պոեմի կենտրոնում ռևոլյուցիոն ժողովուրդն է, որի կերպարը ստեղծվում է բնակչության ամենատարբեր խավերի ու խմբերի ներկայացուցիչներից: Բանաստեղծը նրանում առանձնացնում է առավել գիտակից ու կազմակերպված մասը՝ բանվոր դասակարգին ու նրա դաշնակից գյուղացիությանը: Ռևոլյուցիայի կազմակերպող սկզբունքը պոեմի մեջ մարմնավորվում է կոմունիստական պարտիայի և նրա առաջնորդ Լենինի կերպարների միջոցով:

Պատմական փաստերի հետ մեկտեղ **Լավ է** պոեմում էական տեղ են գրավում նաև ռևոլյուցիայի վերաբերյալ Մայակովսկու անձնական վկայությունները, ռևոլյուցիոն դարաշրջանի հետ կապված նրա խոհերն ու ապրումները: Պատմական իրադարձությունների, կոմունիստական պարտիայի կողմից ղեկավարվող սովետական ժողովրդի փառավոր գործերի մասին պատմվում է այնպես, ինչպես անձամբ վերապրածի մասին: «Դա եղել է մարտիկների ու երկրի հետ, կամ ուղղակի իմ սրտում», ասում է Մայակովսկին նախաբանում: Բանաստեղծը մեր առջև հառնում է ո՛չ միայն որպես ռևոլյուցիոն իրադարձությունների երջանիկ վկա, այլև որպես դրանց ակտիվ մասնակից:

Մայակովսկին **Լավ է** պոեմը անվանել է «աղետների, հաղթանակների, առօրյայի երգ»: Այս բնորոշումը շատ ճիշտ է արտահայտում պոեմի բովանդակությունը, որտեղ արտացոլված են ո՛չ միայն սովետական ժողովրդի մեծ հաղթանակները, այլև նրա կրած ձախորդությունները, ցույց է տրված աշխատանքային առօրյան:

**Լավ է** պոեմը չգերազանցված նմուշ է այն բանի, թե ինչպես կարելի է մեծագույն հերոիկան, տաղանդի թափով բացահայտվող վիթխարի հեռանկարները զուգորդել հեղինակի տեսած իրադարձությունների ամենաճշգրիտ, շոշափելի պատկերման հետ:

***

Ռևոլյուցիայի և հայրենիքի թեման Մայակովսկու պոեզիայում իմի է ձուլվում: Բանաստեղծը գտնում է, որ այն ամենը, ինչ գեղեցիկ է, հոյակապ, ելնում է սոցիալիստական իրականությունից, ռևոլյուցիայից: Ռևոլյուցիան մարմնավորում է ամեն ինչ, որովհետև նրա իդեալների իրականացումից կախված է ո՛չ թե մի մարդու, այլ ամբողջ մարդկության երջանկությունը:

Կյանքում և արվեստի մեջ գեղեցկի չափանիշը բանաստեղծի համար դառնում է կոմունիստական վաղը, որին նա նվիրում է շատ բանաստեղծություններ: Խոսելով ինտերվենտների դեմ մղվող պայքարի դժվարության, տնտեսական քայքայման ծանրության, սովի ու զրկանքների մասին, բանաստեղծը ժողովրդին հիշեցնում է մեր պայքարի մեծ, նվիրական նպատակը՝ կոմունիզմը, որի արևը լուսավորում է մեր առաջընթացի ուղին:

Պայքարելով նորի, կոմունիստական հաղթանակի համար, պարտիային օգնելով մարդկանց դաստիարակության գործում, Մայակովսկին կերտել է այն մարդկանց սքանչելի կերպարները, որոնցից օրինակ պետք է վերցնի մեր երիտասարդությունը, որն ամեն ինչ նվիրել է ռևոլյուցիայի մեծ գործին: Դա անմահ Լենինն է: Դա Ֆելիքս Ձերժինսկին է: Դրանք այն մարդիկ են, որոնք բարոյական ամենավեհ հատկությունների մարմնացումն են: Հարազատ երկրում սոցիալիստական շինարարության բախտի նկատմամբ կենսական շահագրգռվածությունն է բնորոշ այդ մարդկանց համար: Երկրի կողմից լուծվող կարևոր պրոբլեմներին պետական մոտեցում ունենալը, իրականության նըկատմամբ ակտիվ վերաբերմունքը ներհատուկ են Մայակովսկու երգած նոր աշխարհի մարդկանց:

Աշխատավոր ժողովրդի հերոսությունն ու անձնազոհությունը Մայակովսկու կողմից գնահատվել ու երգվել են ըստ արժանվույն: Ընդ որում, նա իր ստեղծագործությունների համար հերոս էր ընտրում հիանալի ու, միևնույն ժամանակ, հասարակ, ռեալ մարդկանց: Մայակովսկին անձամբ ճանաչում էր պարտիային անսահման նվիրված բազմաթիվ սովետական հայրենասերների: Նա իր բանաստեղծական պարտքն էր համարում ստեղծագործաբար մարմնավորել սովետական իրականության հերոսների կերպարները:

Մայակովսկու յուրաքանչյուր բանաստեղծության հիմքում դրված է որևէ իրադարձություն, իրականության այս կամ այն փաստը: Բայց այդ փաստը միշտ իմաստավորված ձևով է հանդես գալիս երկրի ամբողջ կյանքի ֆոնի վրա: Մայակովսկին կարողանում էր ընտրել և կուտակել հենց այն փաստերը, որոնք առավել լիակատարությամբ էին արտացոլում մեր առաջընթացը դեպի կոմունիզմ:

Այն ամենը, ինչով ապրում էր երկիրը, Մայակովսկու հիմնական, կենսական գործն էր: Տնտեսական և կուլտուրական ճակատում տարված ամեն մի հաղթանակ, ամեն նվաճում խորապես հուզում էին բանաստեղծին, նրա մեջ պահանջ հարուցում տեսածն արտացոլելու իր ստեղծագործության մեջ, ցույց տալու սովետական նոր հրաշալի մարդկանց:

Իրականության խոր ըմբռնումը և նրա ռևոլյուցիոն վերափոխմանը ակտիվ մասնակցություն ցույց տալը, իր ստեղծագործությամբ դարաշրջանի առաջավոր գաղափարների գիտակցական ու հետևողական պրոպագանդումը բնորոշում են Մայակովսկու պոեզիան:

Սովետական իրականությանը մեծ տեղ է հատկացվում այն բանաստեղծություններում, որոնք Մայակովսկին գրել է այլ երկրներում կատարած ճանապարհորդությունների ժամանակ: Լինելով արտասահմանում, բանաստեղծը հպարտանում էր այն գիտակցությամբ, որ ինքը սովետների երկրի քաղաքացին է:

Կոմունիզմի ուղին հարթող իր հայրենիքի հպարտությամբ առ լեցուն, Մայակովսկին շատ բանաստեղծություններ է գրել: Դա առանձնապես վառ կերպով է դրսևորվել Ամերիկայի վերաբերյալ բանաստեղծություններում: Բրուկլինի կամուրջը բանաստեղծության մեջ Մայակովսկին ամերիկյան գովաբանված տեխնիկային, որի նպատակն է «արտասահմանի աչքին թոզ փչել», հակադրում է իր հայրենիքի ինդուստրիալ բնանկարը: Ամերիկացիները զարմանում են բանաստեղծության մեջ

ամերիկյան բիզնեսմեններին նա հակադրում է սովետական հրաշալի աշխատավորներին, որոնց չի կարելի գայթակղեցնել դոլարով:

Արտասահմանում, հանդես գալով ամերիկյան ժողովրդի առջև, Մայակովսկին հաստատում էր սովետների երկրի, նրա խաղաղասիրական արտաքին քաղաքականության գերազանցությունը իմպերիալիստական Ամերիկայի արատավոր հասարակական կացութաձևի և ագրեսիվ քաղաքականության նկատմամբ:

Մայակովսկու կապիտալիստական Արևմուտքի մասին գրած բանաստեղծություններում մեկ ապշեցնում է, ամենից առաջ՝ բանաստեղծի անհատականությունը՝ գաղափարական արտասովոր ամբողջականության և քաղաքական կրքոտության, նոր հոգեբանության տեր այդ մարդու անհատականությունը: Մայակովսկու դիրքը դարձավ սովետական այն բոլոր գրողների դիրքը, որոնք հետագայում գրեցին կապիտալիստական աշխարհի մասին: Այդ բուրժուական աշխարհի հանդեպ սոցիալիզմի վճռական գերազանցության, ճնշվածների և շահագործվողների հետ ինտերնացիոնալ համերաշխության, ռևոլյուցիոն հումանիզմի դիրքն է:

Մահվանից քիչ առաջ Մայակովսկին գրեց իր նշանավոր բանաստեղծությունը **Սովետական պասպորտի մասին**, որը սովետական հայրենասիրության զգացմունքի կլասիկ արտահայտությունն էր:

Ռևոլյուցիայի, սովետական իրականության մասին Մայակովսկու բանաստեղծություններն այսօր էլ հնչում են այնպես խրոխտ, այնպես ճշմարտացի, որն ավելի է շեշտում դրանց պարտիական նպատակասլացությունն ու գեղարվեստական բարձր վարպետությունը:

ԹԱՄԱՐԱ ՊԱՊՅԱՆ




Կոմունիստական պարտիա: Կա՞ն արդյոք դրանից ավելի սիրելի ու մտերիմ բառեր: Ես իմ կյանքի ողջ իմաստը գտնում եմ լենինյան պարտիային հավատարիմ ծառայելու մեջ, պարտիա, որ բոլոր փորձություններից պատվով է դուրս բերել մեր ժողովրդին և այժմ նրան տանում է դեպի կոմունիզմի հաղթանակը, նա մեզ սովորեցնում է պայքարել, հաղթել:

...Հորս չեմ հիշում: Նա ռազմաճակատ գնաց, երբ ես երեք տարեկան էի: Գնաց ու չվերադարձավ: Երբ ինձ ասում են, որ նա կոմունիստ էր, մտածում եմ՝ ուրեմն իսկական մարդ էր: Ես հպարտանում եմ նրանով և ձգտում եմ հայրենիքի համար լինել նրա պես հավատարիմ զավակ:

Չեմ թաքցնում, զինվորական ծառայությունն ինձ ծանր էր թվում: Բայց լավ մարդիկ ինձ սովորեցրին հաղթահարել դժվարությունները, համառորեն քայլել նպատակին ընդառաջ: Նրանք կոմունիստներ էին: Ես միշտ երախտագիտությամբ կհիշեմ նրանց: Միշտ սիրով կհիշեմ այն լավ մարդկանց, ովքեր օգնեցին ինձ՝ գտնելու իմ տեղը կյանքում: Ես անչափ շնորհակալ եմ նրանցից: Իմ կյանքի ամենաերջանիկ և ամենաուրախալի օրը կմնա այն օրը, երբ ինձ ընդունեցին մեր հերոսական ու փառապանծ կոմունիստական պարտիայի շարքերը:

Անչա՜փ երջանիկ եմ:

Չեմ խնայի ուժերս, իսկ անհրաժեշտության դեպքում նաև կյանքս, որպեսզի արդարացնեմ իմ նկատմամբ ցուցաբերված մեծ վստահությունը: Միշտ և ամեն ինչում կլինեմ մեր սքանչելի ապագայի ակտիվ կառուցողը, կպայքարեմ այնպես, ինչպես սովորեցնում է մեզ Սովետական Միության կոմունիստական պարտիայի **նոյակապ ծրագիրը:**

Կրտսեր սերժանտ՝ ՎԼԱԴԻՄԻՐ ՂՈՒԿԱՍՅԱՆ
Քաղ. Վիլնյուս

## ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ԱՆՇԵՂՈՐԵՆ ԿԻՐԱՌԵԼ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ԼԵՆԻՆՅԱՆ ՍԿԶԲՈՒՆՔՆԵՐԸ

Խ. ԴԱՆԻԵԼՅԱՆ

*Սովետական պետականության ստեղծումից հետո, առաջին տարիների փորձից ելնելով, Վ. Ի. Լենինը մշակեց պետական կառավարման սկզբունքները, նշեց պետական ապարատի զարգացման ու կատարելագործման ուղիները: Վերջին ժամանակաշրջանում և, հատկապես, ՍՄԿՊ XX համագումարից հետո անցած տարիներին, պարտիան մեծ ուշադրություն է հատկացնում պետական ապարատի աշխատանքի կազմակերպմանը, ճկունացմանն ու բարելավմանը: Խորտակելով գործի նկատմամբ գերատեսչական-բյուրոկրատական մոտեցման բազմաթիվ հնացած ձևեր, պարտիան վերականգնեց ու զարգացնում է պետական կյանքի լենինյան սկզբունքները:*

*Սովետական ապարատի ճկուն ու հստակ աշխատանքի լավագույն պայմանը Վ. Ի. Լենինը համարում էր* կադրերի ճիշտ ընտրությունը, ընդունակությունների *ու* կարողությունների *համապատասխան՝ մարդկանց* տեղաբաշխումը, աշխատանքի *ճիշտ* բաժանումը *և դիմազրկության վերացումը:*

*Վերջին տարիներին մեր ռեսպուբլիկայում ակնառու է կադրերի ընտրության ու տեղաբաշխման և, հատկապես, երիտասարդ կադրերի առաջքաշման ուղղությամբ կատարված աշխատանքը: Պարտիական, սովետական և տնտեսական ղեկավար աշխատանքի գլուխ են անցել պատրաստված, ձեռներեց ու մարդկանց կազմակերպելու կարողությամբ օժտված հազարավոր մարդիկ, տաղանդավոր կազմակերպիչներ:*

*Սակայն մեր առօրյա կյանքից կարելի է բերել փաստեր, երբ կադրերի սխալ ընտրության հետևանքով հրամանատարական պոստեր են առաջ քաշվում քաղաքական ու գործարար անհրաժեշտ հատկանիշներ չունեցող, հաճախ աշխատանքում տապալված մարդիկ: Այսպես. տարիներ շարունակ առևտրական կազմակերպություններում ղեկավար պաշտոն էր վարում Կ. Աբրահամյանը: 1959 թվականին ապրանքաշրջանառության պլանավորման կարգը կոպիտ կերպով խախտելու և ապօրինի կերպով աշխատակիցներին պրոգրեսիվ-պրեմիալ վարձատրություն տալու համար պետական վերահսկողության հանձնաժողովի որոշմամբ Աբրահամյանին հայտարարվում է խիստ նկատողություն և առևտրի մինիստրությանն առաջարկվում է ազատել նրան գրաված պաշտոնից: Սակայն 1959 թվականի հուլիսին նա կրկին նշանակվում է ղեկավար աշխատանքի, իսկ 1960 թվականին նշանակվում է Հայանտառշինառի կառավարիչ: Այստեղ ևս Աբրահամյանը թույլ է տալիս ֆոնդային կարգապահության խախտումներ, հովանավորում վստահություն չներշնչող անձանց և պայման-*

ներ ստեղծում չարաշահումների համար: Միայն 1962 թվականին, աշխատանքը լիովին ձախողելուց հետո, նա հեռացվում է աշխատանքից:

Վերջերս պարտիայի շարքերից վտարվեց Երարդաի նախկին դիրեկտոր Հ. Ավալյանը: 1952 թվականին Ավալյանն առևտրի կանոնները խախտելու համար ազատվել էր Երարդաի դիրեկտորի՝ առևտրի գծով տեղակալի պաշտոնից և փոխադրվել ավելի ցածր աշխատանքի: Սակայն 1958 թվականին առաջ էր քաշվել, դարձել Լենինյան շրջանի ունիվերմագի դիրեկտոր, իսկ 1960 թվականի ամռանը կրկին նշանակվել Երարդաի դիրեկտոր:

Հիմնարկը՝ մեծ է թե փոքր, ծառայողը՝ շարքային է թե ղեկավար, պետք է իմանա իր դերը, իր տեղը, իր անելիքները: Պետք է իմանա, որ գործի համար ինքը պատասխանատվություն է կրում: Առանց այդ պահանջի անթերի կատարման հնարավոր չէ հաստատել կարգ ու կանոն:

«Կառավարման բոլոր հարցերի կոլեգիալ քննությանն ու վճռմանը սովետական հիմնարկություններում,— գրել է Վ. Ի. Լենինը,— պետք է հարակցի սովետական ամեն մի պաշտոնի մեջ գտնվող անձերից յ ո ւ ր ա ք ա ն չ յ ո ւ ր ի ամենաճշգրիտ պատասխանատվության սահմանումը, պատասխանատվություն պարզ ու անբեկանելի գծված որոշ առաջադրությունների և պրակտիկ աշխատանքների կատարման համար» (Երկեր, հատ. 28, էջ 448):

Լենինը ստեղծագործական աշխատանքի գլխավոր թշնամին համարում էր բյուրոկրատիզմը և քաշքշուկը: Թերևս ոչ ոք այնպես անզիջում ու անողոք չի եղել բյուրոկրատիզմի ու քաշքշուկի նկատմամբ, ինչպես նա:

Երբ հարցը վերաբերում էր քաշքշուկին, բյուրոկրատիզմին, անկարգապահությանը, առհասարակ օրինականության խախտմանը՝ Լենինը ոչ ոքի չէր խնայում: Շատ ուսանելի է հետևյալ փաստը: Վոլխովի հիդրոէլեկտրակայանի շինարարության գլխավոր ինժեներ, պրոֆ. Գ. Օ. Գրաֆտիոն գրավոր դիմել էր Արդարադատության ժողկոմատին, որ մի շարք հիմնարկություններ բյուրոկրատական վերաբերմունք ունեն Վոլխովստրոյի նկատմամբ: Արդարադատության ժողկոմատը լրջորեն չէր վերաբերվել դիմումին և ընթացք չէր տվել: Վ. Ի. Լենինը, իմանալով այդ մասին, գրում է՝

«Իմ տպավորությունն այն է, որ Արդժողկոմատն այդ հարցին վերաբերվում է զուտ ձևականորեն, այսինքն արմատապես սխալ:

Հարկավոր է՝

1. այդ գործը մտցնել դատարան.

2. շշպրել մեղավորներին և՛ մամուլում, և՛ խիստ պատժով.

3. դատավորներին ձգել Կենտկոմի միջոցով, որպեսզի քաշքշուկի համար պատժեն ավելի խիստ.

4. կազմակերպել Մոսկվայի ժողովրդական դատավորների, տրիբունալների անդամների և այլն խորհրդակցություն՝ քաշքշուկի դեմ պայքարելու հաջող միջոցառումներ մշակելու համար» (Եր.կեր, հատ. 35, էջ 561):

Մի ուրիշ անգամ, երբ Լենինը իմացավ, որ պահեստներում տարիներ շարունակ ընկած են և չեն օգտագործվում արտասահմանից բերված մեքենաները, զայրացավ և կարգադրեց գտնել մեղավորներին ու դատի տալ:

Բյուրոկրատիզմի ու քաշքշուկի դեմ գործարար պայքարի միջոցներից մեկը Լենինը համարում էր կատարման ստուգումը: Գաղտնիք չէ, որ շատ հաճախ ընդունվում են լավ որոշումներ, սակայն դրանք մնում են անկատար:

Երբ ընդունվում է որոշումը, այն պետք է անպայման կենսագործվի: Այդ



հանգամանքն ունի ո՛չ միայն տնտեսական, քաղաքական, այլև մեծ չափով դաստիարակչական նշանակություն: Եվ, իսկապես, ի՞նչ կարող է սովորել երիտասարդ բանվորը, կոլտնտեսականը, մասնագետը, երբ մասնակցում է ժողովին, որի որոշումը չի կիրառվում: Այդ մեծ վնաս է հասցնում մեր կադրերի և, հատկապես, երիտասարդների դաստիարակությանը: Սովորաբար, տարվա սկզբին գործարաններում, ֆաբրիկաներում, կոլտնտեսություններում, սովխոզներում մեծ խանդավառությամբ պարտավորություններ են ընդունում, որոնցից շատերը հրապարակվում են մամուլում: Երբ ստուգվում է այդ պարտավորությունների կատարումը, ապա հաճախ պարզվում է, որ դրանց մի մասը չի կատարվել: Այսպես. ռեսպուբլիկայի Ժողտնտխորհրդի 40 գործարաններ ու ֆաբրիկաներ 1963 թ. առաջին եռամսյակում չկատարեցին ո՛չ միայն իրենց ստանձնած սոցիալիստական պարտավորությունները, այլև պետական առաջադրանքը. Նրանք երկրին չտվին ավելի քան երեք միլիոն ռուբլու արտադրանք: Օրինակ, Երևանի մահուդի-նուրբ գործվածքեղենի կոմբինատի ղեկավարությունն անհրաժեշտ միջոցառումների չդիմեց՝ ապահովելու կոլեկտիվի պարտավորությունների կատարումը, որի հետևանքով թերակատարվեցին առաջին եռամսյակի պլանները: Մինչդեռ ամեն ռեալ որոշում և պարտավորություն պետք է կատարել:

Պարտիական առանձին օրգաններ, մինիստրություններ, գերատեսչություններ, որոնք պարտավոր են սիստեմատիկաբար ստուգել պարտավորությունների կատարման ընթացքը, թերանում են: Հաճախ արդյունավետ օգնությունը փոխարինվում է զանազան որոշումներով, «պահանջում են», «ուշադրություն են հրավիրում», «համարում են անթույլատրելի» և հետո՝ «պարտավորեցնում», «խիստ նախազգուշացնում» են և այլն: Ստուգումների առթիվ որոշումներ գրելուն օրեր, հաճախ շաբաթներ են նվիրում, որոնք, սակայն, երբեմն մնում են անկատար:

Անիմաստ ժողովների և բյուրոկրատիզմի մասին Վ. Մայակովսկու գրած մի ոտանավորը շատ էր դուր եկել Իլյիչին. «...վաղուց 'է ես այդպիսի հաճույք չէի զգացել քաղաքական և վարչական տեսակետից: Իր բանաստեղծության մեջ նա սարսափելի ծաղրում է նիստերը ...Չգիտեմ, պոեզիայի տեսակետից ինչպե՛ս, բայց քաղաքականության տեսակետից երաշխավորում եմ, որ այդ միանգամայն ճիշտ է» (Երկեր, հատ. 33, էջ 260—261):

Լենինն իր առաջին տեղակալ Ցյուրուպային գրել է. «Ձեր աշխատանքի ծանրության կենտրոնը պետք է լինի մեր արգահատելի-բյուրոկրատական աշխատանքի հենց այդ վերափոխումը, պայքարը բյուրոկրատիզմի և քաշքշուկի դեմ, կատարման ստուգումը» (Երկեր, հատ. 35, էջ 577—578):

Վ. Ի. Լենինը բազմիցս ընդգծել է պարտիական ու պետական որոշումների կատարման ստուգման կարևորությունը. «Ստուգել մարդկանց և ստուգել գործի փաստական կատարումը — ա՛յս է, դարձյալ ա՛յս է, միայն ա՛յս է այժմ ամբողջ աշխատանքի, ամբողջ քաղաքականության մեխը»:

Գործի փաստական կատարման ստուգումը մոբիլիզացնում է մարդկանց, ապարատը դարձնում կուռ: Քիչ չեն դեպքեր, երբ լավ, շատ լավ աշխատող մարդն անգամ, վերահսկողության բացակայության դեպքում, կամաց-կամաց թուլացնում է իր աշխատանքի տեմպը և մի օր էլ համարվում է վատ աշխատող: Սակայն Լենինը, հսկայական նշանակություն տալով կատարման ստուգմանը, բոլորովին այն կարծիքին չէր, որ ստուգելիս պետք է փնտրել միայն

թերությունները, արձանագրել և դրանով էլ ավարտել գործը։ Ստուգման հիմնական նպատակն է բացահայտել սխալները և ցույց տալ այդ սխալները ծնող պատճառները և, որ գլխավորն է, մշակել միջոցառումներ սխալներն ու թերությունները վերացնելու համար, սովորեցնել մարդկանց աշխատել։ Երբեք չի կարելի մոռանալ լենինյան այն ցուցումը, թե ստուգողի խնդիրն է «ո՛չ միայն, նույնիսկ ո՛չ այնքան «որսալ», «մերկացնել» որքան ուղղել կարողանալ»։

Լենինը պահանջում էր ամուր կապ հաստատել պետական ապարատի և ժողովրդական մասսաների հետ։ Այդ խնդրի լուծումը պահանջում է ապարատի ճկունություն, դիմումների, բողոքների արագ ընթացք, պետական որոշումների անշեղ կատարում։ Վ. Ի. Լենինի պահանջով 1918 թվականին, Սովետների VI արտակարգ համագումարը հատուկ որոշում ընդունեց և պարտավորեցրեց բոլոր հիմնարկներին ճշտությամբ կիրառել ընդունված օրենքներն ու որոշումները։

Լենինի պահանջով բողոքների ու դիմումների, մարդկանց ընդունելություն էին կատարում նաև կիրակի ու տոն օրերին, ընդ որում առանց անցագրի, առանց արգելքի։ Լենինը թանկ էր գնահատում ինչպես իր, այնպես էլ ուրիշների ժամանակը։ Այդ իսկ պատճառով, երբ որևէ մեկին ընդունելու ժամ էր նշանակում, ընդունում էր ճիշտ ժամին, իսկ երբ որևէ պատճառով հնարավոր չէր լինում այդ, անձամբ զանգահարում և նոր ժամ էր նշանակում։ Նա խիստ զայրանում էր, երբ Ժողկոմսովետի նիստերին հրավիրվածները գալիս, երկար սպասում էին, մինչև իրենց վերաբերյալ հարցը քննվեր։ Այդ առթիվ 1921 թ. հոկտեմբերի 13-ին Ժողկոմսովետի և ԱՊԽ-ի գործերի կառավարչին Լենինը գրել է.

«Այժմ զեկուցողները հրավեր են ստանում ընդհանրապես նիստի համար և ժամերով սպասում են։

Դա այլանդակություն է և վայրենություն։

Հարկավոր է հասնել այն բանին, որպեսզի զեկուցողները կանչվեն մի որոշակի ժամի... կարելի է, պետք է հասնել այն բանին, որ զեկուցողները 15 րոպեից ավելի չսպասեն» (Երկեր, հատ. 35, էջ 565)։ Լենինի այդ պահանջը այժմեական է և մեր օրերի համար։

Եթե այն ծանր տարիներին, երբ չկային կադրեր, անհրաժեշտ հնարավորություն և հարմարություններ, Լենինն այդքան խիստ էր, ինչու այժմ ամբողջ սրությամբ չպետք է դրվի այդ հարցը։ Այժմ բոլոր հնարավորությունները կան, բայց դժբախտաբար կան հիմնարկ-ձեռնարկություններ, մինիստրություններ, որտեղ մարդկանց ընդունելության գործը կարգավորված չէ։ Հաճախ խախտվում են ընդունելության ժամերն ու օրերը։ Այդպիսի երևույթները ո՛չ միայն արդարացի զայրույթ են առաջացնում մարդկանց շրջանում, այլև հակադաստիարակչական նշանակություն են ունենում։

Վ. Ի. Լենինը հատուկ խստությամբ էր վերաբերվում պարտիական ու պետական ապարատի, պաշտոնատար անձանց կարգապահության խախտումներին։ Այդ իսկ պատճառով, նրա պահանջով, հատուկ հաշվառում էր կատարվում այն նամակների ու դիմումների, որոնք վերաբերում էին պարտիական ու պետական կարգապահության խախտումներին։

Ռևոլյուցիոն օրինականության խախտման մասին եղած դիմումներին Լենինն անմիջականորեն ընթացք էր տալիս, անձամբ հետևում ստուգմանը։ Նա հոգ էր տանում, որ կարիերիստները չկարողանան զրպարտել ազնիվ ու



բարեխիղճ աշխատողներին։ Այդպիսի մի դեպքի կապակցությամբ 1921 թվականի հուլիսի 30-ին Վ. Ի. Լենինը հարցում է անում Ֆ. Է. Ձերժինսկուց՝

«Ընկ. Ձերժինսկի, Դուք արդյոք գիտե՞ք այդ գործը։

Ինձ ասում են, որ այստեղ, հավանաբար, չարանենգ մատնություն է եղել, ինչ-որ վիրավորված կամ վրիժառու մարդկանց զրպարտություն։

Եթե դուք չգիտեք, հանձնարարեք հաղորդեն ինձ, թե ով (պատասխանատու ընկերներից լիովին վստահելի) լավ գիտե, անձամբ ուսումնասիրել է այդ ամբողջ գործը։

Խնդրում եմ — վերադարձնեք այն, համառոտ կարծիքով»։

Վ. Ի. Լենինը սովետական պետության ստեղծման առաջին օրերից հսկայական նշանակություն էր տալիս վարից վեր վերահսկողության և կատարման ստուգման կազմակերպմանը։ Նա գտնում էր, որ վերահսկողությունը պետք է լինի մշտական, հենվի աշխատավորական լայն զանգվածների վրա և պարտիայի ու պետության հուսալի գործիքը լինի կառավարման ամբողջ մեխանիզմի կատարելագործման ասպարեզում։

Լենինի ղեկավարությամբ մեր երկրում ստեղծվեց պարտիական-պետական վերահսկողության կուռ սիստեմ, որը պարտիայի ու պետության ձեռքին սուր զենք հանդիսացավ բյուրոկրատիզմի և քաշքշուկի սիրահարների, իշխանության չարաշահման, պորտաբույծների ու ժողովրդական բարիքը հափշտակողների դեմ մղվող պայքարում։

Պայքարը կապիտալիստական աշխարհից ժառանգություն ստացած այդ այլանդակ երևույթների դեմ Լենինը համարում էր ամբողջ ժողովրդի գործը։ Այդ իսկ պատճառով նա պահանջում էր «...պատասխանատվության կանչել այն պարտիական ընկերներին, որոնք ման են գալիս ու գանգատվում կամ անեկդոտներ պատմում այն մասին, թե այսինչ հիմնարկում այսպիսի ու այսպիսի գարշելիություն է կատարված, պատում են ամբողջ Մոսկվայում և անեկդոտներ են պատմում բյուրոկրատական պատահարների մասին։ Իսկ դուք, ընկերնե՛ր, գիտակից կոմունիստներ, ի՞նչ եք արել դրա դեմ պայքարելու համար» (Երկեր, հատ. 32, էջ 550)։

Այսպիսի փաստեր այժմ էլ կան։ Կան մարդիկ, որոնք զայրանում են բյուրոկրատիզմի, քաշքշուկի երևույթների դեմ, սակայն մատը-մատին չեն խփում այն վերացնելու համար։ Ավելին, հաճախ փողոցում կարգը խանգարող երիտասարդին մեծերից ոչ-ոք կարգի չի հրավիրում, մտածելով, թե իր գործը չէ։ Բայց երբ տեղը գա, այդ վատի մասին զայրույթով կխոսեն։ Ի՞նչ անուն տալ, երբ Հոկտեմբերյանի պահածոների գործարանում մի մեծ խումբ մարդիկ՝ դիրեկտոր Ե. Մարգարյանի գլխավորությամբ պետությանը 2 միլիոն ռուբլու վնաս են պատճառել, նրանք յուրացրել ու հափշտակել են 250 հազար ռուբլի։ Եվ այդ այն ժամանակ, երբ վերոհիշյալ գործարանում աշխատում են մեծ թվով կոմունիստներ, կոմերիտականներ, կա արհմիութենական կազմակերպություն, որոնք պարտավոր էին ժամանակին նկատել այդ ամենը, կանխել անտնտեսվարությունն ու հափշտակումները, սանձահարել անազնիվ մարդկանց։ Չարիքի դեմ համաժողովրդական պայքար է հարկավոր։ Ոչ ոք, հատկապես պատասխանատու անձինք, իրավունք չունեն անտարբեր մնալու, երբ խախտվում է սահմանված կարգը, երբ ոտնահարվում են օրենքները։

Մենք պետք է Լենինից սովորենք մարդկանց հետ աշխատելու հմտություն, կարողանանք դիտել և ուսումնասիրել ժողովրդի կյանքը, հենվել մարդկանց

վրա։ Մինչդեռ մեզ մոտ կան ձեռնարկությունների առանձին հրամանատարներ, որոնք միակողմանի են հասկանում միանձնյա ղեկավարության լենինյան սկզբունքը, այն դիտում են որպես վարչարարություն, հրամանների արձակում, արտադրության կառավարում առանց բանվորների, մասնագետների, ծառայողների ակտիվ մասնակցության։

Լենինը կարգապահ էր, խստապահանջ, առաջին հերթին՝ իր և ապա մյուսների նկատմամբ։ Սահմանված ոչ մի կարգ չէր խանգարում նա։ Բնորոշ է հետևյալ դեպքը։ Մի անգամ Լենինը տանը մոռանում է մի փաստաթուղթ, վերադառնում է, որ վերցնի. այդ ժամանակամիջոցում պահակը փոխված է լինում, և չճանաչելով Լենինին, թույլ չի տալիս ներս մտնել։ Նա ոչ մի խոսք չի ասում, իջնում է պարետատուն, անցաթուղթ վերցնում և մտնում իր աշխատասենյակը։ Երբ այդ մասին իմանում է Կրեմլի պահակապետը, բարկանում է կարմիրբանակայինի վրա. վերջինս գալիս է Լենինի մոտ՝ ներողություն խնդրելու։ Լենինը նրան պատասխանում է՝ ներողություն խնդրելու հարկ չկա, որովհետև ինքս եմ մեղավոր, որ անցաթուղթ չունեի։ Այս փոքրիկ փաստի մեջ անգամ երևում է Լենինի մեծությունը։

Հին բոլշևիկների հիշողությունների մեջ շատ սրտառուչ տեղեր կան Լենինի հետ կապված։ Նրանցից մեկն, օրինակ, պատմում է, որ Մոսկվայի քաղաքային սովետի նիստին, ընդմիջումներին դեպուտատներից յուրաքանչյուրին տալիս են մեկ բաժակ եփած ջուր առանց շաքարի և 100 գրամ սև հաց։ Դեպուտատները հերթի մեջ տեսնում են Լենինին։ Նրանցից մեկը մոտենում է նրան և ասում՝ Վլադիմիր Իլյիչ, ինչո՞ւ եք հերթի կանգնել, ձեզ համար կբերեն։ Նա պատասխանում է՝ ես նույնպես ձեզ նման դեպուտատ եմ և ոչ ավելին։

Սովետական իշխանության հաստատման առաջին իսկ օրից Լենինն անողոք կռիվ հայտարարեց կաշառակերության, պետական ունեցվածքը հափշտակողների և այլ չարիքների դեմ։ Այդ բնագավառում պարտիայի ձեռք բերած հաջողությունների հետ մեկտեղ, դեռ մինչև օրս էլ այդ զազրելի չարիքների (գողություն, կաշառակերություն) փաստեր կան։ Բավական է ասել, որ մեկ տարվա ընթացքում մեր ռեսպուբլիկայում, առևտրի մինիստրության և սպառողական կոոպերացիայի սիստեմում հափշտակումները կազմում են 422 հազար ռուբլի, կամ անտնտեսվարության պատճառով 1961—1962 թթ. սպառողական կոոպերացիայի սիստեմում թույլ են տրվել մեծ կորուստներ, որոնց գումարը կազմել է 1 միլիոն 27 հազար ռուբլի։ Այս տխուր երևույթները բացատրվում են նաև նրանով, որ թույլ է վերահսկողությունը։ Սիստեմատիկ ստուգումների դեպքում չարիքներն այդպիսի մեծ չափերի չեն հասնի։ Պարտիական-սովետական վերահսկողության կոմիտեները մեծ դեր ունեն կատարելու, որոնց օգնությամբ պետք է ոտքի հանել մասսաներին։ Չպետք է լինի աշխատանքի ոչ մի բնագավառ (հատկապես առևտրի, հասարակական սննդի, կոոպերացիայի) որը մասսաների հսկողության տակ չլինի։

Պարտիական-սովետական վերահսկողության կոմիտեի կատարած ստուգումները Երևան քաղաքի մսի վաճառման ցանցում բացահայտեցին խայտառակ բարքեր։ Ստուգումների առթիվ ընդունված որոշումներն ամբողջ ժողովուրդն ընդունեց մեծ գոհունակությամբ։

Մեր կարգերին խորթ, սովետական քաղաքացու արժանապատվությունը վիրավորող չարիք է նաև կաշառակերությունը։ Մերկացված թշնամուց կաշառք ընդունող պաշտոնատար անձն ավելի վատ է։ Նա իր այդ արարքով վարկաբեկում է մեր ապարատը, մեր մարդկանց։ Ահա թե ինչու Վ. Ի. Լենինը պահանջում էր պատժել ո՛չ միայն կաշառակերներին, այլև այն դատավորներին, որոնք մեղմ որոշում էին ընդունում կաշառակերների նկատմամբ։ Այդ առթիվ պարտիայի Կենտկոմին ուղղած նամակներից մեկում Լենինը գրել է.

«Խնդրում եմ օրակարգի մեջ մտցնել պարտիայի շարքերից վտարելու նրա այն անդամներին, որոնք լինելով 1918 թվականի մայիսի 2-ի՝ կաշառակերության վերաբերյալ դատավարության դատավորներ, կաշառք վերցնելը խոստովանելուց և ապացուցված համարելուց հետո, սահմանափակվել են կես տարի բանտարկությամբ։ Կաշառակերներին գնդակահարելու փոխարեն նման ծիծաղելի, թույլ ու փափուկ որոշումներ կայացնելը կոմունիստի և ռևոլյուցիոների համար ամոթալի վերաբերմունք է»։

ՍՄԿԿ Կենտկոմի Նոյեմբերյան պլենումում տված իր զեկուցման մեջ Ն. Ս. Խրուշչովը նշեց, որ միանգամայն անթույլատրելի է, որ առանձին պարտիական կոմիտեներ հանդուրժողաբար են վերաբերվում կոմունիստների կողմից պաշտոնի չարաշահումների փաստերին և, ավելին, երբեմն հովանավորում են նրանց, պաշտպանության տակ առնում։ Վ. Ի. Լենինը վճռականորեն դեմ էր իրավախախտողներին պաշտպանելուն միայն այն բանի համար, որ նրանք պարտիայի անդամ են։ 1922 թ. մարտի 18-ին քաղբյուրոյի անդամներին ուղղված նամակում նա խիստ դատապարտում էր հանցավոր գործողություններ կատարող կոմունիստներին պաշտպանելու փորձերը։ Մոսկվայի կոմիտեն,— գրել է Լենինը,—«փաստորեն ներողամտություն է ցուցաբերում այն հանցագործ կոմունիստների նկատմամբ, որոնց հարկավոր է կախել»։ Նա պահանջում էր «Հավաստել բոլոր Նահանգկոմներին, որ կոմունիստների պատասխանատվության «մեղմացման» իմաստով դատարանների վրա «ազդելու» ամենափոքրիկ փորձի համար իսկ Կենտկոմը կհեռացնի պարտիայից», որ «կոմունիստներին դատարանները պարտավոր են պատժել ավելի խստորեն, քան ոչ կոմունիստներին»։

Ն. Ս. Խրուշչովը, մեջ բերելով Վ. Ի. Լենինի այդ խոսքերը, ավելացնում է. «Մենք պետք է անշեղորեն առաջնորդվենք Վ. Ի. Լենինի այս ցուցումով, որ պարտիայի անդամները ոչ մի առավելություն և արտոնություն չունեն մնացած աշխատավորների հանդեպ, նրանք ունեն միայն ավելի մեծ պարտականություններ»։

Պետական ապարատը ճկունացնելու, էժանացնելու և բարելավելու նպատակով անհրաժեշտ է մեր բոլոր քաղաքացիներին ակտիվ մասնակից դարձնել պետության կառավարմանը, միլիոնավոր նոր աշխատավորներ պետք է անցնեն պետության կառավարման դպրոցը, զարգացնել հասարակական հիմունքներն աշխատանքում։ Բյուրոկրատիզմի, քաշքշուկի, չարաշահումների դեմ համաժողովրդական պայքար կազմակերպելու համար կարևոր նշանակություն ունի պարտիական-պետական վերահսկողության լենինյան սկզբունքի վերահաստատումն ու զարգացումը։ Ինչ խոսք, վերահսկողության և կատարման ստուգման ճիշտ դրվածքը մեծ չափով կօգնի կատարելագործելու պետական ղեկավարությունը, կամրապնդի պարտիայի կապերը աշխատավորների հետ, նրանց լայնորեն կներգրավի հասարակության գործերի կառավարմանը։



## ԺՈՂՈՎՐԴԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՊԼԱՆՆԵՐԻ ԿՈՈՐԴԻՆԱՑՈՒՄԸ ՊԼԱՆԱՎՈՐՄԱՆ ԲԱՐՁՐ ԷՏԱՊ Է

Հ. Ե. ԹՈՒՄԱՆՅԱՆ

Սոցիալիստական էկոնոմիկայի պլանային զարգացման մեջ դրսևորվում է տնտեսության սոցիալիստական սիստեմի մեծագույն առավելությունը տարերայնորեն զարգացող կապիտալիստական սիստեմի հանդեպ։ Արտադրության միջոցների և հասարակական աշխատանքի բաշխումը ժողովրդական տնտեսության ճյուղերի միջև, միևնույն երկրի ներսում և տարբեր երկրների միջև կապիտալիզմի օրոք իրականանում է տարերայնորեն և հասարակության պահանջմունքներից անկախ։ Այդ բաշխումն իրականանում է շուկայական գների մշտական տատանումների, կատաղի մրցակցության և կապիտալիզմի համար անխուսափելի գերարտադրության պարբերական տնտեսական ճգնաժամերի հիման վրա։

Արտադրողական ուժերի զարգացման մակարդակն ու արտադրության պրոցեսի հասարակական բնույթն իմպերիալիզմի պայմաններում պահանջում են արտադրության պլանային կարգավորում։ Սակայն յուրացման մասնավոր ձևը բացառում է նման կարգավորման հնարավորությունը. կապիտալիզմի արտադրական հարաբերությունները խանգարում են նման կարգավորմանը։ Ելքը մեկն է։ Սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակով և արտադրության միջոցների վրա հասարակական սեփականություն հաստատելով են միայն ստեղծվում պլանավորման համար քաղաքական ու տնտեսական նախադրյալներ։

Տնտեսական նոր պայմաններին համապատասխան առաջանում են նոր, միայն սոցիալիզմին հատուկ տնտեսական զարգացման օրենքներ, այդ թվում՝ պլանաչափ, պրոպորցիոնալ զարգացման օրենքը, որն ուղղակի հակակշիռ է կապիտալիզմին հատուկ մրցակցության և արտադրության անարխիայի օրենքին։ Այդ օրենքն էլ հենց ժողովրդական տնտեսության պլանավորման հնարավորություն է ընձեռում։

Սոցիալիստական պլանավորման առաջին երկիրը մեր հայրենիքն է՝ ՍՍՌՄ-ը։ Երկրորդ համաշխարհային պատերազմի ավարտով Եվրոպայի և Ասիայի մի շարք երկրներում իշխանությունն անցավ աշխատավորների ձեռքը և այդ երկրները կանգնեցին սոցիալիզմի կառուցման ուղու վրա։ Ստեղծվեց սոցիալիստական համաշխարհային սիստեմը, որի հզորացմամբ ժողովրդական տնտեսության պլանաչափ, պրոպորցիոնալ զարգացման օրենքի գործողության համար նոր, առավել ընդարձակ ասպարեզներ բացվեցին։



### I

ՍՄԿՊ XX համագումարը նշեց, որ մեր դարաշրջանի գլխավոր հատկանիշը մի երկրի շրջանակներից սոցիալիզմի դուրս գալը և համաշխարհային սիստեմի վերածվելն է։ Այժմ սոցիալիզմի համաշխարհային սիստեմը զբաղեցնում է բնական ռեսուրսներով հարուստ ավելի քան 35 միլիոն քառակուսի կիլոմետր տարածություն, որի վրա բնակվում է մեկ միլիարդից ավելի մարդ։ Սոցիալիստական երկրները տալիս են համաշխարհային արդյունաբերական արտադրանքի 37 տոկոսը։ Սոցիալիզմի համաշխարհային սիստեմը՝ դա ազատ, ինքնուրույն ժողովուրդների սոցիալիստական ու քաղաքական համագործակցությունն է։ Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի երկրներն ունեն ընդհանուր նպատակ, ընդհանուր շահեր, ուստի և միմյանց հետ զոդված են միջազգային սոցիալիստական համերաշխության սերտ կապերով։ Նրանց փոխադարձ հարաբերությունները խարսխված են պրոլետարական ինտերնացիոնալիզմի վեհ սկզբունքների վրա։

Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի մեջ մտնող երկրների զարգացման փորձը ցույց է տալիս, որ գնալով ավելի ու ավելի են մեծանում պլանավորման և, մասնավորապես, հեռանկարային պլանավորման դերն ու նշանակությունը։ Այդ երկրների էկոնոմիկայի զարգացման ներկա էտապում բացառիկ կարևորություն է ստանում սոցիալիստական արտադրությունն առավել արդյունավետ եղանակներով վարելը, այն հաշվով, որ տնտեսվեն ժողովրդական աշխատանքն ու նյութական միջոցները, իսկ դրան հնարավոր է հասնել ռացիոնալ համամասնություններ ստեղծելու միջոցով։

Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի զարգացումը միաժամանակ աշխատանքի սոցիալիստական միջազգային բաժանման խորացումն է, որը չի հանդուրժում սոցիալիստական երկրների մեկուսացած զարգացում, արտադրանքի այս կամ այն տեսակի նկատմամբ միայն տվյալ երկրի պահանջներն ու ռեսուրսները հաշվի առնելը։ Աշխատանքի միջազգային բաժանման փաստը հրամայաբար պահանջում է նկատի ունենալ սոցիալիստական մյուս երկրների արտադրության ծավալն ու պահանջները։ Այսպիսով, համամասնական զարգացման պրոբլեմը դուրս է գալիս մի երկրի սահմաններից և սկսում է իրականացվել սոցիալիստական բոլոր երկրների համատեղ ջանքերով։

Խոսքն այստեղ այն մասին է, որ համաշխարհային սոցիալիստական սիստեմի զարգացման պրոցեսում ապահովվի նրա մեջ մտնող երկրներից յուրաքանչյուրի համամասնությունը։ Իսկ դրան հասնելու հիմնական ուղին սոցիալիզմի լագերի երկրների զարգացման պլանները միմյանց հետ համաձայնեցնելն ու կոորդինացնելն է։ Սոցիալիստական արտադրական հարաբերությունները, որոնց հիմքում ընկած է արտադրության միջոցների հանրային սեփականությունը, թույլ են տալիս պլանաչափորեն որոշելու սոցիալիստական երկրների միջև աշխատանքի բաժանման գլխավոր ուղղությունները։ Աշխատանքի նման բաժանումն իրականացվում է ժողովրդատնտեսական պլանների կոորդինացման ճանապարհով, որը դրսևորվում է արտադրության միջազգային մասնագիտացման ու կոոպերացման, կապիտալ ներդրումների և գիտահետազոտական աշխատանքների ծրագրերի համաձայնեցման կոնկրետ ձևերով։

Սոցիալիստական երկրների զարգացման պլանների կոորդինացումն իրա-

կանացվում է տնտեսական փոխադարձ օգնության խորհրդի կողմից, որն ստեղծվել է 1949 թվականին և գործում է նրան մասնակցող պետությունների լիակատար իրավահավասարության սկզբունքով։ Տնտեսական փոխադարձ օգնության խորհրդի մեջ մտնում են՝ Ալբանիան, Բուլղարիան, Հունգարիան, Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկան, Լեհաստանը, Ռումինիան, ՍՍՌՄ-ը և Չեխոսլովակիան։ Որպես դիտորդներ խորհրդի աշխատանքին մասնակցում են՝ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի, Կորեական Ժողովրդադեմոկրատական Ռեսպուբլիկայի, Վիետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայի և Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկայի ներկայացուցիչները։

Սոցիալիստական երկրների ժողովրդատնտեսական պլանների կամավոր կոորդինացումը ժողովրդական տնտեսության պլանաչափ պրոպորցիոնալ զարգացման օրենքի դրսևորումն է։ Պլանաչափ զարգացման օրենքի օգտագործումը տնտեսության համաշխարհային սոցիալիստական սիստեմում նպաստում է այդ երկրների զարգացման միջև եղած անհամաչափությունների լիկվիդացմանը. այն իրականանում է առաջներում տնտեսապես ավելի թույլ երկրները բացառիկ բարձր տեմպերով զարգացնելու ճանապարհով։

Սոցիալիզմի լագերի երկրներն ըստ տնտեսական զարգացման աստիճանի բաժանվում են երեք խմբի։ Առաջին խմբի մեջ մտնում են՝ ՍՍՌՄ-ը, Չեխոսլովակիան, Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկան, Հունգարիան ու Լեհաստանը։ Երկրորդ խմբի մեջ՝ Բուլղարիան, Հարավսլավիան, Ռումինիան և Կորեական Ժողովրդական Դեմոկրատական Ռեսպուբլիկան։ Երրորդ խմբի մեջ՝ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան, Ալբանիան, Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկան և Վիետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկան։ Առաջին խմբի մեջ մտնող երկրներն առավել զարգացած երկրներ են, որոնց արդյունաբերության արտադրանքի տեսակարար կշիռը սոցիալիզմի համաշխարհային սիստեմի արտադրանքի ընդհանուր ծավալի մեջ ավելի բարձր է, քան բնակչության տեսակարար կշիռը։ Երկրորդ խմբի մեջ մտնում են միջին զարգացում ունեցողները, իսկ երրորդ խմբում՝ թույլ զարգացած երկրները։

Պետք է նկատել, որ գնալով ավելի ու ավելի են վերանում այն խոշոր տարբերությունները, որոնք գոյություն ունեին սոցիալիզմի համաշխարհային սիստեմի կազմավորման սկզբնական շրջանում։ Այսպես, եթե սոցիալիզմի լագերի առաջին խումբ երկրների տեսակարար կշիռը 1950 թվականի համաշխարհային սոցիալիստական սիստեմի արդյունաբերության արտադրանքի 90 տոկոսն էր կազմում, ապա 1960 թվականին այն իջավ 76-ի, միաժամանակ համապատասխանաբար բարձրացավ միջին և թույլ զարգացած երկրների արդյունաբերական արտադրանքի տեսակարար կշիռը։

Հատկանշական է, որ սոցիալիստական երկրները ոչ միայն տնտեսական զարգացման մակարդակով են տարբերվում իրարից, այլև հումքային և էներգետիկ տարբեր պաշարներ ունենալով։ Սակայն ամբողջապես վերցրած համաշխարհային սոցիալիստական սիստեմն ունի բոլոր անհրաժեշտ պայմանները վերամշակվող արդյունաբերությունը զարգացնելու համար։ Ահա այդ պայմաններում էլ աշխատանքի ռացիոնալ բաժանման և կոոպերացման ու մասնագիտացման հիման վրա հնարավոր է դառնում նպատակահարմար ձևով համաձայնեցնելով ընդհանուր ջանքերը՝ պլանների կոորդինացմամբ լուծել տնտեսական զարգացման հրատապ հարցերը։



## II

Կոորդինացնելով պլանները՝ սոցիալիստական սիստեմի երկրներն իրենց ընդհանուր շահերը զուգորդում են յուրաքանչյուրի ազգային էկոնոմիկայի պահանջների ու շահերի հետ։ Դրանով արտադրության միջազգային մասնագիտացումը սերտորեն շաղկապվում է սոցիալիստական առանձին երկրների էկոնոմիկայի կոմպլեքսային զարգացման հետ։ Դրա արտահայտությունը ամեն մի սոցիալիստական երկրում բազմաճյուղ էկոնոմիկա ստեղծելն է։ Սոցիալիստական սիստեմի յուրաքանչյուր երկրի էկոնոմիկայի զարգացման գրավականը սեփական մեքենաշինության ստեղծումն է, որով նա կկարողանա բավարարել իր ժողովրդական տնտեսության առաջատար ճյուղերի պահանջը։ Սակայն այդ ամենևին էլ չի նշանակում, թե սոցիալիզմի լագերի յուրաքանչյուր երկիր պետք է ստեղծի արդյունաբերության բոլոր ճյուղերը։ Նույնը կարելի է ասել և գյուղատնտեսության մասին։

Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի գոյության ու զարգացման պայմաններում, յուրաքանչյուր սոցիալիստական երկիր իր ջանքերը կենտրոնացնում է ժողովրդատնտեսական այնպիսի կոմպլեքսի ստեղծման վրա, որը ապահովելով այդ երկրի անընդմեջ զարգացումը, որոշում է տվյալ երկրի՝ որպես այդ սիստեմի օղակներից մեկի, դեմքն ու տեղը սոցիալիզմի համաշխարհային սիստեմում։

Ժողովրդատնտեսական պլանների փոխադարձ կոորդինացումը սոցիալիստական լագերի երկրներին թույլ է տալիս մասնագիտացման հիման վրա արտադրանքի փոխադարձ փոխանակմամբ լրացնել միմյանց։ Այստեղից էլ կոորդինացումը կատարվում է այն ճյուղերի զարգացման գծով, որոնք փոխադարձաբար միմյանց հետ կապված են աշխատանքի միջազգային բաժանման և մասնագիտացման շնորհիվ։

Արտադրության մասնագիտացումը սոցիալիզմի համաշխարհային սիստեմի երկրների միջև՝ նշանակում է մեկ կամ մի քանի սոցիալիստական երկրների ջանքերն ուղղել արտադրանքի այս կամ այն տեսակի թողարկման վրա՝ արտադրանքի տվյալ տեսակի նկատմամբ շահագրգռված երկրների պահանջները բավարարելու նպատակով։ Այստեղից հետևում է, որ սոցիալիստական երկրների մասնագիտացման հիմնական տիպը հանդիսանում է, այսպես կոչված՝ առարկայական մասնագիտացումը, այսինքն՝ մասնագիտացում արտադրության կողմից ավարտված առարկաների թողարկման գծով։

Տնտեսական շատ մեծ արդյունավետության է հասցնում մասնագիտացումը, հատկապես, ծանր ինդուստրիայի բնագավառում։ Զարգացման ներկա էտապում Տնտեսական փոխադարձ օգնության խորհուրդը կազմակերպում է աշխատանքի բաժանում խորհրդի կազմի մեջ մտնող երկրների միջև, հաշվի առնելով յուրաքանչյուր երկրի հումքային և էներգետիկ ռեսուրսները։ Դեռևս 1956 թվականին Տնտեսական փոխադարձ օգնության խորհրդի (ՏՓԽ) VII սեսիան հանձնարարականներ ընդունեց ավելի քան 600 խումբ մեքենաների արտադրության գծով երկրների մասնագիտացման մասին։ Այսպես, Փոխադարձ օգնության խորհրդի հանձնարարականի հիման վրա դոմնային հնոցների սարքավորումների արտադրությունն այժմ կենտրոնացված է ՍՍՌՄ-ում, Լեհաստանում և Չեխոսլովակիայում, ածխարդյունաբերության սարքավորման արտադրությունը՝ Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայում, Լեհաստանում,

ՍՍՌՄ-ում և Չեխոսլովակիայում, նավթային սարքավորումներինը՝ ՍՍՌՄ-ում, Ռումինիայում և Չեխոսլովակիայում, տրիկոտաժեղենի արտադրության սարքավորումներինը՝ Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայում և ՍՍՌՄ-ում։

Սոցիալիստական երկրների մասնագիտացումը լայն ասպարեզ է բացում արտադրանքի տվյալ տեսակի մասսայական թողարկման համար, իջեցնում է ինքնարժեքը, նպաստում մասնագիտացված ճյուղերի արտադրանքի փոխանակմանը ՏՓԽ-ի մասնակից երկրների միջև։ Շատ կարևոր նշանակություն ունի սոցիալիստական երկրների մասնագիտացումն ու կոոպերացումը քիմիական արդյունաբերության ասպարեզում։ Այն ելնում է բնական ու տնտեսական այն նախադրյալներից, որ ունի յուրաքանչյուր երկիր՝ քիմիական արդյունաբերությունը զարգացնելու համար։ Այսպես, օրինակ, հատուկ պլաստմասսաների և սինթետիկ նյութերի արտադրությունը պետք է զարգանա ՍՍՌՄ-ում, ԳԴՌ-ում, Չեխոսլովակիայում և Լեհաստանում։ Կալիական պարարտանյութեր արտադրվելու են միայն այն երկրներում, որոնք հարուստ են համապատասխան հումքով։ Սոցիալիստական երկրների միջև մասնագիտացումն իրականացվում է նաև քիմիական արտադրանքների մյուս կարևոր տեսակների գծով։

Սոցիալիստական համագործակցության, ժողովրդատնտեսական պլանների կոորդինացման լավագույն օրինակներից պետք է համարել աշխարհում ամենախոշոր նավթամուղի կառուցման գործում աշխատանքների բաժանումը ՍՍՌՄ-ի և Եվրոպայի ժողովրդա-դեմոկրատական երկրների միջև։ Պովոլժիեից մինչև Բելոռուսական Մոզիր քաղաքը և այնտեղից մինչև Լեհաստան, ԳԴՌ, Չեխոսլովակիա և Հունգարիա 5000 կիլոմետրանոց շառավիղների շինարարությունն իրականացվում է նավթ ստացող սոցիալիստական երկրների համատեղ ջանքերով՝ յուրաքանչյուրն իր տերիտորիայում գտնվող օբյեկտները կառուցելու պայմանով։

Նավթից ոչ պակաս կարևոր նշանակություն ունի Եվրոպայի ժողովրդադեմոկրատական երկրներն էլեկտրաէներգիայով ապահովելը։ Այդ նպատակով մասնակից երկրների էներգետիկ գծերը միացվում են մեկ ընդհանուր սիստեմի մեջ։

Սոցիալիզմի երկրների ժողովրդատնտեսական պլանները կոորդինացվում են նաև գյուղատնտեսության գծով։ Կոորդինացման նպատակն է ավելի արդյունավետ օգտագործել յուրաքանչյուր երկրի հողը, աճեցնել տվյալ երկրում առավել արդյունավետ կուլտուրաներ։ Դրա հետ մեկտեղ կոորդինացվում են նաև գյուղատնտեսական մեքենաշինության զարգացման, ինչպես նաև գյուղատնտեսական վնասատուների դեմ պայքարելու նպատակով քիմիական նյութերի թողարկման պլանները։

1959 թվականի վերջերին Տնտեսական փոխօգնության խորհրդի սեսիան քննության առավ խաղողի և պտուղների արտադրությունն ավելացնելու և դրանք թարմ ու վերամշակված ձևով ազգաբնակչությանը մատակարարելու հարցը։ Հաշվի առնվեց, որ պտուղներ, բանջարեղեն ու խաղող արտադրելու համար առավել նպաստավոր պայմաններ կան Բուլղարիայում, Հունգարիայում և Ռումինիայում։ ՏՓԽ-ի հանձնարարականների հիման վրա այդ երկրներն այժմ այն ձևով են մշակում իրենց պլանները, որ կարողանան դրանցով ապահովել ՍՍՌՄ-ին, Չեխոսլովակիային և ԳԴՌ-ին։



## III

Արդյունաբերության և գյուղատնտեսության մասնագիտացման ու կոոպերացման հիման վրա գնալով մեծ չափեր են ընդունում սոցիալիզմի երկրների միջև ապրանքափոխանակությունն ու առևտուրը։ Դրա վառ արտահայտությունն էր, օրինակ, ՏՓԽ-ի անդամ երկրների միջև 1950—1960 թվականներին փոխադրումների ծավալի կրկնապատկումը։ Այստեղից էլ անհրաժեշտ է դառնում տրանսպորտի տարբեր տեսակի աշխատանքների պլանների կոորդինացումը։ Նման համաձայնեցում գոյություն ունի երկաթուղային, ջրային և օդային տրանսպորտի գծով։

Սոցիալիստական շինարարության պրակտիկան ՍՍՌՄ-ում և սոցիալիստական սիստեմի մյուս երկրներում ակնհայտ ցույց տվեց, որ տեխնիկայի բուռն զարգացման պայմաններում պատմականորեն ձևավորված ազգային տնտեսության շրջանակները խիստ նեղ են։ Այդ փորձն ուղղակի ցույց է տալիս, թե որքան դժվար, իսկ երբեմն էլ ուղղակի անհնար է առանձին երկրների և, մասնավորապես, փոքր երկրների համար կազմակերպել ժամանակակից խոշոր արտադրություն, ներդնել առաջավոր տեխնոլոգիա՝ առանց միջազգային մասնագիտացման ու կոոպերացման։ Սոցիալիզմի և կոմունիզմի հզոր նյութատեխնիկական բազան առավել արդյունավետ ձևով հնարավոր է ստեղծել սոցիալիստական սիստեմի բոլոր երկրների տնտեսական ռեսուրսների օգտագործման պլանները կոորդինացնելու միջոցով միայն, նրանց բոլորի համատեղ ջանքերով։

Սոցիալիզմի ճամբարի երկրների ժողովրդատնտեսական զարգացման պլանների փոխադարձ կապակցումն ու միմյանց հետ համաձայնեցնելը հնարավորություն են տալիս համահարթել տնտեսական զարգացման գիծը և ապահովել ժողովրդական տնտեսության պլանաչափ զարգացումը սոցիալիզմի համաշխարհային սիստեմի մասշտաբով։ Ժողովրդատնտեսական պլանների կոորդինացումը հնարավորություն է տալիս մշտական համապատասխանություն պահպանել հասարակական պահանջմունքների և նյութական արտադրության զարգացման միջև, յուրաքանչյուր առանձին վերցրած երկրի ներսում և սոցիալիզմի ողջ ճամբարի մասշտաբով։

Ժողովրդատնտեսական ընթացիկ պլանների առաջադրանքները միմյանց հետ համաձայնեցնելուց բացի, սոցիալիստական երկրներում մեծ ուշադրություն է հատկացվում հեռանկարային պլանները միմյանց հետ համաձայնեցնելուն։ Հենց վերջերս ՍՍՌՄ-ը և Եվրոպայի սոցիալիստական պետությունները ձեռնամուխ եղան մշակելու և միմյանց հետ համաձայնեցնելու մինչև 1980 թվականն ընդգրկող հեռանկարային պլանները։ Այդպիսի երկարատև ժամանակաշրջանի համար պլաններ մշակել հնարավոր է միայն սոցիալիստական սիստեմի պայմաններում և վկայում է այդ սիստեմի պլանային էկոնոմիկայի ակնհայտ առավելությունների, պլանավորման կատարելագործման, նրա մակարդակի բարձրացման մասին։

Սոցիալիստական երկրների պլանների կոորդինացումը խարսխվում է հեռանկարային և ընթացիկ պլանների մշակման սկզբունքների և մեթոդոլոգիայի միասնության վրա, որոնց հիմքում ընկած է մարքս-լենինյան տնտեսական ուսմունքը և, մասնավորապես՝ սոցիալիստական ընդլայնված վերարտադրության տեսությունը։ Այդ տեսությունից ելնելով միայն հնարավոր է դառնում

*մշակել ժողովրդական պլանների ցուցանիշների միասնական սիստեմ, առանց որի հնարավոր չէ կոորդինացնել դրանք։ Դրա հետ մեկտեղ պլանների կոորդինացումը հնարավոր է դառնում նաև շնորհիվ պլանավորման մեջ հաշվեկշռային մեթոդի կիրառման։ Հաշվեկշռային մեթոդը հնարավորություն է տալիս անհրաժեշտ կապ ապահովել պահանջմունքների և դրանք ծածկելու աղբյուրների միջև։ Արտադրանքի կարևոր տեսակների հաշվեկշիռները մշակելու ճանապարհով հնարավոր է դառնում պարզել, թե սոցիալիստական սիստեմի մեջ մտնող տվյալ երկիրը արտադրանքի այս կամ այն տեսակից որքան կարող է մատակարարել սոցիալիստական սիստեմի մյուս երկրներին։*

*Նյութական հաշվեկշիռների մշակումը սոցիալիզմի սիստեմի մեջ մտնող յուրաքանչյուր երկրում միջոց է ժողովրդատնտեսական ճյուղերի միջև անհրաժեշտ համամասնություն սահմանելու, նախ՝ յուրաքանչյուր երկրի ներսում, ապա և սոցիալիզմի լագերի երկրների էկոնոմիկայի միջև։ Հաշվի առնելով սոցիալիզմի սիստեմի մեջ մտնող երկրների արդյունաբերական և գյուղատնտեսական մասնագիտացման հիմնական ուղղությունները՝ ՏՓԽ-ն սահմանում է պլանները կոորդինացնելու համար մշակվելիք նյութական հաշվեկշիռների անվանացանկն ըստ առանձին երկրների։*

*Դրա հետ միասին ժողովրդատնտեսական պլանների կոորդինացման գործում կարևոր նշանակություն են ստանում յուրաքանչյուր առանձին երկրի ռեզերվները։ Դրանց հաշվառումն անհրաժեշտ է, մասնավորապես, այս կամ այն դժվարությունները հաղթահարելու և տնտեսական զարգացման տեմպերը բարձրացնելու համար։ Պլանների կոորդինացումը հնարավորություն է տալիս կատարելագործելու պլանավորումը, որը միաժամանակ իրականանում է, մի կողմից՝ սոցիալիստական պլանավորման փորձի լայն փոխանակման ճանապարհով, իսկ մյուս կողմից՝ պլանավորման մեթոդների կատարելագործման մասին համատեղ հանձնարարականներ մշակելով։*

## IV

*Ժողովրդատնտեսական պլանների կոորդինացումը, լինելով պլանավորման զարգացման նոր, բարձր էտապը, միաժամանակ ապագա համաշխարհային կոմունիստական տնտեսության ընդհանուր պլանի սկզբնական աստիճանն է։ Սոցիալիստական երկրների պլանների կոորդինացումը միջազգային պլանավորման առաջին քայլն է։ Նրա զարգացումը տանում է դեպի միասնական պլանի մշակում, որը մարդկության պատմության մեջ կապահովի արտադրության ամենաբարձր արդյունավետությունը։*

*Անցնել սոցիալիզմի համաշխարհային սիստեմի համար մեկ միասնական պլանի մշակման, նշանակում է աստիճանաբար խորացնել ու զարգացնել պլ- լանների կոորդինացումը։ Այդ տեսակետից շատ կարևոր նշանակություն ունեն սոցիալիստական երկրներում երկարատև ժամանակաշրջանի համար մշակվող պլանները և դրանք միմյանց հետ համաձայնեցնելը։ Դա կհանդիսանա մի նոր և լուրջ քայլ սոցիալիստական երկրների համար մեկ միասնական պլան մշակելու ուղղությամբ։*

*Բանն այն է, որ 1961—1980 թվականների ժամանակաշրջանում սոցիալիստական երկրների արտադրողական ուժերի զարգացման և աշխատավորնե-*



*րի բարեկեցության մակարդակները, հատկապես, եվրոպական երկրներում այնքան կմոտենան իրար, որ պլանների քաղաքական ու տնտեսական խնդիրների միջև ըստ առանձին երկրների եղած տարբերությունները, որոնք այժմ բխում են նրանց պատմական ու ազգային առանձնահատկություններից, անհամեմատ կմեղմանան։ Դրա հետ միասին սոցիալիզմի երկրների միջև արտադրության մասնագիտացումն ու կոորդինացումն այնքան կզարգանան, որ յուրաքանչյուր երկրի պլանը մշակելու համար հարկ կլինի նախապես պարզել ու ճշտել սոցիալիստական երկրների ընդհանուր պահանջները։*

*Անցումը պլանների կոորդինացման ձևերից դեպի մի ընդհանուր միասնական պլանի մշակման դեռևս երկար ժամանակ կպահանջի։ Սկզբում այն կիրականանա ժողովրդական տնտեսության առանձին ճյուղերի գծով, ինչպես և սոցիալիզմի լագերի առանձին երկրներում։ Միաժամանակ լայնորեն կօգտագործվեն պլանավորման այն մեթոդները, որոնք այժմ կիրառվում են յուրաքանչյուր առանձին երկրի էկոնոմիկայի զարգացման պլանները մշակելիս։ Այսպես, օրինակ, խոշոր նշանակություն կունենան պլանների կոորդինացման ներկա աստիճանի հետագա զարգացումը, տնտեսական փոխօգնության խորհրդի մեջ մտնող երկրների արտադրանքի հիմնական տեսակների արտադրության ու սպառման բալանսների մշակումը և, դրա հիման վրա, արտադրության մեջ պետական կոոպերացման ու մասնագիտացման գլխավոր սխեմայի կազմումը։ Օրինակ, Տնտեսական փոխօգնության խորհրդի մեջ մտնող երկրների միասնական վառելիքա-էներգետիկ բալանսի մշակումը կօգնի առավել տնտեսավար լուծելու վառելիքի պրոբլեմը։ Վառելիքի արտադրությունը հիշյալ երկրներում 1960 թվականի 790 միլիոն տոննայից 1980 թվականին կհասնի մինչև 3400 միլիոն տոննայի (պայմանական)։ Այդ նույն ժամանակաշրջանում էլեկտրաէներգիայի արտադրությունը 407 միլիարդ կվտ-ժամից կհասնի 3500 մլրդ կվտ-ժամի։*

*Ազգային տնտեսության պլանավորման մեջ համաշխարհային պլանավորման էլեմենտների աճման տենդենցը կդրսևորվի նաև կուտակման և այդ կուտակումներն օգտագործելու պլանները միմյանց հետ համաձայնեցնելու ճանապարհով։ Այն ենթադրում է կապիտալ ներդրումների ազգային պլանների փոխադարձ համաձայնեցում, ինչպես նաև ընդհանուր օբյեկտներ կառուցելու համար միջոցների առանձնացում։*

*Կապիտալ ներդրումների պլանների կոորդինացումը կարևոր միջոց է սոցիալիստական կուտակումներն առավել արդյունավետ օգտագործելու համար։ Կապիտալ ներդրումների կոորդինացմամբ հնարավոր է դառնում որոշել կուտակման առավել արդյունավետ տեղաբաշխումը՝ հաշվի առնելով յուրաքանչյուր երկրի տնտեսական ու բնական պայմանների ձեռնտու օգտագործումը։ Այդ դեպքում առանձին երկրներ ազատվում են սակավ արդյունավետ ճյուղերում ներդրումներ կատարելուց, միջոցներ չեն փոշիացնում այնպիսի ձեռնարկությունների կառուցման վրա, որոնց արտադրանքը սակավ պահանջարկ ունի։ Այսպես, մի շարք տնտեսական պրոբլեմների լուծմամբ, որոնք կախված են գետերի կոմպլեքսային յուրացման, օգտակար հանածոներ մշակելու, տրանսպորտային մագիստրալների կառուցման ու վերակառուցման հետ, սոցիալիստական երկրներից պահանջում են կապիտալ ներդրումներ։ Համատեղ կառուցվող ձեռնարկությունների ֆինանսավորման համար գնալով պետք է աճի կուտակումների ծավալը, որն իր հերթին կախում ունի յուրաքանչյուր երկրի ազ-*

գային եկամտի ընդհանուր ծավալի աճից ու ազգային եկամտում բաշխվող
սպառման և կուտակման ֆոնդերի համամասնություններից։
Հաշվի առնելով սոցիալիստական երկրների պլանների կոորդինացման կա-
տարելագործման հեռանկարները, ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեի 1962 թվա-
կանի նոյեմբերյան պլենումում ընկեր Խրուշչովն ասաց. «Հարկավոր է, որ
մենք համարձակորեն ստեղծենք բոլոր երկրների համար ընդհանուր միասնա-
կան պլանային օրգան, որն ընդգրկեր Տնտեսական Փոխօգնության Խորհրդի
մեջ մտնող բոլոր երկրների ներկայացուցիչներին։ Այդ պլանային օրգանը
պետք է ներկայացված լինի այնպիսի մարդկանցով, որոնք լիազորված լինեն
կազմելու ընդհանուր պլաններ և լուծելու կազմակերպական հարցեր՝ սոցիա-
լիստական սիստեմի երկրների էկոնոմիկայի զարգացումը կոորդինացնելու
համար» (Ն. Ս. Խրուշչով. ՍՍՌՄ էկոնոմիկայի զարգացումը և ժողովրդական
տնտեսության պարտիական ղեկավարումը, էջ 149)։

V

Համաշխարհային տնտեսության սոցիալիստական սիստեմը, այսպիսով,
զարգանում է պլանաչափ, պրոպորցիոնալ օրենքով, հնարավորություն ստեղ-
ծելով սոցիալիստական երկրների ազգային տնտեսությունների սերտ մերձեց-
ման համար։ Այն ունի մի միասնական, ընդհանուր պլանով զարգացող տըն-
տեսության վերածվելու տենդենց։ Արտադրողական ուժերի զարգացման այս
առաջադիմական սոցիալիստական պրոցեսին այժմ կապիտալիստական եր-
կըրները հակադրում են իրենց, այսպես կոչված «էկոնոմիկայի ինտեգրա-
ցիան»։ Սակայն մոնոպոլիստական կապիտալի ինտեգրացիայի պրոցեսը դա
միջիմպերիալիստական հակասությունների, բախումների ու կոնֆլիկտների
սրման պրոցես է։
Կապիտալիզմին հակառակ, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի զար-
գացման ու ամրապնդման հետ միասին ավելի պարզ ու հստակ է դրսևորվում
մեկ միասնական, ընդհանուր պլանով զարգանալու տենդենցը։ Այդ տենդենցը,
որն առաջանում է դեռևս կապիտալիզմի օրոք և որը, սակայն, ի վիճակի չէ
իրականացնել կապիտալիզմը, իրականանալի է դառնում սոցիալիզմի ժամա-
նակ։ «...Միասնական, մի ընդհանուր պլանով բոլոր ազգերի պրոլետարիատի
կողմից կարգավորվող համաշխարհային տնտեսության՝ որպես ամբողջության
ստեղծման տենդենցը, որը միանգամայն ակնհայտորեն դրսևորվել է արդեն
կապիտալիզմի օրոք և անպայման ենթակա է հետագա զարգացման ու լիա-
կատար ավարտման սոցիալիզմի օրոք» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 31, էջ 168)։
Սոցիալիզմի լագերի երկրների տնտեսական զարգացման պլանների կոոր-
դինացման ներկա աստիճանը և պլանավորման կատարելագործման հետագա
տենդենցը լիովին հաստատում են լենինյան կանխատեսությունների ճշտու-
թյունը։ Պլանների կոորդինացումը տանում է դեպի մեկ միասնական պլանով
կոմունիստական էկոնոմիկայի ստեղծում։

## ՍՈՎԽՈԶՆԵՐԸ ԴԱՐՁՆԵԼ ՇԱՀՈՒԹԱԲԵՐ

Ա. ՄԱՐԴՈՅԱՆ

Ռեսպուբլիկայի սովխոզների աշխատողները, կենսագործելով պարտիայի XXII համագումարի և ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան ու նոյեմբերյան (1962 թվականի) պլենումների որոշումները, արդյունավետ օգտագործելով եղած հնարավորություններն ու ռեզերվները, 1962 թվականին որոշակի հաջողություններ ձեռք բերին գյուղատնտեսական մթերքների արտադրության, անասունների գլխաքանակի, նրանց մթերատվության ավելացման, ինչպես նաև ցանքատարածությունների կառուցվածքի բարելավման ուղղությամբ։

Նախորդ տարվա համեմատությամբ, 1962 թվականին, ռեսպուբլիկայի սովխոզներում հացահատիկի համախառն արտադրությունն ավելացավ 24,794 տոննայով կամ 127 տոկոսով, խաղողինը՝ 14743 տոննայով կամ 66 տոկոսով, բանջարեղենինը՝ 8143 տոննայով, կամ 34 տոկոսով, շաքարի ճակնդեղինը՝ 3100 տոննայով կամ 26 տոկոսով. 16,4 տոկոսով ավելացավ կաթի, 10,1 տոկոսով՝ ձվի արտադրությունը։

1962 թվականին, 1961 թվականի համեմատությամբ, սովխոզները պետությանն ավելի են հանձնել 12701 տոննա խաղող, 8300 տոննա բանջարեղեն, 2900 տոննա ճակնդեղ, 500 տոննա ծխախոտ, 6900 տոննա կաթ, 11682 տոննա հացահատիկ և այլ մթերքներ։

Անցած տնտեսական տարում բազմաթիվ սովխոզներում պարտիական կազմակերպություններն ու տնտեսական ղեկավարները լուրջ ուշադրություն հատկացրին անասնաբուծության զարգացմանը և հասան այն բանին, որ ռեսպուբլիկայի սովխոզներում 1962 թվականին, 1961 թվականի համեմատությամբ, խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն ավելացավ 8,8 (կովերինը՝ 7,4) տոկոսով, մանր եղջերավոր անասուններինը՝ 12,6, խոզերինը՝ 5, թռչուններինը՝ 13,1 տոկոսով։ Անասունների գլխաքանակի աճի շնորհիվ ռեսպուբլիկայի հանրային սեկտորում ավելացել է սովխոզների անասնաբուծության տեսակարար կշիռը։ Այժմ սովխոզներում են գտնվում ռեսպուբլիկայի հանրային սեկտորի խոշոր եղջերավոր անասունների՝ 27,4, (կովերի՝ 28,6), խոզերի՝ 25,8, մանր եղջերավոր անասունների՝ 22,7 թռչունի՝ 40,3 տոկոսը։ Անցյալ տարի սովխոզները տվել են ռեսպուբլիկայի հանրային սեկտորի արտադրած մսի 30,2, կաթի՝ 29,6, բրդի՝ 23, ձվի՝ 34,6 տոկոսը։

Թվերը ցույց են տալիս, որ սովխոզները որոշակի հաջողությունների են հասել գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման գործում։ Սակայն շատ մթերքներ արտադրելը միայն բավական չէ. դրա հետ միասին, ինչպես պահանջում է պարտիան, պետք է հետևողականորեն իջեցնել արտադրանքի ինքնարժեքը։ Այդ ուղղությամբ նույնպես որոշակի քայլեր են կատար-

ված։ Այսպես՝ 1962 թվականին, 1961 թվականի համեմատությամբ, սովխոզներում մեկ ցենտներ խոզի մսի ինքնարժեքն իջել է 16,8, սիլոսային կուլտուրաներինը՝ 26,8, հացահատիկինը՝ 13,2, իսկ 1000 ձվի ինքնարժեքը՝ 31,5 տոկոսով։

Այս ամենը, բնականաբար, նպաստեցին սովխոզների ֆինանսական դրության բարելավմանը և նրանք անցած տնտեսական տարին փակեցին 4.580.000 ռուբլի օգուտով։

Առանձնապես լուրջ հաջողությունների են հասել մի շարք սովխոզներ, որոնց աշխատանքի փորձն արժանի է հատուկ ուշադրության։ Այսպես, Հոկտեմբերյանի արտադրական վարչության Նայիրի սովխոզը (դիրեկտոր Մ. Գրիգորյան) անցյալ տարի խաղողի բերքատվության պլանը կատարեց 163, պտղինը՝ 112,5, ֆուրաժային մեկ կովի կաթնատվությունը՝ 103,6 տոկոսով։ Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասնաբուծության մթերատվության բարձրացման շնորհիվ սովխոզը ո՛չ միայն կատարեց, այլև գերակատարեց գյուղատնտեսական մթերքների արտադրության և դրանք պետությանը հանձնելու առաջադրանքները։ Պլանից ավելի պետությանը հանձնվել է 4218 տոննա խաղող, 2849 տոննա պտուղ։ Ամրապնդվեց կերի բազան և գերակատարվեց նաև անասունների գլխաքանակի ավելացման առաջադրանքը, 9,4 տոկոսով իջավ գյուղատնտեսական մի շարք մթերքների ինքնարժեքը։ Այդ ամենի շնորհիվ սովխոզը 444-ի փոխարեն ունեցավ 834 հազար ռուբլու օգուտ։

Այսպես է վիճակը նաև Նոյեմբերյանի արտադրական վարչության Լալվարի սովխոզում (դիրեկտոր Մ. Ազատյան)։ Այստեղ բոլոր գծերով ո՛չ միայն կատարվեց, այլև գերակատարվեց գյուղատնտեսական մթերքների արտադրության և պետությանը հանձնելու առաջադրանքները։ Պլանից դուրս պետությանը հանձնվեցին մոտ 10 հազար ցենտներ խաղող և այլ մթերքներ։ Սովխոզն անցյալ տնտեսական տարին փակեց 142,2 հազար ռուբլի օգուտով։ Լավ ցուցանիշներ են ձեռք բերել նաև Էջմիածնի արտադրական վարչության Թայիրովի անվան, Ոսկեհատ, Արտաշատի արտադրական վարչության Կիրովի անվան սովխոզները։ Կիրովի անվան սովխոզը պլանից ավելի պետությանը հանձնել է 13580, Ոսկեհատինը՝ 6870, Թայիրովի անվան սովխոզը՝ 5000 ցենտներ խաղող։ Կայունացել է սովխոզների ֆինանսական դրությունը։ Դրանք դարձել են շահութաբեր տնտեսություններ։ Կիրովի անվան սովխոզն անցած տնտեսական տարին փակել է 703544, Ոսկեհատինը՝ 304,3 հազար, Թայիրովի անվան սովխոզը՝ 120,7 հազար ռուբլի օգուտով։

Հիշատակության արժանի է նաև Հոկտեմբերյանի արտադրական վարչության Լուկաշինի անվան, Էջմիածնի արտադրական վարչության Բաղրամյանի անվան, Արտաշատի արտադրական վարչության Արմաշի, Սևանի արտադրական վարչության Աթարբեկյանի անվան, Ղուկասյանի արտադրական վարչության Ղուկասյանի սովխոզների դրական աշխատանքը. Նրանք լուրջ հաջողությունների են հասել գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասնաբուծական մթերքների արտադրության ավելացման, թողարկվող արտադրանքի ինքնարժեքի իջեցման, տնտեսությունները շահութաբեր դարձնելու բնագավառներում։

Սակայն պետք է նշել, որ բոլոր սովխոզները դեռ շահութաբեր չեն։ Շատ տնտեսություններում ագրոտեխնիկական միջոցառումների անբավարար կիրառման և կորուստների պատճառով ցածր է գյուղատնտեսական կուլտուրա-



ների բերքատվությունը։ 1962 թվականին ռեսպուբլիկայի սովխոզներում հացահատիկային կուլտուրաների մեկ հեկտարից ստացվեց 8,4 ցենտներ հացահատիկ, պլանով նախատեսված 11 ցենտների փոխարեն։ Դրությունը բարվոք չէր նաև գյուղատնտեսական մի շարք այլ կուլտուրաների բերքատվության պլանի կատարման գործում։ Ցածր բերքատվության պատճառով (բացի խաղողից ու շաքարի ճակնդեղից) չկատարվեց բուսաբուծական մթերքների համախառն արտադրության պլանը։

Առանձին արտադրական վարչությունների սովխոզներում վիճակն ավելի վատ է։ Գորիսի արտադրական վարչության սովխոզներում հացահատիկային կուլտուրաների յուրաքանչյուր հեկտարից պլանով նախատեսված 10,7-ի փոխարեն ստացվել է 6,5 ցենտներ, Եղեգնաձորի արտադրական վարչության սովխոզներում՝ 7,6-ի փոխարեն 4,9 ցենտներ բերք։

Բազմաթիվ օրինակներ կարելի է բերել, թե ինչպես շատ սովխոզներ, գտնվելով նույնանման հողակլիմայական պայմաններում, տարբեր ցուցանիշներ ունեն։ Օրինակ, Իջևանի սովխոզը, Կույբիշևի սովխոզի հետ համեմատած, յուրաքանչյուր մեկ ցենտներ հացահատիկի արտադրության վրա ավելի է ծախսել 3 ռ. 40 կ., մեկ ցենտներ տավարի մսի վրա՝ 38 ռ. 28 կ., մեկ ցենտներ խոզի մսի՝ 42ռ.27 կ., մեկ ցենտներ կաթի վրա՝ 5 ռ. 02 կ., մեկ ցենտներ բրդի վրա՝ 189 ռ. 36 կ.։

Եզրակացությունը պարզ է։ Կույբիշևի սովխոզում տնտեսությունը վարել են արդյունավետ, հմտորեն են օգտագործել եղած ռեզերվները, նյութական ու դրամական միջոցները, վերացրել են անարտադրողական ծախսերը, բարելավել են աշխատանքի կազմակերպումն ու վարձատրությունը, ամրապնդել կարգապահությունը։ Այդ բոլորի արդյունքը եղել է այն, որ սովխոզն անցած տնտեսական տարին փակել է 102 հազար ռուբլի օգուտով։ Դրությունը միանգամայն այլ է Իջևանի սովխոզում։ Արտադրության միջոցներն անարդյունավետ օգտագործելու և աշխատանքը վատ կազմակերպելու հետևանքով սովխոզը չապահովեց գյուղատնտեսական մթերքների արտադրության պլանների կատարումը և տնտեսական տարին փակեց 76,6 հազար ռուբլի վնասով։

Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման և բերքի համախառն արտադրանքի ավելացման գործում չափազանց կարևոր նշանակություն ունի հողի ռացիոնալ օգտագործումը և ցանքատարածությունների կառուցվածքի բարելավումը։ Չնայած սովխոզներում որոշ չափով բարելավվել է ցանքատարածությունների կառուցվածքը, սակայն ոչ բոլոր վարելահողերն են ռացիոնալ օգտագործվել։

Գյուղատնտեսության շրջանառությունից դուրս մնացած հողեր շատ կան, հատկապես, Նոյեմբերյանի, Աշտարակի, Ղուկասյանի, Եղեգնաձորի արտադրական վարչությունների սովխոզներում։ Այս լուրջ թերության կողքով լռությամբ չպետք է անցնել։ Արտադրական վարչությունները, պարտիական կոմիտեները և սովխոզների ղեկավարները պետք է կտրուկ միջոցառումներ իրականացնեն՝ եղած հողերը լրիվ օգտագործելու, որը գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման կարևոր ռեզերվներից մեկն է։

Ռեսպուբլիկայի շատ սովխոզներում լուրջ թերություններ կան առանձնապես անասնաբուծության զարգացման բնագավառում։ Այդ հետևանք է նրա, որ ինչպես հարկն է չի կազմակերպված հոտի վերարտադրության գործը, անբավարար են ընթանում անասունների խնամքը, կերակրումը և պահպանումը,

մեծ չափերի են հասնում անասունների անկումները և, այսպես կոչված, «հարկադիր մորթը»։ Բարձր է մայրական կազմի սանրջության տոկոսը։ Այդ բոլորի հետևանքով անասունների գլխաքանակի աճը հատկապես ետ է մնում Անիի, Աշտարակի, Իջևանի և Ստեփանավանի արտադրական վարչությունների սովխոզներում, որոնք անցյալ տարի անասունների գլխաքանակի ավելացման պլանները խիստ թերակատարեցին։

Այդ մասին է վկայում ստորև բերած աղյուսակը։

| Արտադրական վարչություններ | Ընդամենը խոշոր եղջերավոր անասուններ (գլուխ) | | Կովեր (գլուխ) | | Մանր եղջերավոր անասուններ (գլուխ) | |
|---|---|---|---|---|---|---|
| | պլան | կատարողական | պլան | կատարողական | պլան | կատարողական |
| Անիի . . . . . | 11.881 | 11574 | 4085 | 3840 | 43280 | 41921 |
| Աշտարակի . . . | 6,229 | 5647 | 2088 | 1908 | 9195 | 6117 |
| Իջևանի . . . | 5350 | 4231 | 1920 | 1526 | 19760 | 12167 |
| Ստեփանավանի . | 5235 | 5027 | 2097 | 1949 | 1480 | 873 |

Անասունների գլխաքանակի ավելացման պլանի թերակատարման գլխավոր պատճառներից մեկն այն է, որ դեռևս լուրջ ուշադրություն չի հատկացվում մայր անասունների արհեստական սերմնավորման վրա։ Բացի այդ, առանց հիմնավոր պատճառների խոտանվում է մայրական կազմի զգալի տոկոսը։ Եթե այս բոլորին ավելացնենք այն, որ անհոգություն է նկատվում նաև մատղաշ անասունների խնամքի ու պահպանման գործում, միանգամայն պարզ կլինի, թե ինչու է թերակատարվել անասունների գլխաքանակի ավելացման պլանը։

Սովխոզները, իրենց ընդունած պլանների համաձայն, 1962 թ. 100 մայր անասունից պետք է ստանային և աճեցնեին 83 հորթ, 85 գառ, 1400 խոճկոր։ Սակայն այդ պլանը չկատարվեց, որի հետևանքով անցյալ տարի ռեսպուբլիկայի սովխոզները պակաս ստացան 4,1 հազար հորթ, 8,5 հազար գառ, 7,4 հազար խոճկոր։ Առանձին սովխոզներում վիճակը ավելի անմխիթար է։ Այսպես, Իջևանի արտադրական վարչության Սևքարի սովխոզում 100 կովից ստացվել է 62, Սևանի արտադրական վարչության Սեմյոնովկայի սովխոզում՝ 64, Գորիսի արտադրական վարչության Վերիշենի սովխոզում՝ 70 հորթ և այլն։

Ռեսպուբլիկայի սովխոզներում անպատասխանատվության հետևանքով շատ հաճախակի է դարձել անասունների հարկադիր մորթը։ Ուսումնասիրությունները ցույց են տվել, որ անասունների անբավարար խնամքի, կերակրման ու պահպանման հետևանքով շատ տեղերում նրանց զգալի մասը սատկում է։ Առանձին սովխոզների դիրեկտորներ անկումների թիվն արհեստականորեն պակաս ցույց տալու նպատակով անկման ենթակա անասունները «հարկադիր մորթում» են, դրանով իսկ թաքցնելով իրենց վատ աշխատանքը։ Բայց, ինչպես ժողովրդական առածն է ասում՝ «Մախաթը պարկի մեջ պահել չես կարող»։ Ինչպե՞ս կարելի է չխոսել վատ աշխատանքի մասին, երբ մեկ տարվա ընթացքում սովխոզներում սատկել և «հարկադիր մորթվել» են 7627 գլուխ խոշոր, 40465 գլուխ մանր եղջերավոր անասուն, 6019 գլուխ խոզ։ Եթե սատկած և մորթված անասունների գլխաքանակն ավելացնենք առկա անասունների գլխաքանակի վրա, ապա սովխոզները խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակի ավելացման պլանը 1962 թ. զգալիորեն կգերակատարեին։



Սովխոզներում անասնաբուծության զարգացման բնագավառում եղած լուրջ թերություններից մեկն էլ այն է, որ կովերի գլխաքանակը դանդաղ է ավելանում։ Սովխոզներում անցյալ տարի կովերի գլխաքանակը գլխավորապես ավելացել է գնման հաշվին, որի համար մեծ գումար է ծախսվել։ Այս ճանապարհով անասունների և, առանձնապես, կովերի գլխաքանակի ավելացման պլանի կատարումն ու գերակատարումը խրախուսելի չեն։ Խրախուսելին այն կլինի, երբ սովխոզներն անասունների գլխաքանակի ավելացման պլանը կատարեն սեփական հոտի վերարտադրության հաշվին։

Սովխոզների խոշոր եղջերավոր անասունների նախրում, 1963 թ. հունվարի մեկի տվյալներով, կովերի տեսակարար կշիռը կազմում է 33,2 տոկոս։ Նորմալ պայմաններում այն պետք է լինի 40 տոկոս։ Լավ չէ նաև ոչխարի հոտի կազմը։ Մայր ոչխարների տեսակարար կշիռը կազմում է հոտի 56 տոկոսը, նախատեսված 65-ի փոխարեն։

Շատ սովխոզների պարտիական, արհմիութենական կազմակերպություններ և տնտեսական ղեկավարներ անասնաբուծության բնագավառում եղած
թերությունների վերացման համար ձեռք չեն առել տնտեսական ու կազմա-
կերպական բնույթի կոնկրետ միջոցներ, չեն գործադրել եղած ռեզերվները։
Այդ է պատճառը, որ անասունների մթերատվությունը սովխոզներում շարու-
նակում է մնալ ցածր մակարդակի վրա։

Անասունների գլխաքանակի անբավարար ավելացման, հոտի վերարտա-
դրության վատ կազմակերպման և գյուղատնտեսական կենդանիների ցածր
մթերատվության հետևանքով սովխոզները ոչ մի գծով չեն կատարել անասա-
նաբուծական մթերքների արտադրության 1962 թ. պլանները։ Մի շարք արտա-
դրական վարչությունների սովխոզներում դրությունն անմխիթարական է, ո-
րովհետև արդյունավետ չեն օգտագործվել եղած հնարավորություններն ու ռե-
զերվները։ Այդպիսին է դրությունը, հատկապես, Իջևանի, Անիի, Ապարանի և
Աշտարակի արտադրական վարչությունների սովխոզներում։

Կատարված հաշվարկները ցույց են տալիս, որ, եթե սովխոզները կարողանային կանխել անասունների անկումները և հարկադիր մորթը, մսի արտադրությունը 1962 թ. կավելանար 3160 տոննայով կամ 28 տոկոսով, որը հնարավորություն կտար նրանց ո՛չ միայն կատարելու, այլև գերակատարելու մսի արտադրության և հանձնման առաջադրանքները։

Սովխոզներն անբավարար ուշադրություն են հատկացնում նաև թռչնա-
բուծության զարգացմանը։ Դրա հետևանքով 1962 թ. ընթացքում պետությանը
պակաս հանձնվեց 5 միլիոն ձու։ Դրա պատճառն այն է, որ սովխոզների մի
մասը չի կատարել ածան հավերի գլխաքանակի ավելացման պլանը։ Այդ ավե-
լի ակնհայտ է, հատկապես, Սպիտակի, Արթիկի և Հրազդանի շրջանների սով-
խոզներում, որոնք ո՛չ միայն 1962 թ. չեն կատարել հավերի գլխաքանակի
ավելացման պլանը, այլ զգալի չափով կրճատել են ածան հավերի քանակը։

Անասնաբուծական մթերքների արտադրության ցածր մակարդակը հիմնականում հետևանք է այն բանի, որ սովխոզներում չկա կերի կայուն բազա։ Անբավարար աշխատանք է կատարվում բնական և ցանովի խոտհարքների, արոտավայրերի և կերային այլ կուլտուրաների բերքատվությունը բարձրացնելու, բերքահավաքը ժամանակին կատարելու և կորուստները կանխելու

ուղղությամբ: Սովխոզներից շատերը կերի մի մասը ներմուծում են, որը խիստ բացասաբար է անդրադառնում անասնաբուծական մթերքների ինքնարժեքի իջեցման վրա: Այդ և մի շարք այլ պատճառներով սովխոզներում արտադրանքի ինքնարժեքը 1962 թվականին, 1960 թվականի համեմատությամբ, 0,9 տոկոսով իջեցնելու փոխարեն թանկացել է 18,6 տոկոսով:

Բացի խաղողից, մնացած բոլոր մթերքների փաստացի ինքնարժեքը սովխոզներում ավելի բարձր է եղել, քան նախատեսված էր 1962 թ. պլանով: Թռչունի մսի պլանային ինքնարժեքը բարձրացել է 88,2, բոլոր տեսակի խոտերինը՝ 66,9, բրդինը՝ 42,3, ոչխարի մսինը՝ 29 տոկոսով: Անասնաբուծական մթերքների ինքնարժեքը բարձրացել է գլխավորապես ի հաշիվ կերի վրա կատարված ծախսերի և աշխատավարձի:

Ինքնարժեքի բարձրացման, գյուղատնտեսական մթերքների արտադրության և իրացման պլանները չկատարելու, նյութական և դրամական միջոցների անտնտեսվար ծախսման հետևանքով անցյալ տարի ռեսպուբլիկայի սովխոզները 1,260 հազար ռուբլով թերակատարել են օգուտների պլանը: 140 սովխոզներից 65-ը աշխատել են վնասով, որը կազմել է 3,386 հազար ռուբլի: Անասնաբուծությունը վարել են վնասով և հողագործական մթերքներից ստացված օգուտի մի մասը ծածկել է անասնաբուծական մթերքներից առաջացած վնասը, որի պատճառով էլ սովխոզներն, ընդհանուր առմամբ, թերակատարել են օգուտների ստացման պլանը:

Առանձին արտադրական վարչությունների սովխոզներ անհրաժեշտ ուշադրություն չդարձնելով աշխատատար պրոցեսների մեքենայացման, գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասնաբուծության մթերատվության բարձրացման ու անարտադրողական ծախսերի վերացման վրա, թույլ են տվել հողագործական և անասնաբուծական մթերքների ինքնարժեքի բարձրացում, դրանով իսկ դառնալով վնասաբեր: Միայն Աշտարակի արտադրական վարչության սովխոզների 1962 թվականի վնասը կազմել է 411 հազար, այդ թվում՝ անասնաբուծական մթերքների իրացումից առաջացածը 377 հազար, իսկ սեփական շրջանառու միջոցների ճեղքվածքը՝ 443 հազար, դեբիտորական պարտքերի գումարը՝ 174 հազար ռուբլի:

Այսպիսի փաստեր կարելի է շատ բերել. սահմանափակվենք այսքանով: Վատն այն է, որ ինչպես վերը նշված, այնպես էլ մի շարք այլ սովխոզների դիրեկտորներ պատասխանատու չեն զգում իրենց ղեկավարած տնտեսություններում ստեղծված վիճակի համար:

Նրանցից շատերը արտադրության մեջ չեն արմատավորում գյուղատնտեսական գիտության նվաճումներն ու առաջավորների փորձը, պատշաճ ուշադրություն չեն նվիրում աշխատանքի կազմակերպմանը և վարձատրության բարելավմանը, կարգապահության ամրապնդմանը, աշխատանքի արտադրողականության և բանվորների նյութական շահագրգռվածության բարձրացմանը: Նրանք մոռանում են, որ այդ միջոցառումների իրականացման շնորհիվ հնարավոր կլինի վերացնել տնտեսությունների ետ մնալը:

Իր մի ելույթում ընկեր Խրուշչովն ասաց. մենք ունենք կադրեր, ունենք տեխնիկա, բավարար թվով փորձված մասնագետներ: Այդպիսի պայմաններում այլևս չի կարելի հաշտվել որոշ կոլտնտեսությունների ու սովխոզների ետ մնալու հետ:

Իրոք, այդ այդպես է: Մեր ռեսպուբլիկայի բոլոր սովխոզներում էլ անհրաժեշտ պայմաններ կան առաջավորների մակարդակին հասնելու համար: Մնում է ծավալել կազմակերպական համառ աշխատանք, ուժեղացնել պահանջկոտությունը կադրերի նկատմամբ:



Ժողովրդական տնտեսության պարտիական ղեկավարության վերակառուցումը հնարավորություն է տալիս ավելի խոր թափանցելու արտադրության էկոնոմիկայի մեջ, մոբիլիզացնելու բոլոր ուժերը, կադրերի գիտելիքներն ու կազմակերպական ունակություններն ուղղելու կոնկրետ խնդիրների լուծմանը: «Մեր պարտիան,— ասում է Ն. Ս. Խրուշչովը,— այժմ գտել է կոլտնտեսությունների և սովխոզների կառավարման լավ ձև: Արտադրական վարչությունները, արտադրական վարչությունների պարտիական կոմիտեները մեծ հնարավորություններ ունեն նոր պայմաններում հմտորեն կազմակերպելու արտադրությունը յուրաքանչյուր տնտեսության մեջ, ավելի լավ օգտագործելու կոլտնտեսությունների և սովխոզների հարուստ հնարավորությունները»:

Ռեսպուբլիկայի կոլտնտեսային-սովխոզային արտադրական վարչություններն ու գյուղական արտադրական պարտիական կոմիտեները երբեք չպետք է մոռանան ընկեր Ն. Ս. Խրուշչովի այդ ցուցումը և ընթացիկ տարում գործը կազմակերպեն այնպես, որ լուրջ քայլեր կատարվեն տնտեսապես ետ մնացող սովխոզներն առաջավորներին հասցնելու համար:

Անհրաժեշտ է ամուր հիմքերի վրա դնել աշխատանքի կազմակերպման և վարձատրության գործը, իրականացնել տնտեսական ու կազմակերպական գործուն միջոցառումներ՝ բանվորներին նյութապես ու բարոյապես շահագրգռելու, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, անարտադրողական ծախսերն ու կորուստները վերացնելու, արտադրանքի ինքնարժեքն իջեցնելու և բոլոր սովխոզները շահութաբեր դարձնելու համար:

---

## ՍՈՎԽՈԶՆԵՐԻ ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԸ

— Արտաշատի արտադրական վարչության Կիրովի անվան սովխոզը (դիրեկտոր Վազգեն Ստեփանյան) անցյալ տարի 420 հեկտար խաղողի այգիների յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով ստացել է 121 ցենտներ բերք. միայն այգեգործությունից սովխոզն ունեցել է 1520 հազար ռուբլու եկամուտ:

— Այս սովխոզի՝ Միսակ Ավետիսյանի ղեկավարած բրիգադան խաղողի այգիների յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով ստացել է 163 ցենտներ բերք: Բրիգադայի մշակած խաղողի այգիներից ստացվել է 125 հազար ռուբլու եկամուտ:

— Նոյեմբերյանի արտադրական վարչության Ջեյթունի սովխոզը (դիրեկտոր Բագրատ Վարդանյան) անցյալ տարի տվել է 447819 ռուբլու օգուտ:

— Հոկտեմբերյանի արտադրական վարչության Ձերժինսկու անվան սովխոզի՝ Օլգա Գուլկալովայի օղակն անցյալ տարի իր մշակած խաղողի այգիների յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով ստացել է 205 ցենտներ բերք:

— Կամո քաղաքի սովխոզի՝ Գոհար Զաքոյանի օղակը 1962 թվականին իր մշակած ծխախոտի ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից ստացել է 35 ցենտներ բերք:

— Նոյեմբերյանի արտադրական վարչության Լալվարի սովխոզի՝ Նադիր Իսկենդարովի օղակը 12 հեկտար խաղողի այգիների ամեն մի հեկտարից ստացել է 178 ցենտներ բերք:

# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ՄԱՍՍԱՆԵՐԻ ԼԱՅՆ ՄԱՍՆԱԿՑՈՒԹՅԱՄԲ

*Պարտիական-պետական վերահսկողության նոր օրգանները հանդես են գալիս իբրև ամենամասսայական, ամենադեմոկրատական վերահսկողության կազմակերպիչներ։ Այդ օրգանների ուժը, հաջող գործունեության գրավականն այն է, որ իրենց աշխատանքում հենվում են աշխատավորական լայն մասսաների վրա, ապահովելով նրանց ակտիվ մասնակցությունը ժողովրդական վերահսկողության գործին։*

*Պարտիական-պետական վերահսկողության Երևանի քաղաքային և շրջանային կոմիտեներն իրենց գործերը հիմնականում վարում են հասարակական կարգով, իրենց շուրջը համախմբված ակտիվի միջոցով։ Քաղաքային կոմիտեում կազմակերպվել են արդյունաբերության, տրանսպորտի, կապի ու շինարարության, առևտրի ու պետական հիմնարկների, կուլտուրայի և առողջապահության արտահաստիքային բաժիններ։ Միաժամանակ գործում է աշխատավորների դիմումների ու բողոքների հանձնաժողովը։ Արտահաստիքային բաժիններ են ստեղծվել նաև շրջանային կոմիտեներում։*

*Քաղաքային և շրջանային կոմիտեների արտահաստիքային 22 բաժիններում ներգրավված են ավելի քան երկու հարյուր մարդ։ Որպես վերահսկողության արտահաստիքային տեսուչներ աշխատում են արդյունաբերական և շինարարական ձեռնարկությունների, գիտահետազոտական և նախագծային ինստիտուտների մասնագետներ, ինչպես և բժիշկներ, ուսուցիչներ, պարտիական, սովետական և արհմիութենական աշխատողներ, թոշակառուներ և ուրիշներ։*

*Վերահսկողության նոր սիստեմի ամենամասսայական օղակը աջակցող* խմբերն *ու* պոստերն *են։ Մայրաքաղաքի արդյունաբերական, տրանսպորտի, շինարարական բոլոր ձեռնարկություններում ու կազմակերպություններում, հիմնարկներում և առանձին տնային կառավարչություններում կազմակերպվել է պարտիական-պետական վերահսկողության կոմիտեներին աջակցող 650 խումբ, որոնցում ընդգրկված են 5752 մարդ։ Արտադրական ու հիմնարկային կոլեկտիվների կողմից ընտրվել և ներկայումս որպես ժողովրդական վերահսկիչներ են աշխատում հեղինակություն վայելող, սկզբունքային մարդիկ։ Ուշագրավն այն է, որ արտադրական ձեռնարկություններում ժողովրդական վերահսկիչների կազմի ավելի քան 44 տոկոսը բանվորներ ու բանվորուհիներ են։ Բացի այդ, ձեռնարկություններում ու հիմնարկներում ստեղծվել են 271 հսկիչ պոստեր։*

*Վերահսկողության քաղաքային և շրջանային նոր օրգանների ստեղծման ժամանակ մեր առջև ծառացան մի շարք հարցեր։ Այսպես, պարտիական - պետական վերահսկողության օրգանների մասին կանոնադրության մեջ չի ասված, թե ինչ ժամկետով են ընտրվում աջակցող խմբերի ու հսկիչ պոստերի մասնակիցները։ Ելնելով գործնական նկատառումներից, մենք որոշել ենք խմբերի ու պոստերի մասնակիցների գործունեությունը սահմանել մեկ տարով։ Սկզբնական պարտիական կազմակերպությունների հաշվետու - ընտրական ժողովներում՝ պարտբյուրոյի կամ կազմակերպության քարտուղարի հաշվետվության մեջ պետք է արտացոլվի նրանց գործունեությունը։ Աջակցող խմբեր չեն ստեղծվել պարտիական, արհմիութենական և կոմերիտական օրգաններում, դպրոցներում. փոքրաթիվ կոլեկտիվներում այդ խմբերի փոխարեն ստեղծվել են հսկիչ պոստեր։*

*Վերահսկողության նոր օրգանների ակտիվիստների բանակը հզոր ուժ է, որն ընդունակ է իրականացնելու իսկական վերահսկողություն մեր կյանքի ու աշխատանքի բոլոր բնագավառներում։ Ինչպես ընկեր Խրուշչովն է ասում, ժողովրդական հսկողությունը կոչված է բոլոր ծակուծուկերը պինդ փակելու ստահակների, կաշառակերների, ձրիակերների, բյուրոկրատների առջև, բոլոր նրանց առջև, ովքեր ձեռք են մեկնում ժողովրդական բարիքին։ Մասնակցելով վերահսկողությանը, աշխատավորներն անմիջականորեն ներգրավվում են հասարակության գործերի կառավարմանը, անցնում պետական գործերի կառավարման մեծ դպրոց։*

*Պարտիական-պետական վերահսկողության օրգանները ո՛չ միայն ստուգում ու բացահայտում են թերությունները, պատժում են, այլ, որ գլխավորն է, կանխում են բոլոր և ամեն տեսակի խախտումների, չարաշահումների հնարավորությունը, դաստիարակում են կադրերին և նրանց ուշադրությունը բևեռում պարտիայի ու կառավարության դիրեկտիվների անթերի կատարման վրա։*

*Զնայած աջակցող խմբերի և հսկիչ պոստերի ստեղծումից անցել է ընդամենը մի քանի ամիս միայն, այնուամենայնիվ կարելի է որոշ բան ասել դրանց կատարած աշխատանքի մասին։*

**Գործողության մեջ է ժողովրդական մարտական վերահսկողությունը**

*Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի կոլեկտիվը հաջողությամբ է կատարում յոթնամյակի հինգերորդ տարվա պետական պլանները, քայլում է համաժողովրդական պայքարի առաջին շարքերում։ Սակայն այս ձեռնարկությունում ամենուր չէ, որ բարեհաջող են ընթանում գործերը. կան տեղամասեր ու ցեխեր, որոնք իրենց գործունեությամբ լրջորեն խոչընդոտում են գործարանի տեխնիկա-տնտեսական ցուցանիշների բարելավմանը, եղած արտադրական հնարավորությունների լրիվ օգտագործմանը։ Այն ժողովում, ուր առաջադրվում էր պարտիական-պետական վերահսկողության կոմիտեին աջակցող խմբի կազմը, գործնական լուրջ խոսակցություն տեղի ունեցավ այդ հարցերի շուրջ։ Այդ մի յուրօրինակ նակազ էր աջակցող խմբին, որը փաստորեն դարձավ նրա հետագա գործողության ծրագիրը։*

*Հաշվի առնելով կոլեկտիվի կարծիքն ու առաջարկությունները, խումբը պլանավորել է իր աշխատանքը։ Եվ պատահական չէ, որ առաջ քաշած բազմաթիվ հարցերից բոլորի հավանությանն արժանացավ գործարանում նոր մեքենաների, սարքավորումների պահպանության ու ժամանակին տեղակայման հարցը, մի բան, որի լուծումը պետք է նպաստի արտադրանքի թողարկման ավելացմանը, աշխատանքի արտադրողականության բարձրացմանն ու թողարկվող արտադրանքի որակի բարելավմանը։ Դրանից էլ սկսեցին իրենց գործը աջակցող խմբի անդամները։*

*Ուսումնասիրությունից պարզվեց, որ զգալի քանակությամբ մեքենաներ ստացվել ու անխնամ թափված են*

ձեռնարկության առանձին ցեխերում, տեղամասերում, երկար ժամանակ ձըգձըգվում են դրանց տեղակայումն ու գործարկումը։ Խումբն ամփոփեց ըստուգման արդյունքները և բացահայտված թերություններն անհապաղ վերացնելու նպատակով գործնական առաջարկություններ ներկայացրեց պարտիական կոմիտեին ու գործարանի դիրեկցիային։ Միաժամանակ խումբը մանրամասն ուսումնասիրել և կոնկրետ առաջարկություններ է արել տարաների օգտագործման, պետական բեռները ժամանակին բարձելու և թափելու հարցերի վերաբերյալ։ Եվ, ինչպես պետք էր սպասել, ժողովրդական վերահսկիչների միջամտությունն զգալի չափով օգնեց գործին, կոնկրետ քայլեր արվեցին եղած վիճակը բարելավելու համար։

Ուշադրության արժանի է հրուշակեղեն-մակարոնի ֆաբրիկայի աջակցող խմբի աշխատանքը։ Գործարանային խումբն ուսումնասիրեց ֆաբրիկայում վարչա-տնտեսական ծախսերի կրճատման և պատրաստի արտադրանքի պիտակների տպագրության կազմակերպման վիճակը։ Հարցի բազմակողմանի ուսումնասիրմամբ, որին մասնակցում էին արտադրության առաջավորներ, ինժեներա-տեխնիկական աշխատողներ, պարզվեց, որ ֆաբրիկան տարբեր ռեսպուբլիկաներից պատրաստի արտադրանքի պիտակների մի զգալի մասը ոչ միայն մեծ խափանումներով է ստանում, այլև այն ավելի թանկ է նստում ձեռնարկության վրա։

Եվ դա այն դեպքում, երբ ձեռնարկությունն ունի սեփական լիտոգրաֆիայի և գոֆրի ցեխեր, որոնց միացմամբ կկրճատվեր վարչա-կառավարչական ապարատը, կբարելավվեր նրանց գործունեությունը և հնարավոր կլիներ լիովին ապահովել ֆաբրիկայի պահանջը։ Խումբը մշակեց կոնկրետ առաջարկություններ, դրանք ներկայացրեց ֆաբրիկայի դիրեկցիային ու պարտիական կազմակերպության բյուրոյին, որոնք, հաշվի առնելով բարձրացված հարցի հույժ կարևորությունը, իրականացրին անհրաժեշտ միջոցառումներ։ Հաշվարկները ցույց են տալիս, որ ֆաբրիկան միայն այս միջոցառումների իրականացմամբ տարեկան կտնտեսի մի քանի տասնյակ հազար ռուբլի։ Այդ նույն խումբը ժամանակին կանխեց մեղրածորի ավելցուկի առաջացումը և արգելվեց առանց անալիզի դրա մատակարարումը։

Առաջին, սակայն հաստատ քայլեր է կատարում ժամացույցի գործարանի պարտիական-պետական վերահսկողության կոմիտեին աջակցող խումբը, որին գլխավորում է ինժեներ Ժ. Ջանունցը։ Ահազանգեր ստացվեցին, որ նվագող ժամացույցների ցեխում խիստ անբավարար է նյութական արժեքների հաշվառման գործը, որի հետևանքով չարաշահումների տեղիք է տրվում։ Աջակցող խմբի անդամները համակողմանի ուսումնասիրեցին հաշվառման վիճակը ցեխում և բացահայտեցին այդ ասպարեզում տեղ գտած աղաղակող թերություններ, ինչպես և չարաշահումների փաստեր։ Այդ արդյունք էր հանձնարարված գործի նկատմամբ ցեխի վարպետ Վ. Մեսրոպյանի հանդես բերած անպատասխանատու վերաբերմունքի։ Մեկ օրվա ստուգումից խումբը բացահայտեց սեղանի ժամացույցների հենարանների, պատյանների պակասորդ, ինչպես նաև մյուս ցեխերից միտումնավոր կերպով այստեղ բերված ժամացույցի պատրաստի շատ մեխանիզմներ։

Նկատված թերություններն ու խախտումները հետագայում կանխելու նպատակով աջակցող խումբը մշակել և գործարանի ղեկավարությանն է ներկայացրել կոնկրետ առաջարկություններ՝ նյութական արժեքների հաշվառման գործը կարգավորելու համար։



Նույն գործարանի աջակցող խմբի ուժերով լուրջ չարաշահումներ և խախտումներ են բացահայտվել ու կանխվել մեխանիկական ցեխի տեղամասերից մեկում։ Ժողովրդական վերահսկիչների առաջարկությամբ պատասխանատվության են ենթարկվել մեղավորները։

Ավտոդողերի գործարանի ժողովրդական վերահսկիչների ակտիվ միջամտությամբ բարելավվեց աշխատանքային կարգապահությունը երեկոյան հերթափոխում։ Սարքաշինական գործարանի պարտիական-պետական վերահսկողության կոմիտեին աջակցող խմբի ղեկավար Ա. Բաբայանը մեծ ուշադրություն է հատկացնում այն հարցին, որ վերահսկողության գործում ակտիվորեն գործեն խմբի բոլոր անդամները, ինչպես նաև ներգրավվեն շատ ուրիշ բանվորներ ու ծառայողներ։ Դրական աշխատանքի բավականին օրինակներ կարելի է բերել նաև Կիրովի անվան, կոնյակի, ալյումինի և շատ այլ գործարանների ու ֆաբրիկաների աջակցող խմբերի գործունեությունից։

Սակայն շատ ձեռնարկություններում ու հիմնարկներում և, մասնավորապես, շինարարական, ավտոտրանսպորտի, առևտրի կազմակերպություններում ստեղծված աջակցող խմբերը դեռևս լուրջ քայլեր չեն կատարել պարտիական ու պետական վերահսկողության հետևողական իրականացման ուղղությամբ, քիչ են օգտագործում հասարակական ակտիվի ուժերը։ Ավելին, առանձին աջակցող խմբեր պատշաճ հետևողականություն և սկզբունքայնություն հանդես չեն բերում ձեռնարկություններում գոյություն ունեցող թերությունների, խախտումների բացահայտման ու դրանց լիկվիդացման գործում։ Օրինակ, լուսատեխնիկական գործարանի աջակցող խումբը (ղեկավար, սկզբնական պարտիական կազմակերպության բյուրոյի քարտուղարի առաջին տեղակալ Ս. Զիտոյան), ժամանակին նկատեց, որ պահեստներում ու գործարանի հրապարակում անխնամ թափված են մոտ մեկ ու կես միլիոն ռուբլու սարքավորումներ, որոնք չեն օգտագործվում։ Խումբը քննարկեց այդ հարցը։ Սակայն, որովհետև, հարցը միակողմանի էր ուսումնասիրվել, չբացահայտվեցին թողարկվող արտադրանքի ցածրորակության պատճառները և այն, թե ինչու ավելի քան 17 մարզային ու ռեսպուբլիկական առևտրական կազմակերպություններ հրաժարվել են Երևանի լուսատեխնիկական գործարանի արտադրանքից։ Աջակցող խումբը, չխորանալով հարցի էության մեջ, կրկնելով գործարանի ղեկավարների անհիմն պատճառաբանությունները, ստեղծված վիճակի համար մեղքը ամբողջապես բարդել էր առևտրական կազմակերպությունների վրա։

Պարտիական-պետական վերահսկողության քաղաքային կոմիտեի կազմակերպած տեսչական ստուգմամբ պարզվեց, որ լուսատեխնիկական սարքավորումների կուտակման պատճառը թողարկվող արտադրանքի խիստ վատ որակն է, արտադրության պրոցեսում աշխատանքային ու տեխնոլոգիական կարգապահության ցածր մակարդակը։

Պարտիական-պետական վերահսկողության օրգանների, սկզբնական պարտիական կազմակերպությունների խընդիրն է՝ օգնել պարտիական-պետական վերահսկողության օրգանների աջակցող խմբերին՝ աշխատավորների լայն օգնությամբ, հետևողականորեն ու մինչև վերջ բացահայտելու հիմնարկ-ձեռնարկությունների աշխատանքում տեղ գտած բացերն ու թերությունները, նպաստելու դրանց արագ հաղթահարմանը։

Արդյունավետ գործ են կատարում կոմիտեների արտահաստիքային տեսուչները։ Պարտիական-պետական վերահսկողության Երևանի քաղաքային կոմիտեի արդյունաբերության ու շինա-

րարության արտահաստիքային բաժինը (որի աշխատանքներին մասնակցում են արդյունաբերության ու շինարարության 13 մասնագետներ) վերջերս ահազանգեր ստացավ, որ առանձին արդյունաբերական ձեռնարկություններում պատշաճ բարձրության վրա չէ նյութական արժեքների և, մասնավորապես, պատրաստի արտադրանքի ընդունման ու հաշվետվության գործը։ Բաժնի արտահաստիքային տեսուչների, ժողտնտխորհի, արդյունաբերական ձեռնարկությունների ավելի քան 40 մասնագետների ակտիվ մասնակցությամբ քաղաքի արդյունաբերական քսան ձեռնարկություններում ստուգվեցին պատրաստի արտադրանքի վերաբերյալ ներկայացված հաշվետվությունները։ Պարզվեց, որ քաղաքի առանձին ձեռնարկություններում կոպիտ կերպով խախտվում է պատրաստի արտադրանքի հաշվառման պետական կարգը՝ հնարավորություններ ստեղծելով պլանների հավելագրման ու չարաշահումների համար։ Այսպես՝ Արաբկիրի և Մյասնիկյանի անվան կահույքի ֆաբրիկաներում ապրիլ ամսվա հաշվետվության մեջ նշվել էին չեղած մեծ քանակությամբ մահճակալներ, հագուստի պահարաններ և անավարտ կահույքի այլ տեսակներ։

Արդյունաբերության արտահաստիքային բաժինն ուսումնասիրել է նաև մսեղենի ու կաթնեղենի արդյունաբերության Երևանի ձեռնարկությունների թողարկած արտադրանքի որակի և ասորտիմենտի պլանի կատարման արդյունքները, № 4 ավտոբուսային պարկի կողմից բնակչության սպասարկման, լուսատեխնիկական գործարանում թողարկվող արտադրանքի գերնորմատիվային մնացորդների առաջացման պատճառները և շատ այլ հարցեր, որոնք քննարկվել են պարտիական-պետական վերահսկողության քաղաքային կոմիտեում. մշակվել են կոնկրետ միջոցառումներ բացահայտված թերությունները վերացնելու նպատակով։ Այդ նույն բաժնի նախաձեռնությամբ քաղաքի արդյունաբերական ու շինարարական ձեռնարկություններում մայիսի 10—20-ը անցկացվեց տեխնիկայի օգտագործման մասսայական ստուգատես, որին մասնակցեցին պարտիական-պետական վերահսկողության կոմիտեներին աջակցող խմբերը, բազմաթիվ ինժեներա-տեխնիկական աշխատողներ։

Դրական աշխատանքի շատ օրինակներ կարելի է բերել նաև պարտիական-պետական վերահսկողության քաղաքային ու շրջանային կոմիտեների արտահաստիքային մյուս բաժինների աշխատանքից։

Վերահսկողության կազմակերպման գործում կարևոր են օպերատիվությունը, ստուգումների արդյունքների հրապարակայնությունը։ Պարտիական-պետական վերահսկողության օրգանների, նրանց աջակցող խմբերի ու պոստերի գործունեությունը մեծ արդյունք կտա, եթե ուսումնասիրված նյութերին և ձեռնարկված միջոցառումներին իրազեկ լինեն բոլորը։ Այդ նպատակով «Երևան» թերթում, առանձին գործարանային բազմատիրաժ ու պատի թերթերում պարբերաբար նյութեր են հրապարակվում ստուգումների արդյունքների ու ձեռնարկված միջոցառումների մասին։ Ցավոք, այդ բնագավառում դեռևս լուրջ թերություններ կան. պարտիական կազմակերպությունները քիչ ուշադրություն են հատկացնում վերահսկողության օրգանների աշխատանքի արդյունքների հրապարակայնությանը, մի բան, որ կօգնի մոբիլիզացնելու աշխատավորների ուժերը՝ ավելի վճռականորեն պայքարելու անտնտեսվարության, թափթփվածության, չարաշահումների, բյուրոկրատիզմի ու քաշքշուկի դեմ։

Անհրաժեշտ է, որ պարտիական-պետական վերահսկողության օրգանների, նրանց աջակցող խմբերի ու պոստերի շուրջը համախմբվի հասարակական վերահսկողության մեծաթիվ ակտիվ՝ արհմիութենական հասարակական վերահսկիչները, «կոմերիտական լուսարձակների» ջոկատները, բանթղթակցական պոստերը և այլն։

Քաղաքային կոմիտեն մեծ ուշադրություն է նվիրում պարտիական-պետական վերահսկողության օրգանների հասարակական ակտիվի ուսուցմանը։ Այդ նպատակով կազմակերպվել ու նախատեսվում է հետագայում ևս անցկացնել աջակցող խմբերի ղեկավարների, կոմիտեների արտահաստիքային տեսուչների սեմինար պարապմունքներ, հրահանգչական-մեթոդական խորհրդակցություններ, հավաքներ։ Այդ սեմինարներում, որպես կանոն, նրա մասնակիցները կատարում են դրական փորձի փոխանակում, պատմում իրենց նախնական քայլերի, իրենց մտահղացումների և առաջիկա պլանների մասին։

Պարտիական-պետական վերահսկողության օրգանների խնդիրն է՝ բազմակողմանի խրախուսել աջակցող խմբերի, հսկիչ պոստերի, արտահաստիքային բաժինների նախաձեռնությունը, ուժեղացնելով նրանց ցույց տրվող օգնությունը։ Պարտիական - պետական վերահսկողության օրգանների աշխատանքի հաջողության լավագույն գրավականը մասսաների ակտիվ մասնակցությունն է վերահսկողությանը, նրանց աջակցությամբ հիմնարկ - ձեռնարկություններում թերությունների ու խախտումների կանխումը։

Գ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ
Պարտիական-պետական վերահսկողության Երևանի քաղաքային կոմիտեի նախագահ



Վերահսկողության օրգանները կենտրոնում և տեղերում ՍՄԿԿ Կենտկոմի բաժինների և ՍՍՌՄ Մինիստրների սովետի ապարատի, տեղական պարտիական կոմիտեների, պարտիական ու սովետական կազմակերպությունների հետ մեկտեղ պետք է պարտիային ակտիվորեն օգնեն նրա Ծրագրի կենսագործման, կոմունիստական շինարարության ղեկավարության բարելավման, ՍՄԿԿ XXII համագումարի խնդիրների կատարման գործում։ Նրանց խնդիրն է անցկացնել պարտիայի ու կառավարության դիրեկտիվների փաստացի կատարման ստուգում։ Միանգամայն կարևոր է ամենօրյա վերահսկողություն սահմանել այն բանի նկատմամբ, թե ինչպես են հայտնաբերվում և օգտագործվում ներքին ռեզերվները արդյունաբերության, շինարարության ու գյուղատնտեսության բնագավառի արտադրության ընդլայնման համար, արտադրանքի որակի բարելավման, նրա ինքնարժեքի իջեցման և աշխատանքի արտադրողականության բարձրացման համար։

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ

դպրոցի ուսուցիչները, որոնց, սակայն, այդպիսի իրավունք չի տրված»: Այս միտքը պարզելու համար բերվում են մի քանի օրինակներ, կարծենք թե գրված է պարզ և որոշակի:

Իսկ ինչո՞ւ վերոհիշյալ ընկերները մեր ասածները ճիշտ հակառակ ձևով են ներկայացրել ընթերցողներին:

Տարօրինակն այն է, որ ընկ. Գասպարյանը մեր վերոհիշյալ տողերը երկու անգամ մեջբերել է իր հոդվածում՝ ամեն անգամ մեկը մյուսին հակասող ու ոչ ճիշտ եզրակացություններով: Մի դեպքում նա գրում է. «Սակայն ընկ. Խուդոյանը գտնում է, որ հնարավոր չէ ծրագրում արտացոլել ամեն մի դպրոցի, նրա գտնված վայրի կոնկրետ պայմաններն ու առանձնահատկությունները, յուրաքանչյուր ուսուցչի կարողություններն ու հնարավորությունները...» և այլն, իսկ մյուս դեպքում՝ «ընկ. Խուդոյանն այնքան հեռու է գնում, որ նույնիսկ պահանջում է ծրագիրը կազմելիս նկատի ունենալ «յուրաքանչյուր ուսուցչի կարողություններն ու հնարավորությունները...» և այլն:

Ա՛յ իսկական տրամաբանություն:

Երկու խոսք ծրագրային նյութերի անցման մասին: Այս հարցում ևս ընկ. ընկ. Գասպարյանը, Վարոսյանը և Մխիթարյանը սոսկալի մեղադրանքներ են բարդում մեզ վրա:

Ի՞նչ ենք ասել մենք և ինչի՞ դեմ են նրանք առարկում:

Մենք ասել ենք. «Վերադաս օրգանները ուսուցչից պահանջում են ինչ գնով էլ լինի կատարել ուսումնական ծրագիրը և թերակատարման դեպքում սկսում են «մշակել» նրան: Ծրագրի կատարման պահանջը ընդհանրապես, իհարկե, ճիշտ է, ուսուցիչը պետք է ձգտի ուսումնական տարվա հենց սկզբից այնպես կազմակերպել գործը, որ հնարավորություն ունենա նորմալ կերպով անցնել և աշակերտներին յուրացնել տալ ծրագրով նախատեսված բոլոր թեմաները: Բայց, եթե, այնուամենայնիվ, այնպիսի պայմաններ են ստեղծվել, որ ուսուցիչը չի կարողացել այդ պահանջը լիովին կատարել, ինչպե՞ս վարվել նման դեպքում, ստիպել ուսուցչին, որ նա անցնի բոլոր թեմաները, բայց ինչպե՞ս, ի հաշիվ որակի՞: Չէ՞ որ, առանց դրա էլ, ծրագրերի ծանրաբեռնվածության պատճառով հաճախ թեմաներն անցնում են մակերեսային ու հապճեպ: Ավելի ճիշտ չի՞ լինի, եթե հարգելի պատճառների առկայության դեպքում ուսուցչին խորհուրդ տրվի հիմնովին անցնել և յուրացնել տալ ծրագրային հիմնական նյութը, բաց թողնելով չանցած 1—2 թեման, այն հաշվով, որպեսզի հաջորդ ուսումնական տարում նա կամ նրան փոխարինող ուսուցիչը չմոռանա անհրաժեշտ ժամանակ հատկացնել նախորդ տարում չուսումնասիրված թեմաներին: Մի խոսքով, շեշտը ինչի՞ վրա պետք է դնել՝ ծրագրի որակակա՞ն, թե ձևական կատարման վրա: Ի՞նչ օգուտ ձևական կատարումից, եթե աշակերտներն անցած նյութը չյուրացրած կամ ցածր գիտելիքներով պետք է փոխադրվեն հաջորդ դասարան: Դա չէ՞ արդյոք ուսման մեջ ետ մնալու և երկտարեցիության գլխավոր պատճառներից մեկը:

Այս կապակցությամբ Գ. Վարոսյանը գրում է. «Չի կարելի համաձայնել ընկ. Խուդոյանի այն պնդման հետ, թե ուսումնական ծրագիրը կարելի է և չկատարել, պատճառաբանելով, որ այն կաշկանդում է ուսուցչին, թևաթափ անում, պասսիվացնում և զրկում նրան ինքնուրույնությունից»: Ընկ. Մխիթարյանն էլ ավելացնում է, որ դրանից կստացվի «քաոս և տարերայնություն, անպատասխանատվություն և աչքակապություն»:

Ընկեր Վարոսյան, մի՞թե այնտեղ ասված է, որ ծրագիրը «կաշկանդում է», «թևաթափ անում» և «պասսիվացնում է» ուսուցչին:

Իհարկե, ինչպես նշված է նաև մեր հոդվածում, լավագույնն այն է, որ ուսուցիչը ինչպես հարկն է անցնի ծրագրային բոլոր նյութերը, ապահովի աշակերտների խոր ու հաստատուն գիտելիքները ծրագրի ամբողջ ծավալով: Ուսուցման հիմնական նպատակն է այդ: Բայց եթե հանգամանքների բերումով առանձին ուսուցիչներ չեն կարողացել այդ անել, ինչպե՞ս վարվել:

Ծրագրի ձևական անցումը ոչ մի օգուտ տալ չի կարող. այն վնասաբեր է: Այդ դեպքում շատ ավելի մեծ չափերով են երևան գալիս անպատասխանատվությունն ու աչքակապությունը, քան այն ժամանակ, երբ մենք ուսուցչին իրավունք և հնարավորություն ենք տալիս հիմնավոր անցնելու հիմնական ուսումնական նյութը, թեկուզ և առանձին, ոչ այնքան էական հարցերը բաց թողնելու գնով:

Բոլորովին վերջերս ՌՍՖՍՌ մանկավարժական գիտությունների ակադեմիան մշակել և վերադաս օրգաններին է ներկայացրել մի նախագիծ՝ ընդհանուր պարտադիր միջնակարգ կրթության դպրոցների ուսումնական պլանների և ծրագրերի կառուցման սկզբունքների մասին: Այդ փաստաթղթում ասված է. «Միջնակարգ դպրոցի ծրագրերի և դասագրքերի ծանրաբեռնվածությունը միաժամանակ հանդիսանում է դպրոցում մի շարք առարկաների հապճեպ ու մակերեսային ուսումնասիրության պատճառներից մեկը, երբ ուսուցիչն անցնում է ծրագրի նոր բաժնին ոչ միայն համոզված չլինելով, որ անցածը յուրացված է հիմնովին, այլ նույնիսկ գիտենալով



աշակերտների գիտելիքներում եղած էական թերությունների մասին:

Գիտելիքներում եղած թերությունները իրենց հերթին դժվարացնում են ծրագրի հաջորդ թեմաների յուրացումը և դառնում են աշակերտների հետագա ծանրաբեռնման և նրանց գիտելիքների նոր, ավելի լուրջ թերությունների պատճառ»:

Եվ այնուհետև. «Ուսուցման այս աստիճանում ուսուցչի գործունեության գլխավոր կանոնն է հանդիսանում՝ չգնալ առաջ, քանի դեռ համոզված չես, որ անցածը յուրացված է հիմնովին»:

Այսպես է գրում մանկավարժական գիտությունների ակադեմիան: Այդ նույնն ենք ասել մեր հոդվածում: Ի՞նչն է այստեղ սխալ:

Ընկ. Գասպարյանը զարմանում է, որ Կիրովականի № 16 գիշերօթիկ դպրոցի ուսմասվարը «իր առարկայից ետ մնացող մի քանի աշակերտների գաղտնի փոխադրել է հաջորդ դասարան և որոշել է ինչ գնով էլ լինի նրանց հասցնել իրենց ընկերներին»:

Այստեղ զարմանալու ոչինչ չկա: Այդ ուսուցչուհին գտել է, որ նշված աշակերտներին մի քանի աննշան սխալների պատճառով նույն դասարանում թողնելը արդարացի չի լինի, թեև հրահանգը նրանից այդ է պահանջում: Այլ կերպ ասած, այստեղ մանկավարժի խիղճը գերազանցել է օրենքի ուժին: Եվ նա այդ բանն արել է ոչ թե աչքերը փակած կամ մեկ ուրիշին խաբելու նպատակով, այլ այդ աշակերտներին իրենց ընկերներին հասցնելու հաստատ մտադրությամբ: Ի դեպ, այսպես է վարվել ոչ միայն վերոհիշյալ ուսուցչուհին, այդպես են անում նաև այլ առաջավոր ուսուցիչներ: Այժմ արդեն ամբողջ ռեսպուբլիկային հայտնի է Երևանի Մայակովսկու անվան դպրոցի ուսուցչուհի, իր գործի իսկական վարպետ Ս. Բայաթյանի անունը: Հարցրեք նրան, և նա ձեզ կասի, որ ինքն էլ այդպիսի փորձեր կատարել է ու հաջողության հասել: Մեր խոսքը այսպիսի մանկավարժների մասին է, հարգելի ընկ. Գասպարյան և ոչ թե «ծույլերին» խրախուսող, առաջադիմության մերկ տոկոսներով հրապուրվող և, ըստ էության, աչքակապությամբ զբաղվող այն «մանկավարժների» մասին, որոնք, դժբախտաբար, առանձին դեպքերում նույնիսկ խրախուսանքի են արժանանում:

Իսկ թե ինչո՞ւ է մեր նշած ուսուցչուհին այդ քայլը «գաղտնի» կատարել, ինքնըստինքյան հասկանալի է: Չէ՞ որ հրահանգը նրան այդ բանը թույլ չի տալիս: Չէ՞ որ դեռ գոյություն ունեն հրահանգի տառին գերի դպրոցական ղեկավարներ, որոնք պատրաստ են օրենքի ամբողջ ուժով պատժել այդ օրենքից մազաչափ անգամ շեղվողներին: Վերջապես, ստեղծագործող ուսուցչուհին ցանկացել է մանկավարժական յուրատեսակ էքսպերիմենտ կատարել. հավանաբար, եթե նախօրոք իմանային, որ նա «2» գնահատականով աշակերտներ է փոխադրում հաջորդ դասարան, թույլ չէին տա: Իհարկե, նրա համար դժվար չէր լինի այդ աշակերտներին «2»-ի փոխարեն «3» նշանակել և այդպես փոխադրել՝ ամեն տեսակի գլխացավանքից ազատ լինելու համար: Բայց նրա խիղճը այդ բանը թույլ չի տվել: Դա կլիներ իսկական աչքակապություն, որին ընդունակ չեն բարեխիղճ մանկավարժները: Նախորդ տարում որոշակի հաջողության հասնելով ետ մնացող աշակերտների լեզվական հմտությունների զարգացման գործում, ուսուցչուհին չի ցանկացել իր գործը կիսատ թողնել՝ համոզված լինելով, որ հաջորդ դասարանում կկարողանա այդ աշակերտներին լիովին գրագետ դարձնել:

Բերելով վերոհիշյալ ուսուցիչների օրինակները՝ մենք բնավ էլ մտադիր չենք բոլոր ուսուցիչներին կոչ անելու նման ձևով վարվել: Դա, իրոք, թյուրիմացությունների տեղիք կտար, գուցե և կչարաշահվեր շատերի կողմից: Բայց չի կարելի նաև մերժել այն ուսուցիչներին, ովքեր ոչ միայն վստահ են իրենց ուժերի վրա, այլև լի են ետ մնացող աշակերտների գիտելիքների թերին վերացնելու և նրանց ծրագրային պահանջներին հասցնելու վճռականությամբ: Այստեղ արդեն իր վճռական խոսքը պետք է ասի ներդպրոցական վերահսկողությունը:

Գ. Վարոսյանը գրել է. «Օրինակ, վերջերս մեր դպրոցում կատարված ուսումնասիրություններից պարզվեց, որ VII դասարանի հայոց լեզվի դասատուն, որն, ի դեպ, շնորհալի ուսուցչուհի է, խախտելով պետական ծրագիրը, ինքնագլուխ կերպով «մակբայ» թեմային հատկացրել է 8 ժամ, ծրագրով նախատեսված 14 ժամի փոխարեն, «կապ»-ին՝ 6 ժամ 9-ի փոխարեն, «շաղկապ»-ին 4 ժամ՝ 7-ի փոխարեն, և այլն: Երկու ամիս առաջ սկսել էր անցնել այն թեմաները, որոնք նա պարտավոր էր անցնել երկրորդ կիսամյակին: Եվ, եթե այդ ձևով նա շարունակի անցնել, ապա 3—4 ամիս շուտ տվյալ դասարանում կսպառի ծրագիրը»:

Եթե ընկ. Վարոսյանը նշեր, որ այդ, ինչպես ինքն է ասում, «շնորհալի ուսուցչուհին» թույլ տված խախտումների հետևանքով չի ապահովել աշակերտների կողմից ծրագրային նյութերի խոր ու հաստատուն յուրացումը, ապա ամեն ինչ հասկանալի կլիներ: Իրոք, նման ուսուցչուհու «ստեղծագործական քայլը» չպետք է խրախուսվի: Բայց ընկ. Վարոսյանն այդ մասին ոչինչ չի ասում: Նրան միայն անհանգստացնում է, որ ուսուցչուհին խախտել է պետական ծրագիրը և սահմանված ժամկետից ավելի շուտ է ան-

ռազլու, Նոր կյանք, Փոքր Վեդի, Այգևան և այլն) կառուցվել կամ կառուցվում են շքեղ տիպային կուլտուրայի տներ և այդ այն ժամանակ, երբ դրանք չունեն մսուր-մանկապարտեզ, բաղնիք, կաթնախոհանոց, սպանդանոց, բուժհիմնարկների համար հարմարավետ շենքեր։

Ակումբների, կուլտուրայի տների կառուցումը շատ կարևոր է։ Բայց այնտեղ, ուր մանկամսուր չլինելու պատճառով երեխաները մնում են անխնամ կամ նախադպրոցական հիմնարկները տեղավորված են ոչ տիպային, խղճուկ շենքերում, և, այդ իսկ պատճառով կոլտնտեսուհիները զրկվում են հանրօգուտ աշխատանքին մասնակցելուց, այնտեղ, ուր չկան բաղնիք, ծննդատուն, կաթնախոհանոց կամ վարսավիրանոց, մի՞թե հարկ կա կառուցելու շատ մեծ միջոցներ ման, կանաչապատման և ծաղկազարդման գոր- ղական վայրերում կենցաղային օբյեկտների շինարարության մասին լրջորեն մտածելու և այդ գործը վերևից պլանավորելու։

Մեր օրերի յուրաքանչյուր գյուղական բժշկի ո՛չ միայն պատվի գործը, այլև ուղղակի պարտականությունն է սիստեմատիկաբար և համառորեն զբաղվել իր տեղամասի բնակավայրերի սանիտարական բարեկարգման, վերակառուցման, կանաչապատման և ծաղկազարդման գործով։ Բժիշկը գյուղում իր աշխատանքով պետք է կապված լինի ո՛չ միայն հիվանդների և հիվանդությունների հետ, այլև ակտիվ մասնակցի բնակավայրերի կառուցմանն ու վերակառուցմանը, կանաչապատմանն ու բարեկարգմանը։ Մեր օրերի գյուղական բժշկին մենք պատկերացնում ենք ո՛չ միայն սպիտակ խալաթով հիվանդի մահճակալի մոտ, այլև հիվանդանոցի շենքից շատ հեռու, շինարարական հրապարակներում, այնտեղ, ուր լայնացվում և ասֆալտապատվում են փողոցները, տնկվում ծառեր ու ծաղիկներ։

Որպես բժիշկ ինձ խորապես անհանգստացնում է նաև մեր ռեսպուբլիկայում և, մասնավորապես, գյուղական վայրերում մանկական մահացության դեռևս մեծ տոկոսը, որը բարձր է միջին միութենականից։

Ինչ խոսք, որ այդ գործում մեղք ունեն առողջապահության օրգանները, բուժաշխատողները. դեռևս պատահում է, որ նորածինն ու նրա մայրը դուրս են մնում բժշկական հսկողությունից կամ առանձին դեպքերում նրանք ժամանակին և որակյալ բուժօգնություն չեն ստանում։

Բայց կան նաև այլ, իմ կարծիքով, ավելի լուրջ պատճառներ։

Խոսքն, առաջին հերթին, վերաբերում է մորը։ Կարելի է նշել բազմաթիվ դեպքեր, երբ երեխայի մայրը քիչ է օգտվում մասնագիտացված մանկական կոնսուլտացիայի սպասարկումից, ճիշտ ու ժամանակին չի կատարում մանկաբույժների խորհուրդները, միշտ չէ, որ կատարում է նրանց նշանակումները. հաճախ մայրերի մեղքով չի հաջողվում ժամանակին հիվանդ երեխաներին հոսպիտալիզացիայի ենթարկել և ցույց տալ համապատասխան բուժօգնություն։ Եվ արդյունքը երբեմն լինում է ցավալի։

Այստեղից հետևում է, որ հարկավոր է տևական մեծ աշխատանք կատարել մայրերի հետ, նրանց շրջանում լայնորեն ծավալել սանիտարական պրոպագանդա, անդադրում պարզաբանել մոր ու մանկան առողջության պահպանման հարցերը։ Այդ գործում մեզ լուրջ օգնություն պետք է ցույց տան տեղական պարտիական և սովետական կազմակերպությունները, տնտեսությունների ղեկավարները, ամբողջ հասարակայնությունը։ Պետք է ստեղծել հասարակական լայն կարծիք և անհանդուրժողական մթնոլորտ այն մայրերի նկատմամբ, ովքեր լավ չեն կատարում իրենց պարտականությունները։

Երկրորդ։ Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ մանկական մահացությունը մեծ է հատկապես բազմազավակ ընտանիքներում։ Այդ գործում դրությունը շտկելու համար, իմ կարծիքով, անհրաժեշտ է օրենսդրական որոշ փոփոխություններ կատարել։

Համաձայն գոյություն ունեցող օրենքների, բազմազավակ մայրերը չորրորդ երեխայից սկսած ստանում են ինչպես միանվագ օգնություն, այնպես էլ ամենամսյա որոշակի գումար։ Միանվագ օգնությունը մայրերին տրվում է երեխայի ծնվելուց մի քանի օր կամ շաբաթ հետո։ Ընդհանուր շահերից ելնելով, կարծում եմ, որ միանվագ գումարը մայրերը պետք է ստանան միայն այն բանից հետո, երբ նորածնին լավ խնամելով, հասցնում են մեկ տարեկան հասակի կամ այդ գումարը վճարել երկու նվագով՝ կեսը երեխայի վեց ամիսը և մյուս կեսը՝ մեկ տարին լրանալուց հետո։

Երրորդ. ավելի ու ավելի ընդլայնել նախադպրոցական հիմնարկների ցանցը, ավելացնել մանկաբույժների թիվը գյուղական վայրերում։

Մի հարց ևս։ Վերջին ժամանակներս հաճախ են խոսում այն մասին, որ գյուղական փոքր-գաճաճ հիվանդանոցները մեծ օգուտ չեն տալիս և նկատվում է գյուղական բժշկական տեղամասերը լիկվիդացնելու տենդենց. այդ գործի նախաձեռնողների կարծիքով դրանք պետք է փոխարինվեն շրջկենտրոններում ավելի խոշոր հիվանդանոցների կազմակերպմամբ։

Մեր երկրի զարգացման արդի պայմաններում պետք է ամեն կերպ ամրապնդվի ու կատարելագործվի գյուղական առողջապահության ցանցը։ Բայց ի՞նչ ճանապարհով պետք է ընթանա այդ գործը, ինչպե՞ս բարելավել բուժպրոֆիլակտիկ աշխատանքները գյուղում, ինչպե՞ս մոտեցնել մասնագիտացված բուժօգնությունը գյուղական վայրերի բնակչությանը։

Այդ կապակցությամբ երկու կարծիք լինել չի կարող, տվյալ հարցում վճռական դերը պատկանում է շրջանային հիվանդանոցներին, որոնք պետք է խոշորացնել ու մասնագիտացնել, հագեցնել ժամանակակից բժշկական սարքավորումներով։ Այդպիսի հիվանդանոցները՝ մասնագիտացված բաժանմունքներով ու կադրերով, կարող են իրականում դառնալ բուժական կենտրոն և լավ բազա՝ ծայրամասերում աշխատող բժիշկների վերապատրաստման համար։ Սակայն լուծելով այդ հարցը՝ չի կարելի թուլացնել կամ մերկացնել թիկունքը։ Անվիճելի է, որ լավ ցուցանիշների կարող է հասնել յուրաքանչյուր բուժմիավորում միայն այն դեպքում, երբ լավ են գործերն առանձին տեղամասերում, երբ բուժմիավորման ղեկավարությունը, հենվելով իր տեղամասերի վրա, օգնելով նրանց, հասնում է ընդհանուր վերելքի։

Ինչ խոսք, փոքրիկ, 5—15 մահճակալանոց հիվանդանոցները չեն արդարացնում իրենց, քանի որ նրանց բազայի վրա հնարավոր չէ կազմակերպել որակյալ, ժամանակակից պահանջներին համապատասխան մասնագիտական բուժօգնություն։ Անհրաժեշտ է շրջանային հիվանդանոցներին զուգահեռ լուծել նաև տեղամասային հիվանդանոցների հարցը, որոշել նրանց ապագան։ Այստեղ պետք է մտցնել փոփոխություններ, բայց ոչ թե լիկվիդացնել։

Հաշվի առնելով տեղական կոնկրետ պայմանները, հարկավոր է ներկայումս գործող տեղամասային շատ հիվանդանոցներում մահճակալների թիվը հասցնել 25—35-ի։ Այդպիսի հիվանդանոցներ նպատակահարմար է կազմակերպել հատկապես այն տեղամասերում, որոնք գտնվում են կենտրոններից մի քանի տասնյակ կիլոմետր հեռու։ Իսկ այն բնակավայրերը, որոնք մոտ են շրջկենտրոնին (10—15 կմ), նպատակահարմար և ձեռնտու է այդ հիվանդանոցները դարձնել մասնագիտացված բուժհիմնարկներ (տուբդիսպանսեր, տրախոմատոզ հիվանդանոց, գինեկոլոգիայի կամ քիթ-կոկորդի բաժանմունքներ և այլն)։

Ինչո՞ւ այսպես վարվել։ Գյուղական բժիշկներին լավ հայտնի է, որ մեր հիվանդներն ամբուլատոր բուժումը գերադասում են հիվանդանոցայինից. այդ բացատրվում է գյուղական բնակչի կենցաղի և աշխատանքի բնույթով։ Ավելին, նրանք հաճախ հրաժարվում են շրջանային հիվանդանոց գնալուց, որտեղ նրանց սպասում է ավելի մասնագիտացված ու որակյալ բուժօգնություն, գերադասելով իրենց գյուղի հիվանդանոցը։ Նախանձելի չի կարող լինել այն հիվանդի վիճակը, երբ հեռու շրջկենտրոնում գոյություն ունենա մեծ, հարմար հիվանդանոց, իսկ գյուղինը՝ փակվի։

Լավ կլինի, եթե կառուցվեն միջկոլտնտեսային խոշոր հիվանդանոցներ, որոնք պետք է սպասարկեն իրար մոտ գտնվող մի քանի բնակավայրերի բնակչությանը։

Առողջապահության գործը, նրա նպատակները և աշխատանքի անմիջական օբյեկտը մարդն է՝ իր ամբողջ էությամբ, պահանջներով։ Այդ բարդ ու դժվարին գործը լուծելու համար անհրաժեշտ է գործը կազմակերպել խելացի, շերտավորված, հաշվի առնելով յուրաքանչյուր դեպքում կոնկրետ պայմանները, առանձին բնակավայրերի յուրահատկությունը, առաջադրված խնդիրները։

Առողջապահության մինիստրությունը կարող է տալ միայն ընդհանուր ուղղություն և առաջադրանքներ։ Օրինակ, նա կարող է պահանջել բարեկարգել արտաքին միջավայրը, ստեղծել պատշաճ սանիտարական վիճակ տեղամասերում, բայց ինչպե՞ս և ինչի՞ց սկսել, այդ պետք է թողնել յուրաքանչյուր շրջբուժմիավորման, գյուղական տեղամասի բժիշկների հայեցողությանը։ Կամ՝ մանուկների մահացության դեմ պայքարելու նպատակով մի տեղ պետք է կազմակերպել մանկական կոնսուլտացիա, մի այլ տեղում՝ մսուր, երրորդում՝ կաթնախոհանոց և այլն։

Պարտիան ու կառավարությունը մեծ խնդիրներ են դրել առողջապահության բնագավառի աշխատողների առջև, այն է՝ լիովին բավարարել բնակչության պահանջը ամեն տեսակի բարձրորակ բուժսպասարկման ասպարեզում, կանխել ու վճռականորեն կրճատել հիվանդությունները, վերացնել մասսայական վարակիչ հիվանդությունները, էլ ավելի երկարացնել կյանքի տևողությունը։ Այդ նպատակով անհրաժեշտ է հոգատարությամբ շրջապատել ժողովրդական բժշկին, օգնել նրան՝ կատարելու իր ազնիվ պարտականությունը, ամեն կերպ զարգացնել նրա ստեղծագործական նախաձեռնությունը և ձեռներեցությունը։

Ս. ՀԱՅՐՅԱՆ

Արտաշատի բուժմիավորման Արմաշի գյուղական բժշկական տեղամասի վարիչ, բժշկական գիտությունների թեկնածու

ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ ԿՈՂՄԻՑ — Հրապարակելով առողջապահության գործի կազմակերպման մի քանի հարցերի վերաբերյալ բժիշկ Ս. Հայրյանի հոդվածը, հրավիրում ենք առողջապահության մինիստր ընկ. Զ. Նարիմանովի ուշադրությունը: Միաժամանակ հիշեցնում ենք, որ մեր ամսագրի 1962 թ. № 10-ում զետեղված բժիշկների նամակների առթիվ ընկ. Նարիմանովը մինչև օրս պատասխան չի ուղարկել խմբագրությանը:

ների նկատմամբ և թե ինչպես էր նա պայքարում դրանց դեմ։

Վ. Ի. Լենինը, չնայած խիստ ծանրաբեռնված էր պետական ու պարտիական կարևորագույն հարցերով, նաև ժամանակ էր գտնում անձամբ մասնակցելու նոր միայն ծնվող կոմունիստական աշխատանքին։ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի ակտիվ մասնակից Ֆ. Սոլոդովը հիշում է այսպիսի մի դեպք, որ պատահել է Մոսկվայում կազմակերպված կոմունիստական շաբաթօրյակներից մեկի ժամանակ, որին մասնակցել է Վ. Ի. Լենինը։

«...Երբ մենք կաղնու կոճղեր էինք տեղափոխում, բոլորի վրայից քրտինք էր թափվում։ Կոճղերը շատ ծանր էին, իսկ օրը՝ շոգ։ Սակայն Վլադիմիր Իլյիչը ձգտում էր միշտ առջևում լինել և վերցնել ավելի ծանր կողմը։ Մենք չէինք կարող անտարբեր նայել դրան, բայց նա լսել անգամ չէր ուզում մեր հորդորները։ Այդ ժամանակ մեր խմբից մեկը մոտեցավ Լենինին և ասաց.

— Վլադիմիր Իլյիչ, ավելի լավ է գնանք Ժողկոմսովետ։ Ձեզ այնտեղ, հավանաբար, սպասում են, իսկ այստեղ մենք առանց Ձեզ էլ գլուխ կհանենք։

Վլադիմիր Իլյիչը խիստ վիրավորվեց։ Նա մի քանի անգամ ետ ու առաջ քայլեց, հետո մոտեցավ այդ ընկերոջը, ձեռքերը դրեց նրա ուսերին, բարձրաձայն ծիծաղեց և ասաց.

— Զուր եք դուք, պատվելիս, ինձ ճամփա ցույց տալիս։ Միևնույն է. դրանից բան դուրս չի գա. ես չեմ հեռանա։ Այժմ այս աշխատանքը ամենակարևորն է» (էջ 247—248)։

Հարազատ առաջնորդի և ուսուցչի նկատմամբ աշխատավորները տոգորված էին անսահման սիրով ու հարգանքով, բանվորների ու գյուղացիների լայն մասսաների հետ Վ. Ի. Լենինը անբաժան կապերի մեջ էր։ Նա հաճախ էր հանդես գալիս բանվորների միտինգներում ու ժողովներում, գյուղացիների, կարմիրբանակայինների, երիտասարդության առջև, հանդիպում ու զրուցում էր երկրի տարբեր շրջաններից իր մոտ եկած բանվորների ու գյուղացիների հետ, ուշադիր լսում նրանց, հաշվի առնում նրանց կարծիքը։

Ահա թե ինչ է գրում այդ մասին Ա. Ռ. Վիլյամսը, որ այդպիսի ընդունելության ականատես է եղել Կրեմլում, 1918 թվականին։

«...Ընդունարանում շատ մարդ կար,— հիշում է նա։— Ստիպված էի երկար սպասել։ Դա անսովոր երևույթ էր։ Լենինը մեծ ճշտությամբ էր ընդունում, միշտ նշանակված ժամին։ Մնում էր ենթադրել, թե որևէ պետական կարևոր գործ ամբողջությամբ գրավել է նրա ուշադրությունը։

Կես ժամ, մի ժամ, մեկուկես ժամ...

Վերջապես դուռը բացվեց, և, ի զարմանս բոլորի ու հակառակ բոլոր ենթադրությունների, ընդունարանում հայտնվեց ոչ թե դիվանագետ, ոչ թե բարձրաստիճան որևէ անձնավորություն, այլ կիսամուշտակով և տրեխներով թավամազ մի գյուղացի՝ տիպիկ չքավոր գյուղացի, որպիսիք միլիոններով կարելի էր հանդիպել սովետական երկրում։

— Ներեցեք,— ասաց Լենինը, երբ մտա նրա աշխատասենյակը,— տամբովցի գյուղացի էր, և մենք նրա հետ քննարկում էինք էլեկտրիֆիկացիայի, կոոպերացիայի և նոր տնտեսական քաղաքականության հետ կապված հարցեր։ Ինձ այնքան հետաքրքիր էր իմանալ նրա կարծիքը, որ ես բոլորովին մոռացա ժամանակի մասին» (էջ 183)։

Վ. Ի. Լենինը պարտիային սովորեցնում էր, որ նոր հասարակարգի կառուցման խնդիրները հաջողությամբ կենսագործելու համար պնհրաժեշտ է ամուր հենվել աշխատավորական լայն մասսաների վրա, բարձրացնել նրանց գիտակցականությունը, ակտիվությունն ու խանդավառությունը։ Վ. Ի. Լենինը անհունորեն հավատում էր աշխատավորների ստեղծագործական անսպառ հնարավորություններին ու իմաստությանը։ Այդ մասին են պատմում իրենց հիշողություններում Գ. Կորոլյովը, Շ. Իբրահիմովը, Ա. Շոտմանը, Պ. Մեշկովը, Ս. Գուսևը և ուրիշներ։

Հուշերի հեղինակների մի այլ խումբ նկարագրում է Վ. Ի. Լենինի անդուլ հոգատարությունը կուլտուրական շինարարության, երիտասարդության կոմունիստական դաստիարակության մասին, նրա սերը երեխաների նկատմամբ։

Հետաքրքրական են ՍՄԿՊ հին անդամ Ի. Արմանդի հիշողությունները Վ. Ի. Լենինի և Ն. Կրուպսկայայի՝ բարձրագույն գեղարվեստատեխնիկական արվեստանոցները կատարած այցելության մասին։

Ուսանողական հանրակացարանում Վ. Ի. Լենինն ուշադրություն է դարձնում ինչ-որ հատուկ «դինամիկ» գծերով շոգեքարշի նկարի վրա, որի հեղինակը պնդում էր, թե իսկական շոգեքարշը այդպես պետք է նախշել, և որ այդպիսի գունազարդումը կանդրադառնա շարժման արագության վրա։

«Այդ հայտարարությունը,— հիշում է Արմանդը,— շատ զվարճացրեց Լենինին»։ Այնուհետև սկսվում է անկաշկանդ զրույց՝ Վ. Ի. Լենինի և երիտասարդ նկարիչների միջև, որոնց հուզում էին կերպարվեստի և, ամենից առաջ, գեղանկարչության հարցերը։ Նրանք բոլորը հանգում էին մի եզրակացության և միահամուռ ընդգծում, որ գեղանկարչությունը պետք է ռևոլյուցիայի հետ համաքայլ ընթանա, լինի քաղաքականապես սուր, «թանգարաններից դուրս գա փողոց»,



մոբիլիզացնի մասսաներին։ Բայց ինչպե՞ս միջոցներով հասնել այդ նպատակին... Ահա այս հարցերն էր, որ ամեն մեկը լուծում էր յուրովի, շատերը պաշտպանում էին ֆուտուրիստներին, ոմանք մերժում էին հաստոցային գեղանկարչությունը։

«...Լենինին շատ դուր եկավ նրանց երիտասարդական եռանդը, անմիջականությունը, հնամոլությունն անպայման արհամարհելը և ռևոլյուցիային ծառայելու կրքոտ ձգտումը։ Բայց այն բոլորից, ինչ ասվեց Լենինին այնքան ջերմությամբ շրջապատված երիտասարդ նկարիչների կողմից, պարզ էր, որ արվեստի հետագա զարգացման ուղիների մասին նրանք ճիշտ հասկացողություն չունեն։ Լենինը վիճում էր, պաշտպանում ռեալիստական նկարչությունը, թեև երկու տասնյակ մարդկանց հետ վիճաբանելը, որոնք խոսում էին հուզվելով, բոլորը միասին և միմյանց ընդհատելով, հեշտ չէր» (էջ 402)։

* * *

Պրոլետարական ինտերնացիոնալիզմի և տարբեր երկրների կոմունիստական ու բանվորական պարտիաների կապերի ամրապնդման ուղղությամբ Վ. Ի. Լենինի կատարած աշխատանքի, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների, Սովետական ռեսպուբլիկա եկող օտարերկրյա բանվորների ու ժուռնալիստների հետ ունեցած հանդիպումների մասին են պատմում իրենց հիշողություններում Դ. Ցայներգը, Ա. Կուրելլան, Վ. Կոլարովը, Հ. Գրեֆը, Վ. Պիկը և ուրիշներ։

«...Կասկածի ենթակա չէ,— գրում է Վ. Կոլարովը,— որ Լենինն այն ժամանակ ամբողջովին կլանված էր նոր տնտեսական քաղաքականության իրականացմամբ։ Բայց դա չէր խանգարում նրան իր ամուր ձեռքերում պահելու Կոմինտերնի ղեկը և համաշխարհային ռևոլյուցիայի ամենապատասխանատու մոմենտներից մեկում նրան տանելու ճիշտ ուղիով» (էջ 396)։

Ժողովածուի երրորդ մասի բոլոր հիշողություններում խոսվում է Վ. Ի. Լենինի՝ մեծ մտքի ու սրտի, հզոր հոգու և բյուրեղյա մաքրության մասին. այստեղ հառնում է Լենին-մարդը՝ իր բացառիկ համեստությամբ, հարազատների, բարեկամների ու ընկերների նկատմամբ տածած ջերմ հոգատարությամբ, քնքշանքով ու ուշադրությամբ, միշտ լավատես ու կենսախինդ, պարզ ու հմայիչ։ «Հիշողությունների» հեղինակները բերում են բազմաթիվ փաստեր, Վ. Ի. Լենինի գրած շատ երկտողեր ու գրություններ՝ ուղղված պետական օրգանների ու կազմակերպությունների ղեկավարներին, որոնցում առավել ցայտուն է դրսևորված նրա անսահման հոգատարությունը աշխատավոր մարդկանց, ժողովրդին ծառայող մասնագետների, կուլտուրայի գործիչների կյանքի ու աշխատանքի պայմանների, նրանց կարիքների բավարարման նկատմամբ։

Անհունորեն հուզում, սիրո, հարգանքի ու երախտագիտության աննկարագրելի զգացմունքներով են համակում յուրաքանչյուրին Լ. Ա. Ֆոտիևայի գրառումները Վ. Ի. Լենինի կյանքի վերջին շրջանի մասին։ Ծանր, անբուժելի հիվանդությունը ջլատել էր Վլադիմիր Իլյիչի ուժերը՝ բայց ոչ բոլորովին նրա անխորտակելի կամքը։ Աջ ձեռքի կաթվածի պատճառով հնարավորություն չունենալով գրել, նա սկսում է թելադրել։ Այդ ժամանակաշրջանում Վլադիմիր Իլյիչը ստեղծում է մի շարք երկեր, տալիս բազմաթիվ խորհուրդներ, որոնք վերաբերում են սովետական հասարակության զարգացման զանազան կարևոր կողմերին և այժմ էլ կոմունիստական պարտիայի և սովետական ժողովրդի համար ծառայում են որպես գործողության ծրագիր։

Վ. Ի. Լենիը դիմում էր բացահայտ անձնազոհության՝ բժիշկների առջև կատեգորիկ հարց դնելով, որ կամ պետք է իրեն թույլատրեն ամեն օր, թեկուզ կարճ, թելադրել, կամ ինքը բոլորովին կհրաժարվի բուժվելուց։ Դրանում դրսևորվում էր Վ. Ի. Լենինի ամենաբնորոշ գիծը՝ նպատակասլացությունը, որն այնքան հատուկ էր, նրան իր կյանքի բոլոր ժամանակներում։ Ռևոլյուցիոն աշխատանքից դուրս նա կյանքի իմաստ չէր տեսնում և անկողնում գամված, գերմարդկային համառությամբ ջանում էր օգտագործել ամեն մի հնարավորություն՝ աշխատելու պարտիայի համար, բանվոր դասակարգի գործի համար։

Այսպես ստեղծվեցին Նամակ համագումարին, Էջեր օրագրից, Ինչպես վերակազմենք բանգյուղտեսչությունը, Ազգությունների կամ «ավտոնոմիզացիայի» հարցի շուրջը, Մեր ռևոլյուցիայի մասին, Լավ է քիչ, բայց լավ, Կոոպերացիայի մասին նամակներն ու հոդվածները։

Լ. Ա. Ֆոտիևան իր հիշողություններում պատմում է, թե ինչպես հիվանդ Լենինը հետևում էր ՍՍՌՄ-ի ստեղծման հարցի լուծմանը, ինչպիսի վճռականությամբ ու սկզբունքայնությամբ նա դեմ դուրս եկավ Ստալինի առաջ քաշած «ավտոնոմիզացիայի» սկզբունքին և թե ինչպես նրա պնդմամբ ընդունվեց ժողովուրդների կամավորության և հավասարության սկզբունքով ՍՍՌՄ ստեղծելու որոշումը։

Սիմվոլիկ է Հիշողություններ Վ. Ի. Լենինի մասին գրքի վերջին նյութը։ Դրա հեղինակն է 1917 թվականից ՍՄԿՊ անդամ, բանվորուհի Պ. Ա. Խոլոդովան։ Նա պատմում է բանվորների հետ Վ. Ի. Լենինի վերջին հանդիպման մասին,

որը տեղի ունեցավ մեծ առաջնորդի մահվանից երկուս ու կես ամիս առաջ, 1923 թվականի նոյեմբերի 2-ին, Գորկայում։ Այդ օրը Վլադիմիր Իլյիչին այցելեցին Գլուխովսկի մանուֆակտուրայի մի խումբ բանվորներ, որոնք բերել էին բալենու 18 տնկի՝ Գորկայի ջերմոցում տնկելու համար։

«...Մեզ տարան ընդունարան։ Երկու րոպե անց դռան ետևից լսեցինք Մարիա Իլյինիչնայի ձայնը։ «Վոլոդյա, քեզ մոտ հյուրեր են եկել»։ Դուռը բացվեց և մեզ ընդառաջ եկավ ժպտացող Իլյիչը... Մոտենալով մեզ, Իլյիչը ձախ ձեռքով հանեց իր կեպին, դրեց աջ ձեռքի մեջ և մեզ բարևեց ձախ ձեռքով։ «Որքա՜ն երջանիկ եմ, որ եկել եք»,— պարզորոշ ասաց նա մեզ։ Մենք ուրախությունից շփոթվեցինք և հեկեկացինք ինչպես երեխաներ... Իլյիչի հետ հինգ րոպե անցկացնելուց հետո, հրաժեշտ տալով, բոլորս համբուրվեցինք նրա հետ։ Վերջինը հրաժեշտ տվեց վաթսունամյա բանվոր ընկ. Կուզնեցովը։ Երկու րոպե նրանք կանգնած էին միմյանց գրկած։ Իսկ ծերունի Կուզնեցովն արցունքն աչքերին կրկնում էր. «Ես բանվոր եմ, դարբին եմ, Վլադիմիր Իլյիչ։ Ես դարբին եմ։ Մենք կկռենք քո բոլոր նախագծումները»։ Մենք համարյա ուժով նրան անջատեցինք Իլյիչից...» (էջ 450—451)։

Սրտառուչ ու անմոռանալի հանդիպում։ Աշխատավոր մարդկանց մեծ առաջնորդն ու հանճարեղ ուսուցիչն այդ օրն, ասես, հրաժեշտ էր տալիս այն դասակարգի ներկայացուցիչներին, որի գործին նվիրեց իր ամբողջ կյանքը։ Իսկ ծեր դարբին Կուզնեցովի հուզված խոսքերն, ասես, բանվոր դասակարգի սրբազան երդումն էին Վ. Ի. Լենինին՝ կատարել պարտիային ու ժողովրդին տված նրա պատգամները։

* * *

Այժմ մի քանի խոսք ժողովածուի հայերեն թարգմանության մասին։ Ընդհանուր առմամբ հաջող թարգմանված նյութերի կողքին կան նաև այնպիսիք, որոնց լեզուն փայտացած է, աղքատիկ։ Պատճառը բառացի թարգմանությունն է, որի հետևանքով խամրել է հուշերի հեղինակների լեզվի գունեղությունը, կորել դրա համն ու հոտը։ Թարգմանական որոշ հատվածներում կան քերականական սխալներ և նախադասությունների ու բառերի անհաջող ու սխալ թարգմանություններ, բացթողումներ։

Այսպես, օրինակ, идейная беспринципность թարգմանված է՝ իդեալական անսկզբունքայնություն (էջ 43), на одной великой задаче նախադասությունը թարգմանվել է մեկ (?) խնդրի վրա (էջ 10), избежав провала — խուսափելով կործանվելուց (էջ 47), պետք է լինի՝ ձախողումից, я аккомпанировала им обоим — ես երկուսին էլ ձայնակցում էի (էջ 46), պետք է լինի նվագակցում էի, перлюстрировать (գաղտընթերցել) բառը դարձել է նկարահանված, լուսանկարահանված, фисгармония (ֆիսհարմոնիա)՝ ֆիլհարմոնիա և այլն։

Հիշողությունների մի շարք հեղինակների անուն-ազգանունները տրված են տարբեր ձևերով։ Այսպես. Կուրտ Ռյումերինը՝ Ռյումեր (էջ 153), Ռեմեր (էջ 466) և Ռոյմեր (էջ 473), Վ. Հուդինը՝ Գուդ (էջ 7, 457) և Հուդ (էջ 276, 474), Ալֆրեդ Կուրելլային՝ Կուրել (էջ 7) և Կուրելլա (էջ 258, 463, 474), Հուգո Գրեֆին՝ Խ. Գրեֆ (էջ 7), Հ. Գրեֆ (էջ 397, 457) և այլն։

Անփութության արդյունք է և այն, որ Պ. Ա. Խոլոդովայի՝ Վ. Ի. Լենինի հետ գլուխովցիների հանդիպման մասին հիշողության (էջ 449) մի մեծ հատված 448 և 450 էջերում բերված է երկու տարբեր թարգմանությամբ։

Հասկանալի չէ թե ինչու հայերեն չեն թարգմանվել сфера, интимный, периферия, актуальный, прогноз, претензия և մի շարք այլ բառեր։

Հուշերի թարգմանությունը կարևոր և դժվարին գործ է։ Հայպետհրատի ընկերները պետք է հաշվի առնեն այդ հանգամանքը, որպեսզի ընթերցողներին հանձնեն ավելի կատարյալ, անթերի գործեր։

Մ. ԹՈՒԹԽԱԼՅԱՆ

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԿԻՐԱԿՈՍՅԱՆ Ա. Մ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍԱՐԳՍՅԱՆ Վ. Հ.

Թողարկիչ՝ Ա. ՅԱՎՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Զ. ԱՎԱԳՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք, հեռ. 2-02-24
Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении тел. 2-02-24

ՎՖ 05237 Պատվեր 1919 Տիրաժ 9150 Գինը 25 կոպ.

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության 27/VI 1963 թ.

Հայկական ՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Հրատարակչությունների և պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր [illegible] տպարան, Երևան։